ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ . 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

# Содержание



# ՀԱՆՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ առաջացած համաշխարհային սոցիալիստական սիստեմն իր կազմավորման առաջին օրից սկսած աճել, հզորացել ու դարձել է խաղաղության, սոցիալիզմի, ժողովուրդների սոցիալական առաջադիմության, ազատության ու անկախության անխորտակելի պատվարը: Հանդես գալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո, սոցիալիստական համագործակցության երկրները ընթանում են հեղափոխական, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի ավանգարդում: Նրանք անում են ամեն ինչ, որպեսզի հողագնդի ողջ աշխատավոր ժողովուրդն իր բախտը կռի, ընդմիշտ ու ամենուրեք վերջ տա անարդարությանն ու կեղեքմանը և սոցիալիստական երկրների օրինակով ձեռնամուխ լինի նոր հասարակարգի՝ կոմունիզմի կառուցմանը:

Դա, բնականաբար, դուր չի գալիս իմպերիալիստական տերություններին ու նրանց վարձկաններին, որոնք առիթ բաց չեն թողնում համաշխարհային սոցիալիստական սիստեմը վարկաբեկելու և քայքայելու համար: Հակակոմունիզմը համարելով իրենց գլխավոր նպատակը, նրանք դիմում են ամենաստոր միջոցների՝ բացարձակ ագրեսիայի, դիվերսիաների, քայքայիչ գործողությունների, կրպարտանքի, ահաբեկման ու հակասոցիալիստական այլ գործողությունների: Այդ բանում նրանց օգնում են ռևիզիոնիստական աջ տարրերը, բուրժուական գաղափարախոսները, հակամարքսիստական կուսակցությունների ու կազմակերպությունների այն բոլոր անդամները, որոնք կույր ատելությամբ լի կատաղի պայքար են մղում սոցիալիստական կարգերի, բանվորների, գյուղացիների ու ինտելիգենցիայի ձեռք բերած նվաճումների դեմ: Չեխոսլովակիայում տեղի ունեցող իրադարձությունները դրանց վառ վկայությունն են:

Իմպերիալիստական օտարերկրյա տերերի թելադրանքով ու աջակցությամբ, Չեխոսլովակիայի աջ, հակասոցիալիստական ու հակահեղափոխական ուժերը կեղծ դեմոկրատիզմի քողի տակ նախապատրաստվում էին հակասոցիալիստական հեղաշրջման: Նրանք գաղտնի գործողություններից վերջերս անցան բացարձակ պայքարի: Օգտվելով Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության ղեկավարության և կառավարության մեջ եղած ռևիզիոնիստական աջ տարրերի թողտվությունից, թշնամական տարրերն անարգել օգտվում էին մամուլից, ռադիոյից ու հեռուստատեսությունից: Դրանց միջոցով նրանք մոլորության մեջ էին գցում ժողովրդին, քարոզում հակալենինյան հայացքներ,

բորբոքում նացիոնալիստական տրամադրություններ, ստորաբար վարկաբեկում
կոմունիստական կուսակցությանն ու սոցիալիստական կարգերին, չարամտորեն
կրպարտում Սովետական Միությանն ու սոցիալիստական լագերի մյուս երկրնե-
րին, թշնամություն սերմանում եղբայրական ժողովուրդների միջև, որոնք ընդ-
հանուր թշնամու՝ հիտլերյան Գերմանիայի դեմ տարած հաղթանակով կռել են
իրենց անխախտ ու անշահախնդիր բարեկամությունը:

Սովետական Միության և մյուս եղբայրական կոմունիստական կուսակցու-
թյունների Կենտկոմներն իրենց ներկայացուցիչների միջոցով Չեխոսլովակիայի
ղեկավարներին բազմիցս կգուշացրին սպառնացող վտանգի մասին և նրանց
ուշադրությունը հրավիրեցին հակահեղափոխական տարրերի դեմ պայքարը
ուժեղացնելու վրա: Չեխոսլովակիայի ղեկավարները խոսքով ընդունեցին այդ,
բայց գործնականում էական քայլեր չձեռնարկեցին և լոյալություն ցուցաբերե-
ցին թշնամական տարրերի նկատմամբ: Դա տվեց իր բացասական հետևանքը՝
հակահեղափոխության ուժեղացումը: Հակասոցիալիստական ուժերը սուր պայ-
քար ծավալեցին ՉՍՍՀ Կոմկուսի Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների
դեմ, որոնցում նշված է, որ երկրում սոցիալիզմի գործի համար գլխավոր վտան-
գը բխում է աջից: Սրանից հետո հակասոցիալիստական տարրերի ելույթները
ավելի հաճախակիացան: Դա առանձնապես արտահայտվեց հունիսի վերջին,
երբ հակահեղափոխական շրջանները մամուլում հրատարակեցին «Երկու հա-
կար բառ» դիմումը, որ Չեխոսլովակիայի կոմկուսի, սահմանադրական իշխա-
նության դեմ պայքարելու բացահայտ կոչ էր: Այդ փաստաթուղթը հակահեղա-
փոխական գործողությունների հետագա ակտիվացման պլատֆորմ էր, որը,
ցավոք, Չեխոսլովակիայում խիստ հակահարվածի չարժանացավ:

Հայտնի է, որ առանց կոմունիստական կուսակցության ամրապնդման,
առանց հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նրա ղեկավար դերի ուժե-
ղացման, սոցիալիզմի կառուցումը դատարկ ֆրազ է մնում: Ահա թե ինչու հա-
կահեղափոխական տարրերն իրենց պայքարի սուր սլաքն ամենից առաջ ուղ-
ղել էին Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության դեմ, բռնելով նրան
վարկաբեկելու ուղին: Այդ գործում նրանց նպաստում էր Չեխոսլովակիայի կոմ-
կուսի ղեկավարության մի մասի սխալ դիրքը, մի շարք հարցերում մարքս-լե-
նինյան սկզբունքների խեղաթյուրումը: «Հենց այն,—նշում է «Պրավդան»,—
որ Չեխոսլովակիայի կոմկուսի որոշ ղեկավար գործիչներ բազմիցս կոչ էին
անում «վերջ տալ կոմունիստների մենաշնորհին իշխանության նկատմամբ»,
«կուսակցությունն անջատել իշխանությունից», հաստատել Չեխոսլովակիայի
կոմկուսի «իրավահավասարություն» մյուս քաղաքական կուսակցությունների
հետ, հենց այն, որ կոչ էր արվում հրաժարվել պետության, էկոնոմիկայի, կուլ-
տուրայի և այլ բնագավառների կուսակցական ղեկավարությունից, խթանեցին
Չեխոսլովակիայի կոմկուսի դեմ ուղղված սանձարձակ կամպանիան, որը վա-
րում էին այն ուժերը, որոնք ձգտում էին քայքայել Չեխոսլովակիայի կոմկուսը,
նրան վրկել ղեկավար դերից հասարակության մեջ»:

Այս ամենը հասցրեց այն բանին, որ Չեխոսլովակիայի կոմկուսում փաստո-
րեն սկսեցին խախտվել կուսակցական կյանքի կազմակերպման լենինյան գլ-
խավոր սկզբունքները՝ դեմոկրատական ցենտրալիզմի, կուսակցության գաղա-
փարական-կազմակերպական միասնության սկզբունքները: Կուսակցությունը
փաստորեն կանգնեց ֆրակցիոն խմբավորումների ապառության շեմին: Եվ սա
այն դեպքում, երբ Լենինի առաջարկով կուսակցության միասնության վերաբեր-
յալ ՌԿ(բ)Կ X համագումարի բանաձևում ասված է. «Անհրաժեշտ է, որ բոլոր



գիտակից բանվորները պարզորոշ գիտակցեն ամեն մի ֆրակցիոնության վնասն
ու անթույլատրելիությունը, ֆրակցիոնություն, որն իրականում անխուսափե-
լիորեն տանում է դեպի համերաշխ աշխատանքի թուլացում և դեպի այն, որ կա-
ռավարական կուսակցության մեջ խցկված նրա թշնամիները կրկնակի ուժեղ
փորձեր են անում խորացնելու բաժանումը և այն օգտագործելու հակահեղա-
փոխության նպատակներով»: Անտեսել լենինյան այս ցուցումը և հանդես գալ
կուսակցության միասնության դեմ, կնշանակի օգնել մեր դասակարգային թըշ-
նամիներին, համաշխարհային ռեակցիային, որը սոցիալիզմի դեմ պայքարելիս
օգտագործում է կոմունիստական կուսակցությունների շարքերի միասնության
ամեն մի թուլացումը:

Կոմունիստական կուսակցության վարկաբեկումը, նրա կատարած հսկայա-
կան աշխատանքի անտեսումն ու ոտնահարումը, կադրերի ջարդը, պրոպա-
գանդայի մասսայական միջոցների՝ թշնամու կողմից օգտագործումը և դեմոկրա-
տական ցենտրալիզմի սկզբունքի խախտումը բարոյալքում էր կոմունիստներին,
պատճառ դառնում, որ նրանք կորցնեն հեռանկարն ու վստահությունը: Դրանք
միաժամանակ կուսակցական կազմակերպություններում առաջ էին բերում շփո-
թություն և նպաստում աջերի ազդեցության ուժեղացմանը:

Չեխոսլովակիայում կոմունիստական կուսակցությունը քայքայելու, սոցիա-
լիզմի դիրքերը թուլացնելու ռեակցիայի փորձերն ուղեկցվում էին մարքս-լենին-
յան գաղափարախոսության դեմ ուղղված ծավալուն հարձակմամբ: Աշխատավոր
ժողովրդի թշնամիներն ամեն կերպ փորձում էին գիտական սոցիալիզմը փո-
խարինել գաղափարական այլ ըմբռնումներով, ոչնչացնել մարքսիզմ-լենինիզմի
կլասիկների աշխատությունները և այլն:

Հակասոցիալիստական թափթփուկներն իրենց թշնամական գործունեու-
թյան մեջ առաջ էին քաշում մի շինծու վերսիա ևս: Նրանք իրենց ելույթներում
արտահայտում էին այն միտքը, որ Չեխոսլովակիայի բոլոր «չարիքները» կապ-
ված են այն բանի հետ, որ նա մինչև վերջերս իր զարգացման ընթացքում
առաջնորդվել է ինչ-որ մեկի կողմից պարտադրված «սոցիալիզմի սովետական
մոդելով»:

Սա մտացածին հերյուրանք է, քանի որ բոլորին հայտնի է, թե ինչպես
Չեխոսլովակիայի պետականության, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացումը,
ինչպես նաև կոմունիստական կուսակցության զարգացումն ընթացել ու ընթա-
նում է երկրի առանձնահատկությունները, նրա ավանդույթները, բոլոր տեսա-
կետներից նրա սպեցիֆիկան արտացոլող ձևերով: Բացի այդ, Սովետական
Միությունն ու Չեխոսլովակիան ունեն պետական տարբեր կառուցվածք, շատ
բանում տարբեր են նաև ազգային հարցի լուծման եղանակները, ժողովրդական
տնտեսության կառավարման սիստեմները, ինչպես և ժողովուրդների քաղաքա-
կան, տնտեսական ու կուլտուրական կյանքի շատ հարցերի լուծման ձևերը:

Թշնամական ուժերն ամեն կերպ ձգտում են արատավորել նաև Սովետա-
կան Միության ու Չեխոսլովակիայի տնտեսական համագործակցությունը: Սա-
կայն համառ փաստերը խոսում են դրա դեմ: Սովետական Միության և սոցիա-
լիստական համագործակցության մյուս երկրների հետ ունեցած իր տնտեսական
կապերով Չեխոսլովակիան միայն շահել է: Նա անարգել, շահավետ հիմունք-
ներով տնտեսական փոխօգնության երկրներից և, առաջին հերթին ՍՍՀՄ-ից,
ստացել է այն ամենը, ինչ անհրաժեշտ է իր էկոնոմիկայի բազմակողմանի զար-
գացման համար: Մի՞թե դրա շնորհիվ չէ, որ Չեխոսլովակիան ներկայումս
էլեկտրաէներգիայի, պողպատի, ցեմենտի, գործվածքեղենի, կոշիկի, մսի և

մասմթերքների արտադրությամբ առաջ է անցել Եվրոպայի կարգացած կապիտալիստական երկրներից, ներառյալ Անգլիան, Արևմտյան Գերմանիան և այլ երկրներ: Բնակչության մեկ շնչին ընկնող մեքենաների արտադրությամբ Չեխոսլովակիան գրավում է աշխարհի առաջնակարգ տեղերից մեկը:

Ի հեճուկս սոցիալիզմի թշնամիների, Չեխոսլովակիայի էկոնոմիկայի կարգացման վրա միանգամայն բարերար ազդեցություն է գործում նաև ՍՍՀՄ-ի հետ ունեցած առևտուրը: Բավական է ասել, որ վերջին 12 տարում Սովետական Միությունը Չեխոսլովակիային մատակարարել է 17 միլիոն տոննա հացահատիկ, գրեթե 700 հազար տոննա բամբակ, մոտ 70 հազար տոննա բուրդ, 51 միլիոն տոննա նավթ, 80 միլիոն տոննա հանքաքար, մոտ 2 միլիոն տոննա չուգուն, մոտ 2,5 միլիոն տոննա գլանվածք, 285 հազար տոննա պղինձ և բազմաթիվ այլ ապրանքներ, որոնց ազատ վալյուտայով գնելու դեպքում Չեխոսլովակիան հարկադրված կլիներ ծախսել մոտ 3,5 միլիարդ դոլար: Հարկ է նշել և այն, որ Չեխոսլովակիան էլ իր հերթին Սովետական Միությանը մատակարարել ու մատակարարում է մեքենաներ և ժողովրդական սպառման ապրանքներ:

Սոցիալիստական երկրների հետ ունեցած իր տնտեսական կապերը լայնացնելիս, Սովետական Միությունը համապատասխան միջոցներ է ձեռնարկում, որպեսզի իր տնտեսական կարգացումը միաժամանակ ապահովի մեր բարեկամների ու դաշնակիցների ժողովրդա-տնտեսական պահանջմունքները, նրանց էկոնոմիկայի կարգացումն ու անկախությունը կապիտալիստական երկրներից:

Պատմականորեն այնպես է դասավորվել, մատնանշում է «Պրավդան», որ Սովետական Միությունը հսկայական պատասխանատվություն է կրում սոցիալիստական լագերի անվտանգության համար: Ուստի և բնական է, որ կարգացնելով մեր էկոնոմիկան, մենք շարունակ հարկադրված ենք հսկայական ներդրումներ անելու պաշտպանական արդյունաբերության մեջ, որը հարկավոր է ոչ միայն Սովետական Միությանը, այլև բոլոր սոցիալիստական երկրներին, որն այժմ ապահովում է Վիետնամի, արաբական պետությունների դեմ սանձազերծած իմպերիալիստական ագրեսիային հակահարված տալու հնարավորությունը:

Այս առումով հսկայական նշանակություն ունի նաև Վարշավայի պայմանագրի հետ կապված պարտավորությունների կատարումը, որն ինչպես Եվրոպայի, այնպես էլ ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման հուսալի միջոցն է: Պայմանագրի մասնակից երկրները փոխադարձաբար հանդիսավոր պարտավորություն են ստանձնել կրծքով պաշտպանելու սոցիալիզմի նվաճումները, իրենց սահմանները և Եվրոպայի խաղաղությունը: Չնայած դրան, Չեխոսլովակիայում երևան եկան մարդիկ, որոնք, կոչ անելով վերանայել արտաքին քաղաքականությունը, փորձեցին հարված հասցնելու Վարշավայի պայմանագրին, խարխլելու այն: Այդպես վարվեց Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի պատասխանատու աշխատակից Վ. Պրխլիկը, որը հարձակումներ գործելով Վարշավայի պայմանագրի վրա և պահանջելով վերանայել նրա կառուցվածքը, ավելի հեռուն գնաց և փորձեց վարկաբեկել Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի գործունեությունը: Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմը այդ ելույթը չդատապարտեց: Ավելին, խախտելով Վարշավայի պայմանագիրը, Չեխոսլովակիան բացեց իր արևմտյան սահմանները, որի հետևանքով արևմտյան երկրներից Չեխոսլովակիա ներխուժեցին իմպերիալիստական հետախուզությունների կողմից ուղարկված դիվերսանտներ, լրտեսներ: Իմպերիալիստական գործակալները հնարավորություն



ունեին գաղտնաբար պենք տեղափոխել Չեխոսլովակիա: Դա, արդեն, միայն Չեխոսլովակիային չէր վերաբերում, այլ Վարշավայի մասնակից բոլոր պետություններին, որոնք չէին կարող թույլ տալ, որ այդ կազմակերպության մեջ ճեղք բացվի:

Վերջին իրադարձությունների ժամանակ լուրջ մտահոգություն առաջացրեց նաև Արևմտյան Գերմանիայի նկատմամբ Չեխոսլովակիայի որոշ ղեկավարների վերաբերմունքը: Չնայած այդ հարցում եղած որոշակիությանը, մանավանդ սահմանների վերաբերյալ, Չեխոսլովակիայի որոշ գործիչներ կոչ էին անում երկրի արտաքին քաղաքականությունը շրջել արևմուտքի կողմը, այն «առավել անկախ» դարձնել Վարշավայի պայմանագրի երկրների քաղաքականությունից: Դա վտանգավոր միտում էր, որի կողքով երբեք ու երբեք անտարբերությամբ անցնել չէր կարելի:

Անտարբերությամբ չէր կարելի անցնել նաև Չեխոսլովակիայում Սովետական Միության դեմ բորբոքվող թշնամական պրոպագանդայի կողքով: Այդ պրոպագանդայի հեղինակները ելնում են ոչ թե սեփական երկրի, այլ իմպերիալիստների շահերից, այն ուժերի շահերից, որոնք ուզում են Չեխոսլովակիան անջատել սոցիալիստական համագործակցության երկրներից և նրա ժողովրդի հիշողությունից ջնջել հիտլերիզմի դեմ մղած համատեղ պայքարը, խաթարել համատեղ մարտերում ստեղծված եղբայրությունն ու բարեկամությունը:

Այս ամենի հետևանքով վերջին ժամանակներս Չեխոսլովակիայում դրությունն ավելի սրվեց, երբ ստեղծվեցին և սկսեցին ակտիվորեն գործել հակահեղափոխական, հակասոցիալիստական կազմակերպություններ, որոնք ունեին որոշակի սոցիալական բազա, հենվում էին արտասահմանից ցույց տրվող աջակցության վրա և ավելի ու ավելի բացահայտորեն հավակնություն էին դրսևորում իշխանության նկատմամբ: Երկրում, ըստ էության, ստեղծվել էր քաղաքական օպոզիցիա, որը միտում էր Չեխոսլովակիայում վերականգնելու կապիտալիստական կարգերը:

Դեպքերի կարգացման ընթացքը հասցրեց նրան, որ աջ, հակասոցիալիստական ու հակահեղափոխական ուժերի բացահայտ և անարգել գործողությունների հետևանքով Չեխոսլովակիայում առաջացավ հակահեղափոխական հեղաշրջման ու սոցիալիզմի նվաճումների կորստյան ռեալ սպառնալիք: Պահը կրիտիկական էր և Սովետական Միությունն ու սոցիալիստական մյուս երկրները չէին կարող անտարբեր մնալ՝ վտանգի մեջ թողնելով եղբայրական երկրի ժողովրդին: Ինտերնացիոնալ գերագույն շահը՝ սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը պահանջում էր անհապաղ օգնության հասնել բարեկամ Չեխոսլովակիային, աջակցել նրան՝ վնասազերծելու թշնամուն:

Հայտնի է, որ Բուլղարիայի կոմունիստական կուսակցության, Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցության, Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության, Լեհաստանի միացյալ բանվորական կուսակցության և Սովետական Միության կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեներն իրենց կողմից հնարավոր ամեն ինչ արին, որպեսզի բարեկամների իրավունքով Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությանն ու ժողովրդին օգնեին հաղթահարելու վտանգավոր ճգնաժամը, քաղաքական միջոցներով պարտության մատնելու գլուխ բարձրացրած հակահեղափոխական ուժերին:

Մոսկվայում ՍՄԿԿ-ի և Չեխոսլովակիայի կոմկուսի ներկայացուցիչների միջև մայիս ամսին կայացած հանդիպումներից հետո ՍՄԿԿ Կենտկոմը և Վար-

շավայի պայմանագրի մի շարք եղբայրական երկրների ղեկավարներ բազմիցս առաջարկեցին երկկողմ նոր հանդիպումներ անցկացնել Չեխոսլովակիայի կոմկուսի ղեկավարների հետ՝ քննելու ստեղծված իրադրությունը: Սակայն ամեն անգամ Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի ղեկավարները կանխակալ չարժառիթներով խուսափում էին հանդիպում ունենալուց: Բայց վիճակն այնպիսին էր, որ երկկողմ հանդիպում անցկացնելու համար եղբայրական կուսակցություններն ունեին քաղաքական ու բարոյական բոլոր հիմքերը: Դրանից ելնելով կայացավ Վարշավայի հանդիպումը, որը ցուցադրեց կոմունիստական ու բանվորական հինգ կուսակցությունների լիակատար միասնությունը, նրանց անսասան համախմբվածությունն ու վճռականությունը՝ հակահարված տալու սոցիալիզմի բացահայտ թշնամիներին: Դրա անհրաժեշտությունը բխում էր այն բանից, որ Չեխոսլովակիայում հակահեղափոխական ելույթներն արդեն կրում էին խիստ կազմակերպված բնույթ, տեղի էր ունենում թշնամական բոլոր ուժերի գործողությունների կոորդինացում, ավելի էին հալածվում ակտիվ կոմունիստները, լայն ծավալ էր ստանում հակասոցիալիստական հարձակումը, որին օբյեկտիվորեն միացան արտաքին իմպերիալիստական ուժերը:

Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, իրենց ինտերնացիոնալ պարտքի խոր գիտակցությամբ, ամեն ինչ արին պաշտպանելու ՉՍՍՀ-ի կոմունիստ եղբայրներին և բոլոր աշխատավորներին, կանխելու դեպքերի վտանգավոր ընթացքը: Այդ նպատակներին էին ծառայում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի նախագահության հանդիպումը Տիսայի Չիեռնայում, այնուհետև սոցիալիստական վեց երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների խորհրդակցությունը Բրատիսլավայում: Դրանց ընթացքում Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի ներկայացուցիչները հավատացնում էին, որ անհետաձգելի միջոցառումներ կիրագործեն հակահեղափոխության դեմ: Բայց, ցավոք, գործնականում նրանք այդպես չվարվեցին: Ավելին, Չեխոսլովակիայի կոմկուսի ղեկավարության ու կառավարության մեջ եղած ռևիզիոնիստական աջ տարրերը ձախողեցին վերոհիշյալ հանդիպումներում ձեռք բերված այն պայմանավորվածության կատարումը, որ անհրաժեշտ է Չեխոսլովակիայում պաշտպանել սոցիալիզմի դիրքերը, պայքարել հակասոցիալիստական ուժերի դեմ, հակահարված տալ իմպերիալիզմի դավերին:

Տեսնելով երկրին սպառնացող լուրջ վտանգը, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության կուսակցական ու պետական գործիչները դիմեցին Սովետական Միության և մյուս դաշնակից պետություններին՝ խնդրելով եղբայրական չեխոսլովակյան ժողովրդին ցույց տալու անհետաձգելի օգնություն, ներառյալ օգնություն զինված ուժերով:

Սովետական կառավարությունը և դաշնակից երկրների՝ Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության, Հունգարիայի Ժողովրդական Հանրապետության, Գերմանիայի Դեմոկրատական Հանրապետության, Լեհաստանի Ժողովրդական Հանրապետության կառավարությունները, ելնելով անխախտ բարեկամության ու համագործակցության սկզբունքներից և գոյություն ունեցող պայմանագրային պարտավորություններին համապատասխան, ընդառաջեցին եղբայրական Չեխոսլովակիայի ժողովրդին անհրաժեշտ օգնություն ցույց տալու խնդրանքին և իրենց զինված ուժերը օգոստոսի 21-ին մտցրին Չեխոսլովակիայի տերիտորիան: Նրանք Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության քաղաքացիներին ուղղված իրենց դիմումում նշեցին, որ մեր զորքերը



«ձեզ մոտ են եկել ոչ թե միջամտելու ձեր ներքին գործերին, այլ ձեզ հետ միասին հակահարված տալու հակահեղափոխությանը, պաշտպանելու սոցիալիզմի գործը և կանխելու ձեր հայրենիքի սուվերենությանը, անկախությանն ու անվտանգությանը սպառնացող վտանգը:

Եղբայրական դաշնակից երկրների զորքերը ձեզ մոտ են եկել, որպեսզի ոչ ոք չկարողանա խլել ֆաշիզմի դեմ մեր համատեղ պայքարում նվաճված ձեր ազատությունը, որպեսզի ոչ ոք չկարողանա ձեզ խանգարել առաջ ընթանալու սոցիալիզմի պայծառ ուղիով: Այդ զորքերը ձեր տերիտորիայից կհեռանան՝ հենց որ վերանա Չեխոսլովակիայի ազատության և անկախության սպառնացող վտանգը»:

Սովետական Միության, սոցիալիստական սիստեմի երկրների աշխատավորները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը պաշտպանեցին եղբայրական Չեխոսլովակիային ցույց տված նման օգնությունը: Այդ օգնության շնորհիվ Չեխոսլովակիայում դրությունը սկսում է նորմալանալ: Բայց ռեակցիոն ուժերը չեն դադարեցնում քաղաքական մթնոլորտը շիկացնելու իրենց փորձերը, հրահրում են միջադեպեր, արտասահմանյան իմպերիալիստական իրենց տերերի հետ միասին կատաղի պրոպագանդա են մղում երկրի հայրենասիրական ուժերի և դաշնակից սոցիալիստական պետությունների դեմ: Բայց ինչ էլ անեն նրանք, հաղթանակը առաջադիմական ուժերի կողմն է, հակահեղափոխական ռեակցիան դեն կնետվի:

Չեխոսլովակիայում դրության նորմալացմանը, սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը մեծապես նպաստեցին ՉՍՍՀ-ի պրեզիդենտ Լ. Սվոբոդայի գլխավորած պատվիրակության և Սովետական Միության կոմունիստական կուսակցության ու կառավարության ղեկավարների՝ Մոսկվայում կայացած բանակցությունների, ինչպես նաև Չեխոսլովակիայի դրության հետ կապված հարցերի շուրջը Բուլղարիայի, Հունգարիայի, ԳԴՀ-ի, Լեհաստանի, Սովետական Միության կուսակցական-կառավարական պատվիրակությունների անցկացրած խորհրդակցությունների ու կոնսուլտացիաների ընթացքում ձեռք բերված համաձայնությունները և մշակված միջոցառումները: Դրանք իմպերիալիստական ռեակցիայի աջակցությունը վայելող Չեխոսլովակիայի հակահեղափոխության ուժերի համար նոր հարված էին և, միաժամանակ, վկայությունն այն բանի, թե ինչպես սոցիալիստական երկրները միջազգային իրադրության բարդ պրոբլեմներն ու իրենց փոխհարաբերությունների հարցերը լուծում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա: Նրանք միացյալ ճակատով կանգնում են սոցիալիզմի պաշտպանության դիրքերում և խորտակիչ հարվածներ հասցնում հակասոցիալիստական նենգ ուժերին:

Սովետա-չեխոսլովակյան Մոսկվայի բանակցություններն անցան բարեկամության մթնոլորտում, ընկերական անկաշկանդ դիսկուսիայի պայմաններում և պսակվեցին հաջողությամբ: Այդ առթիվ հրապարակված կոմյունիկեում ասված է. «Կողմերը երկուստեք այն հաստատ համոզմունքը հայտնեցին, որ արդի իրադրության մեջ գլխավորը Տիսայի Չիեռնայում ընդունված համատեղ որոշումների և Բրատիսլավայի խորհրդակցությունում ձևակերպված դրույթների ու սկզբունքների իրականացումն է, ինչպես նաև բանակցությունների ընթացքում ձեռք բերված պայմանավորվածություններից բխող գործնական քայլերի հետևողական կենսագործումը»:

Մոսկվայի բանակցություններում սովետական կողմը հայտարարեց, որ ինքն ըմբռնում ու պաշտպանում է Չեխոսլովակիայի կոմկուսի ու ՉՍՍՀ-ի

ղեկավարության դիրքավորումը, որը մտադիր է ելնել մարքսիզմ-լենինիզմի բազայի վրա հասարակության ղեկավարման մեթոդների կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի կարգացման և սոցիալիստական կարգերի ամրապնդման նպատակով ՉՍՍՀ-ի կոմկուսի Կենտկոմի հունվարյան ու մայիսյան պլենումների ընդունած որոշումներից: Չեխոսլովակյան կողմն էլ իր հերթին հայտարարեց, որ ազդեցության բոլոր ոլորտներում կուսակցական ու պետական օրգանների ամբողջ աշխատանքն ուղղված կլինի այնպիսի ազդու միջոցառումների ապահովման նպատակին, որոնք ծառայեն սոցիալիստական իշխանությանը, բանվոր դասակարգի ու կոմունիստական կուսակցության ղեկավար դերին, Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական համագործակցության ժողովուրդների հետ բարեկամական հարաբերությունների կարգացման ու ամրապնդման շահերին:

Սովետական Միությունը և Չեխոսլովակիան եղբայրական սերտ բարեկամությամբ կապված առաջվա պես վճռական հակահարված կտան միլիտարիստական, ռևանշիստական և նեոնացիստական ուժերին, որոնք ձգտում են վերանայել երկրորդ համաշխարհային պատերազմը դատապարտող վճիռները, Եվրոպայում ստեղծված նոր սահմանները: Նրանք վճռական հակահարված կտան նաև այն բոլոր թշնամիներին, որոնք փորձ կանեն խանգարելու սոցիալիստական երկրների ժողովուրդների խաղաղ կյանքը, վնաս հասցնելու սոցիալիզմի գործին:

Սովետական ողջ ժողովուրդը, այդ թվում և Սովետական Հայաստանի աշխատավորները միահամուռ պաշտպանում են իրենց հարազատ կուսակցության և նրա լենինյան կենտրոնական կոմիտեի քաղաքականությունը, որը ապահովում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդումն ու կարգացումը, սոցիալիզմի ու դեմոկրատիայի ծաղկումը, ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանումը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ.

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## ԲԱՔՎԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԱՆ

(Բաքվի 26 կոմունարների չարաճճագ սպանության 50-ամյակի առթիվ)

### 1.

*Սեպտեմբերի 20-ին լրացավ Բաքվի 26 կոմունարների չարաճճագ սպանության 50-ամյակը: Սովետական ժողովուրդը մեծ երախտագիտությամբ և անսահման հարգանքով է հիշում հերոս կոմունարներին, որոնց անուններն ու փառքը դարեդար կապրեն և չեն խամրի:*

*Բաքվի կոմունան սովետական իշխանության հաղթանակի համար մեր հայրենիքի բազմազգ աշխատավորների մղած անզիջում պայքարի վսեմ հերոսապատում է, ժողովուրդների լենինյան բարեկամության և եղբայրության խորհրդանիշն Անդրկովկասում: Կոմունան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ծնունդն է, միջազգային իմպերիալիզմի և ներքին հակահեղափոխական սև ուժերի դեմ երկրամասի պրոլետարիատի և աշխատավոր զանգվածների ծավալած դասակարգային պայքարի պատմության լուսապայծառ էջը: Այն խոր հմայքը, որ վայելում են Բաքվի կոմունան և նրա բոցաշունչ կոմիսարները՝ Ս. Գ. Շահումյանի ղեկավարությամբ, վկայում է նրանց բարձր գաղափարայնության, կոմունիզմի գործի նկատմամբ տածած անհուն հավատարմության և նվիրվածության մասին: Կոմունայի բազմաբեղուն գործունեությունը հաստատումն է լենինյան խոսքերի ճշմարտությանը, թե՝ արթնացած Արևելքը ընթանալու է մեծ Հոկտեմբերի ճանապարհով:*

*Հանդիսանալով երկրամասի պրոլետարական շարժման գագաթնակետը 1918 թվականին, Կոմունան բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, հող պատրաստեց Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության հաղթանակի, Անդրկովկասի ժողովուրդների խաղաղության և ազգային վերածննդի համար:*

### 2.

*Անդրկովկասի աշխատավորները ջերմորեն արձագանքեցին ազատարար Հոկտեմբերին: Երկրամասում Բաքվի պրոլետարիատն անվերապահորեն կանգնեց Հոկտեմբերի դրոշի տակ և պայքարի ելավ Անդրկովկասում սովե-*

տական կարգերի հաղթանակն ապահովելու համար: Բանվորների և զինվորների Բաքվի սովետը, որի նախագահն էր Ս. Գ. Շահումյանը, Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, 1917 թվականի նոյեմբերի 4-ին (17-ին), հատուկ կոչով դիմեց Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորներին՝ «Պետրոգրադի հեղափոխական պրոլետարիատն ու կայազորը տապալված հայտարարեցին Կերենսկու—Կոնովալովի բուրժուական կոալիցիոն կառավարությունը և բանվորների ու զինվորների պատգամավորների սովետների համագումարը հռչակեց ժողովրդական կոմիսարների նոր կառավարություն՝ Լենինի գլխավորությամբ...

Բոլորը, ովքեր ցանկանում են ժողովրդի բարիքը և հյուծված ու տանջված երկրում ամենաարագ կերպով խաղաղություն ու կարգ հաստատել, պետք է անհապաղ ու վճռականորեն անցնեն նոր կառավարության, Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների կառավարության կողմը»:

Պրոլետարական Բաքուն դարձավ երկրամասի առաջին սովետական քաղաքը, Անդրկովկասում մեծ Հոկտեմբերի գաղափարների հաղթանակի համար ծավալված պայքարի նախամարտիկն ու դրոշակակիրը: Բայց այդ օրերին Բաքվի սովետում մեծամասնություն էին կազմում էսեռա-մենշևիկյան ու նացիոնալիստական կուսակցությունները: Անդրկովկասում իշխանությունը գտնվում էր բուրժուա-կալվածատիրական կուսակցությունների ձեռքում: Անդրկովկասյան կոմիսարիատը և ապա սեյմը երկրամասը կտրելով Ռուսաստանից, իրենց հակաժողովրդական քաղաքականությամբ ամրապնդում էին բուրժուազիայի, ազնվականության և խաների տիրապետությունը: Նրանք դանակ էին խրում հեղափոխության թիկունքը, խեղդում մինչև իսկ 1917 թվականի փետրվարյան հեղափոխության շնորհիվ ձեռք բերած չնչին ազատությունները:

1918 թվականը Կովկասի համար շրջադարձային ժամանակաշրջան էր: Հեղափոխության գործը, ինչպես այդ օրերին գրել է Ս. Գ. Շահումյանը, ոչ մի տեղ այնպիսի վտանգավոր վիճակում չէր, ինչպես Կովկասում:

> «Կովկասը կանգնած է անդունդի եզրին,— ասում էր Շահումյանը: Փրկեցե՛ք նրան: Ստեղծեցե՛ք այստեղ ինտերնացիոնալ բանվորա-գյուղացիական կառավարություն, որը Ռուսաստանի սովետական կենտրոնների ու ժողովրդական կոմիսարների սովետի հետ սերտ միասնություն ստեղծելով վերջ կդնի Կովկասի հակահեղափոխությանը և երկրի բանվոր ու գյուղացի բնակչությանը կառաջնորդի դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը» (Ստ. Շահումյան, Երկեր, հատ. 3, էջ 104):

Միջազգային իմպերիալիզմը և ներքին հակահեղափոխական սև ուժերը կատաղի պայքարի էին ելել հեղափոխության դեմ: Բաքուն, երկրամասի այդ ժամանակվա արդյունաբերական ամենախոշոր կենտրոնը, դարձել էր կովախնձոր: Արշավում էին մի կողմից՝ գերմանա-թուրքական օկուպանտները, իսկ մյուս կողմից՝ անգլո-ֆրանսիական իմպերիալիստները, որոնք ջանում էին գավթել Բաքուն, իրականացնել իրենց թալանչիական նպատակները, տիրել նավթին և Արևելքի ստրատեգիական կարևոր հանգույցին: Սա դեռ բոլորը չէր: Բաքվի պրոլետարիատի շահերին տմարդի կերպով դավաճանում էին էսեռները, մենշևիկները, դաշնակցականները և մուսավաթականները: Մեծամասնություն կազմելով սովետում, նրանք իրենց քաղաքականությամբ աջակցում էին օտարերկրյա զավթիչներին: Միայն բոլշևիկյան կուսակցությունն էր, որ հետևողականորեն պաշտպանում էր ժողովրդի, սոցիալիստական հանրապետության շահերը: Հաշվի առնելով ստեղծված բարդ իրադրությունը, բոլշևիկները



բանվորներից և աշխատավոր զանգվածներից Բաքվում ստեղծում են կարմիր գվարդիա, ինտերնացիոնալ բանակ, մարտական ջոկատներ: 1918 թվականի մարտի կեսերին Ադրբեջանի հակահեղափոխական ուժերը բացահայտ հարձակման են անցնում: Հրահրելով ազգամիջյան ընդհարումներ, դաշնակցականներն ու մուսավաթականները գաղտնի բանակցություններ են վարում սովետական իշխանության դեմ միասնաբար հանդես գալու համար: Նման պրովոկացիաները և մուսավաթիստների «վայրենի դիվիզիայի» Բաքվին մոտեցնելն ահավոր վտանգ ստեղծեցին քաղաքում: Բաքվի բոլշևիկները բոլոր միջոցներին դիմեցին՝ արյունահեղությունից խուսափելու համար: Մարտի 30-ին մուսավաթիստները հակասովետական խռովություն բարձրացրին: Նույն օրը Բաքվում կազմակերպվեց քաղաքի պաշտպանության հեղափոխական կոմիտե՝ Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար Ս. Գ. Շահումյանի գլխավորությամբ, որը և հանդիսացավ ռազմական գլխավոր իշխանությունը:

Ադրբեջանական ժողովրդի պանծալի զավակ, հավատարիմ լենինյան Մ. Ազիզբեկովը նշանակվեց քաղաքի մուսուլմանական մասի պաշտպանության գծով կոմիսար:

Մարտի 30-ից մինչև ապրիլի 1-ը (նոր տոմարով) ծավալված երեքօրյա համառ մարտերը, որ հրահրել էին մուսավաթիստները և մղվում էր հեղափոխության ու հակահեղափոխության զինված ուժերի միջև, ավարտվեց Բաքվի պրոլետարիատի փայլուն հաղթանակով: 1918 թվականի ապրիլի 1-ին Բաքվում հաղթանակեց սովետական իշխանությունը, ստեղծվեց Բաքվի կոմունան:

Մուսավաթիստական բանդաները պարտություն կրելով, նահանջեցին և ամրացան Ելիզավետպոլում: Թուրքիայից և Դաղստանից նոր համալրում ստանալով նրանք սկսեցին հետագա արշավանքները Բաքվի վրա:

Այսպիսով, Բաքվի կոմունան, գործելով պատմական բարդ իրադրության մեջ, հավատարիմ մնալով մեծ Հոկտեմբերի դրոշին, պայքարում էր երկու ճակատում՝ ներքին և արտաքին: Կոմունայի հաստատումից անմիջապես հետո, Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինի գլխավորած կենտրոնական ժողովրդական կոմիսարների սովետին զեկուցում է Կովկասի դրության մասին: Ապրիլի 13-ին Վ. Բոյցովի միջոցով Ժողկոմսովետին ուղարկած նամակում Ս. Գ. Շահումյանը գրում է.

> «Անդրկովկասը թևակոխել է սովետական իշխանության համար մղվող զինված ակտիվ պայքարի շրջանը: Երեք օրվա ընթացքում՝ մարտի 30 ու 31-ին և ապրիլի 1-ին Բաքվում կատաղի մարտեր էր տեղի ունենում: Կռվում էին մի կողմից, սովետական կարմիր գվարդիան, մեր կազմակերպած կարմիր ինտերնացիոնալ բանակը, կարմիր նավատորմը, որը մեզ հաջողվեց կարճ ժամանակամիջոցում վերակառուցել, և հայկական ազգային զորամասերը: Մյուս կողմից՝ մուսուլմանական «վայրենի դիվիզիան», որի շարքերում բավական թվով ռուս սպաներ կան, և «մուսավաթ» կուսակցության ղեկավարած զինված մուսուլմանների բանդաները: Երկու կողմերից քաղաքային մարտերում 20 հազարից ավելի մարդ էր մասնակցում... Մարտերի արդյունքները փայլուն են մեզ համար: Թշնամու ջախջախումը կատարյալ էր» (Ստ. Շահումյան, Նամակներ, էջ 65—66):

Ս. Գ. Շահումյանը վերլուծելով Կովկասում ստեղծված դրությունը, մերկացնում է սոցիալիզմի դիմակի տակ թաքնված հակահեղափոխականներին, ազատության թշնամիներին, հեղափոխության շտաբին իրազեկ դարձնում, որ անընդհատ պատերազմական վիճակում ենք գտնվում, որ անհավասար պայքարում վճռվում է Անդրկովկասի բախտը, Բաքվում տարած հաղթանակից հետո սովետը վերջնականապես ամրապնդվել է, պայմաններ են ստեղծվել

սոցիալիստական վերափոխումների համար, բոլշևիկները Բաքվում դրության լիակատար տերերն են դարձել և ապա՝ նա օգնություն ու ցուցումներ է խնդրում։

1918 թվականի ապրիլ-մայիս ամիսներին սովետական իշխանությունը հաղթանակում է Ադրբեջանի մի շարք գավառներում։ Ապրիլի 25-ին Բաքվի սովետի նիստում ստեղծվում է Բաքվի ժողովրդական կոմիսարների սովետ, որն հանդիսանում էր պրոլետարիատի դիկտատուրայի օրգանը։ Նա իր առջև խնդիր էր դրել սերտ կապ պահպանել Համառուսաստանյան կենտրոնական իշխանության հետ և հարմարվելով տեղական պայմաններին՝ կյանքում կիրառել Ռուսաստանի Բանվորա-Գյուղացիական կառավարության՝ Վ. Ի. Լենինի գլխավորած ժողովրդական կոմիսարների սովետի բոլոր դեկրետներն ու կարգադրությունները։

> «Սովետական հանրապետությունում, Բանվորա-Գյուղացիական կոմունարների հանրապետությունում,— ասված է Բաքվի ժողկոմսովետի Դեկլարացիայում,— որի հիմքը դրել է Հոկտեմբերյան հեղափոխությունը, Բաքվի սովետը շարունակում է մնալ որպես միասնական մեծ ամբողջի անքակտելի մասը։ Բաքվի ժողկոմսովետի հիմնական խնդիրներից մեկն է լինելու՝ հաստատել որքան հնարավոր է սերտ կապ կենտրոնական իշխանության հետ և Բաքվի բանվորների ու նահանգի չքավոր գյուղացիությունը որքան հնարավոր է սերտորեն միավորել համայն Ռուսաստանի բանվորների և գյուղացիների հետ» (Ստ. Շահումյան, Երկեր, հատ. 3, էջ 162)։

Բաքվի Ժողկոմսովետի նախագահ և արտաքին գործերի կոմիսար է ընտրվում Ստ. Շահումյանը, ներքին գործերի կոմիսար՝ Ա. Ջափարիձեն, նահանգային կոմիսար և ներքին գործերի կոմիսարի տեղակալ՝ Մ. Ազիզբեկովը, ժողովրդական տնտեսության խորհրդի նախագահ՝ Ի. Ֆիոլետովը, ռազմածովային գործերի կոմիսար՝ Գ. Կորգանովը (Ղորղանյան), քաղաքային տնտեսության գործերի կոմիսար՝ Ն. Նարիմանովը, լուսավորության գործերի կոմիսար՝ Ն. Կոլեսնիկովան, աշխատանքի գործերի կոմիսար՝ Յա. Զևինը, արդարադատության գործերի կոմիսար՝ Ա. Կարինյանը (Գաբրիելյան)։ Պարենավորման կոմիսար՝ Ի. Ցուբուլկինը։

Բաքվի Ժողկոմսովետում բոլշևիկների հետ միասին մտնում էին նաև «ձախ» էսեռների աչքի ընկնող ներկայացուցիչներ, այդ թվում՝ հողագործության ժողկոմ Մ. Վեզիրովը, հաղորդակցության, ծովային տրանսպորտի, փոստ-հեռագրի ժողկոմ՝ Ի. Սուխարցևը, ֆինանսների ժողկոմ՝ Ա. Կիրեևը (որը հետագայում մերկացվեց որպես աֆերիստ, Բաքվի բանկի ոսկին կողոպտելու համար սովետական օրգանների կողմից գնդակահարվեց)։

## 3.

Բաքվի պրոլետարիատը, ոգեշնչված Վ. Ի. Լենինի իմաստուն ցուցումներով, անօրինակ սխրանքներ էր կատարում։ Կազմակերպելով քաղաքի պաշտպանությունը, անհավասար մարտեր մղելով ներքին և արտաքին թշնամիների դեմ։ Բաքվի Ժողկոմսովետը պատմական կարճ ժամանակամիջոցում իրականացրեց սոցիալիստական մի շարք միջոցառումներ՝ կարմիր գվարդիայի և կոմունիստական ջոկատների բազայի վրա ստեղծվեց Կարմիր բանակ։ Ջախջախելով պետական հին մեքենան, Բաքվի Ժողկոմսովետը ծրագրային դեկրետներ ընդունեց հողի ընդերքի, նավթարդյունաբերության, Կասպիական առևտրական նավատորմիղի ազգայնացման, ժողովրդական լուսավորության սիստեմը վերակառուցելու, դատական հին օրգանները վերացնելու



մասին և այլն։ Տնտեսական-քաղաքական կարևոր նշանակություն ուներ նավթարդյունաբերության ազգայնացումը։ Բաքվի նավթն անհրաժեշտ էր մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու, Սովետական Ռուսաստանի երիտասարդ հանրապետության պաշտպանունակությունը բարձրացնելու և ժողովրդական կարիքները հոգալու համար։ Կոմունան հաղթահարելով բազմաթիվ դըժվարություններ, ազգայնացրեց նավթարդյունաբերության ձեռնարկությունները, Բաքվի պրոլետարիատի քրտնաջան աշխատանքի շնորհիվ միայն 3 ամսվա ընթացքում Սովետական Ռուսաստանի երիտասարդ Կարմիր բանակի քաղաքացիական կռիվների ճակատներում մարտնչող զորամասերին ուղարկվեց մոտ 80 միլիոն փութ նավթ։

Բանվոր դասակարգի և գյուղացիության հեղափոխական դաշինքի ամրապնդման գործում վճռական դեր խաղաց հողի ազգայնացումը։ Ժողկոմսովետի դեկրետով բեկերի ու խաների հողերը բռնագրավվում և հանձնվում էին աշխատավոր գյուղացիներին։ Մեծ ուշադրություն էր հատկացվում աշխատավորների նյութական, կենցաղային պայմանների բարելավմանը, ձեռնարկություններում և հիմնարկություններում սահմանվեց 8-ժամյա աշխատանքային օր, բարձրացվեց բանվորների և ծառայողների աշխատավարձը։

Բաքվի կոմունայի սոցիալիստական այս և մյուս վերափոխումները, որ իրականացվում էին հակահեղափոխական ուժերի դեմ մղվող դաժան պայքարի պայմաններում, արժանանում էին Վ. Ի. Լենինի հավանությանն ու խրախուսանքին։

1918 թվականին Ս. Շահումյանին ուղարկած իր բազմաթիվ նամակներում և հեռագրերում Իլյիչը քաջալերում էր կոմունարներին, օգնում միջազգային բարդ իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվելու և հմուտ քաղաքականություն վարելու։ Նշելով կոմունայի և նրա ղեկավար Ս. Գ. Շահումյանի եռանդուն գործունեությունը, ողջունելով Բաքվի պրոլետարիատի հեղափոխական ակտիվ պայքարը, Վ. Ի. Լենինը 1918 թվականի մայիսի 14-ին Շահումյանին ուղարկած նամակում գրել է.

> «Թ ա ն կ ա գ ի ն ը ն կ ե ր Շ ա հ ու մ յ ա ն! Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— մենք կհաղթենք։ Դժվարություններն անհաշիվ են։ Առայժմ մեզ փրկում են միայն իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը։ Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները, առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել։
>
> Լավագույն ողջույններ ու ցանկություններ և ողջույն բոլոր բարեկամներին։
>
> Ձեր՝ Լենին»։
>
> (В. И. Ленин. ПСС, М., 1965, т. 50, стр. 74—75).

Կոմունայի ղեկավարներն անում էին հնարավոր ամեն բան սովետական իշխանությունն ամրապնդելու, Կոմունան պահպանելու համար։ Ստեղծված բարդ ու խճճված պայմաններում անգամ, երբ թշնամու կրակի օղակը աստիճանաբար սեղմվում էր Բաքվի շուրջը, բոլշևիկներն անսահման հավատով էին լցված իրենց ուժերի, ռուս մեծ ժողովրդի նկատմամբ։ Շահումյանը արտահայտելով հերոս կոմունարների կամքը՝ այդ օրերին Վ. Ի. Լենինին վստահեցնում էր, թե՝ «մենք կայտառ ենք և հավատով լցուն», որ այսպիսի պայմաններում, երբ սպառված չեն հեղափոխական Ռուսաստանի ուժերը, մենք հաստատակամորեն պետք է շարունակենք պայքարը և հաղթանակով պսակենք Կոմունայի գործը։

Հեղափոխության փոթորկածինները եռանդ դարձած, խաղաղ շինարարության հետ միասին մարտնչում էին ռազմաճակատում և դասակարգային թեժ պայքարում։ Բաքվի բանվորների պարենային դրությունը չափազանց ծանր էր, քաղաքում թագավորում էր սովը։ Կոմունարները ռազմատնտեսական հեղափոխական կռիվ էին մղում։ Ժողկոմսովետն ամեն ինչ անում էր բնակչության մատակարարման գործը բարելավելու, կաշառակերությունն ու սպեկուլյացիան լիկվիդացնելու ուղղությամբ։

Բաքվի Ժողկոմսովետը մայիսի 9-ին դեկրետ ընդունեց պաշտոնատար անձանց կաշառակերության և չարակամների դեմ պայքարելու մասին։

> «Պաշտոնատար անձանց կաշառակերության ու չարարկումների հին խոցը տեղ-տեղ թափանցում է նոր հասարակական հիմնարկները, օգտվելով անցման ժամանակաշրջանից,— ասված է դեկրետում։ Հանցավոր տարրը Սովետական իշխանության կողմնակիցների դիմակի տակ շարունակում է իր քայքայիչ աշխատանքը և վարկաբեկում է բանվորական իշխանության նոր օրգաններին։ Բաքվի ժողովրդական կոմիսարների սովետը սրանով հայտարարում է, որ ինքն անողոք կերպով պատժելու է կաշառակերության և պաշտոնեական չարարկումների մեջ մերկացված բոլոր անձանց և կոչ է անում լայն աջակցություն ցույց տալ նրան հասարակական այդ խոցի դեմ պայքարելու գործում» (Ստ. Շահումյան, Երկեր, հատ. 3, էջ 168)։

Ս. Գ. Շահումյանը մայիսի 14-ին Վ. Ի. Լենինին գրած նամակում հայտնում է. Բաքվում պարենային հարցը սաստիկ դժվարացնում է մեր դրությունը, բանվորները քաղցի են մատնված։

Բաքվի Ժողկոմսովետը Վ. Ի. Լենինին խնդրում էր ռազմական և նյութական աջակցություն ցույց տալ։ Սովետական կառավարությունը ջանք չէր խնայում Բաքվին օգնելու համար։ Մայիսի 12—14-ը Ս. Գ. Շահումյանին գրած նամակում Ի. Վ. Ստալինը հարցնում էր.

> 1. «Ստացե՞լ եք արդյոք երկու միլիոնը Կամոյի միջոցով։
> 2. Ստացե՞լ եք վերջերս Ձեզ ուղարկած հարյուր միլիոնը։
> 3. Ստացե՞լ եք արդյոք Տեր-Պետրոսյանի և մի ռուս ընկերոջ (ազգանունը մոռացել եմ) միջոցով ծովային ճանապարհով ուղարկած ռազմամթերքը» (Տես ՍՄԿԿ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 40409)։
>
> Մայիսի 23-ին Վ. Ի. Լենինը հեռագրում է Ս. Գ. Շահումյանին թե՛ «Ժողկոմսովետը որոշեց՝ անհապաղ ջրային ճանապարհով Ցարիցինից Բաքու ուղարկել մեծ քանակությամբ հաց՝ Բաքվի սովետի տրամադրության տակ այն հաշվով, որպեսզի առաջին հերթին և անպայմանորեն ապահովվի նավթի հանույթը մեծ քանակությամբ» (տե՛ս Ստ. Շահումյան, Նամակներ, էջ 75)։

Հունիսի 10-ին Ս. Օրջոնիկիձեն Ցարիցինից Բաքվի կոմունայի ղեկավարներին հաղորդում է.

> «Վաղը ջրային ճանապարհով ուղարկում ենք տասը հազար փութ հացահատիկ։ Կարգադրված է անհապաղ մարշրուտային գնացքներ ուղարկել Ստավրոպոլի նահանգից և Թերեքի մարզից։ Ողջույն Բաքվի ընկերներին, որոնք հերոսական պայքար են մղում պրոլետարիատի բռնադատիչների և դավաճանների դեմ» (*«Бакинский рабочий», № 110, 11 июня, 1918*)։

Հուլիսի 19-ին Աստրախանից հայտնում են, որ Բաքվի համար ստացված է 180 վագոն բեռ, առաջիկա օրերին կուղարկվի 28 հազար փութ պահածո։ Ս. Գ. Շահումյանը հուլիսի 23-ին Վ. Ի. Լենինին գրած նամակում շնորհակալություն է հայտնում ցույց տրված օգնության համար։

> «Այսօր, վերջապես, եկավ Տեր-Գաբրիելյանը,— գրել է Շահումյանը,— և մեզ համար բերեց 4 զրահամեքենա, 13 օդանավ և ուրիշ շատ բաներ։ Այս բոլորի համար շատ և շատ շնորհակալություն Ձեզ։ Մենք ստացանք այն, ինչ մեզ պակասում էր և որը մեզ



> այժմ անգնահատելի ծառայություն է մատուցելու» (Ստ. Շահումյան, Նամակներ, էջ 106)։
>
> Հուլիսի 13-ին Վ. Ի. Լենինը Ծովային գործերի ժողկոմին կարգադրում է. «Բոլոր միջոցները ձեռք առնել հարմար տիպի բոլոր ծովային ռազմանավերը Կասպից ծով հասցնելու գործը արագացնելու համար» (*XXXIV Ленинский сборник, стр. 33*)։

Վ. Ի. Լենինը հաճախ է անձամբ ընդունել Բաքվի կոմունայի ներկայացուցիչներին, այդ թվում՝ Ս. Տեր-Գաբրիելյանին, Բ. Բորյանին, Ն. Կուզնեցովին, Կամոյին (Ս. Տեր-Պետրոսյանին), Սուրեն Շահումյանին և այլոց, ուշադիր լսել և հոգատարությամբ վերաբերվել նրանց պահանջներին։ Կոմունան Կենտրոնական ժողկոմսովետի, Վ. Ի. Լենինի հետ կապ էր պահպանում Աստրախանի, Տաշքենդի և Ցարիցինի վրայով։ Այն իր հերթին օգնություն էր ցույց տալիս Հյուսիսային Կովկասի, Դաղստանի և Միջին Ասիայի հեղափոխական ուժերին։

Բաքվի կոմունան, ուժերի խիստ անհավասար պայմաններում սոցիալիստական վերափոխումների հետ միասին, շարունակում էր հերոսական դիմադրությունը, վճռական ճակատամարտեր մղելով մուսավաթական «վայրենի դիվիզիայի», գերմանա-թուրքական զավթիչների, Իմամ-Գոցինսկու բանդաների և անգլիական իմպերիալիստների դեմ։ Կոմունայի զինված ուժերը հունիսի 10-ից հարձակման անցնելով կարճ ժամանակամիջոցում մեկը մյուսի հետևից ազատագրեցին Սալյանը, Շամախին, Քյուրդամիրը, Ղուբան և այլ վայրեր։ Ռազմաճակատում խիզախաբար մարտնչում էին կարմիր գվարդիականները, ինտերնացիոնալ բանակի ռազմիկները, որոնց մարտական գործողությունները ղեկավարում էին Գ. Կորգանովը, Գ. Պետրովը, Ի. Մալիգինը, Ա. Միկոյանը, Ֆ. Սոլնցևը, Ի. Գաբիշևը, Մ. Բասինը, Բ. Ավագյանը, Ար. Գուլոյանը, Գանինը, Հ. Սուլթանովը և ուրիշները։

Իր խիզախություններով աչքի էր ընկնում երրորդ բրիգադի կոմիսար Ա. Ի. Միկոյանը, որը կրակոտ քաղաքական աշխատանք էր կատարում զինվորների և աշխատավորների շրջանում, մերկացնում հակահեղափոխության որոգայթները։ Տոկունության և պրոլետարական հեղափոխության նվիրվածության օրինակ էր ծառայում Շահումյանի ընտանիքը, նրա կինը՝ Եկատերինա Շահումյանը, որդիները՝ Սուրեն և Լևոն Շահումյանները*։ Հաճախ կրակի առաջին գիծն էր մեկնում Ս. Գ. Շահումյանը։ Հուլիսին նա մի քանի անգամ եղավ Հաջիկաբուլի ռազմաճակատում և Գ. Կորգանովի հետ միասին մարտական խնդիր տվեց ճակատայիններին՝ քաղաքի պաշտպանությունն ամրապնդելու, թուրքական արշավանքը կասեցնելու համար։

Բաքվի կոմունային մեծ օգնություն հանդիսացավ նաև Սարդարապատի հերոսամարտը, ուր հայ աշխարհազորայինները, արևմտահայ ազատագրական շարժման մասնակցած հին ու նոր պարտիզանները, երիտասարդ սպարտակյաններն ու կոմունիստները, ռուս և այլ ազգի զինվորների հետ արիաբար մարտնչում էին թուրքական զավթիչների դեմ։ Հինավուրց հայկական հողի վրա, Արարատյան դաշտավայրում, Կովկաս ներխուժող թուրքական բանակը գլխովին ջարդվեց և խուճապահար նահանջի դիմեց։

Հայ աշխարհազորայինները Ղարաքիլիսայի, Բաշ Ապարանի, Ղափանի և այլ ճակատամարտերում տարած հաղթանակով ոչ միայն հայ ժողովրդին փրկեցին թուրքական զավթիչների նոր աղետներից, այլև իրական օգնություն

* Տե՛ս «Юность» ժուռնալի 1967 թվականի № 11 և 12, 1968 թվականի № 1, 2, 5, 6-ում հրատարակված Ա. Ի. Միկոյանի հուշերը։

ցույց տվին Բաքվի կոմունարներին՝ պատնեշելով թուրքական ուժերի ներխուժումը Կովկաս:

Կոմունայի համար ստեղծված ծանր պահին Անդրանիկը (Անդրանիկ Թորոսի Օզանյան) պատրաստակամություն է հայտնում իր զորամասով կապ հաստատել Բաքվի սովետական իշխանության հետ: Հուլիսի 14-ին Ջուլֆայից նա ռադիոգիր է ուղարկում Շահումյանին, ուր ասված էր.

«Անառարկելիորեն ենթարկվելով Բրեստ-Լիտովսկու պայմանագրին, Նախիջևանի գավառը, որտեղ այժմ գտնվում եմ իմ ջոկատով, հայտարարել եմ ռուսական պետության անբաժան մաս:

Խնդրում եմ հայտնել ում որ հարկն է, որ ես իմ ջոկատով այսօրվանից գտնվում եմ Ռուսաստանի կենտրոնական կառավարության տրամադրության տակ և ենթարկվում եմ նրան: Կաշխատեմ արգելակել զորքերի մուտքը Նախիջևանի գավառը:

Սպասում եմ պատասխանի և կարգադրության:

Գեներալ-մայոր Անդրանիկ:

(Տե՛ս «Бакинский рабочий», № 139, 255, 18 июля, 1918).

Բաքվի կոմունայի ղեկավարությունը ջերմորեն է ընդունում Անդրանիկի ռադիոգիրը: Բաքվի ժողկոմսովետի հանձնարարությամբ Ս. Գ. Շահումյանը պատասխանում է.

«Ջուլֆա, ժողովրդական առաջնորդ Անդրանիկին:

Ձեր հեռագիրն ստացա:

Լրիվ տեքստը հաղորդեցի Մոսկվա, Կենտրոնական կառավարությանը: Իմ կողմից հանձին Ձեզ ողջունում եմ իսկական ժողովրդական հերոսին: Եթե պարոնայք Քաջազնունին և մյուսները Ձեզ նման լինեին, հայ գյուղացիությունն այժմ այսպիսի ողբերգություն չէր ապրի: Ողջույն հաղորդեցեք Ձեր դրոշի ներքո կռվող բոլոր քաջ զինվորներին և ամբողջ աշխատավոր բնակչությանը, որը կրկնակի տառապում է թե՛ թուրքական ավերումներից և թե ազգային առաջնորդների դավաճանությունից: Չնայելով ոչ մի դժվարությունների, կոչ եմ անում Ձեզ չիջեցնել հեղափոխական դրոշակը: Բաքվի պրոլետարիատը Ռուսաստանի իշխանության ուժգին աջակցությամբ հերոսական պատերազմ է մղում բեկական բանդաների դեմ՝ Քյուրդամիրի և Աղսուի ուղղությամբ:

Երբ մենք հաղթենք թուրքերին, խաներին ու բեկերին, վրացական իշխաններին ու հայ բուրժուազիային, այն ժամանակ ամբողջ Անդրկովկասի միավորված գյուղացիները և բանվորներն իրենց ընդհանուր համագումարում կհաստատեն Սովետական իշխանություն և նորից կկապվեն Ռուսաստանի մեծ հեղափոխության հետ: Ուրախ կլինեի Ձեզ անհրաժեշտ աջակցություն ցույց տալու հնարավորության համար: Թերևս դուք ուղիներ գտնեք կապի համար:

Կովկասի Արտակարգ կոմիսար և ժողովրդական Կոմիսարների Բաքվի սովետի նախագահ՝

Ստ. ՇԱՀՈՒՄՅԱՆ

(«Бакинский рабочий», № 141, 20 июля 1918).

Ս. Գ. Շահումյանը հուլիսի 17-ին Անդրանիկի ռադիոգիրը ուղարկել է Մոսկվա՝ Վ. Ի. Լենինին, հետևյալ հավելագրմամբ. «Իմ կողմից պատասխանել եմ՝ ողջունում եմ և առաջարկում եմ հաստատ կանգնել:

Խնդրում եմ Ձեր պատասխանը» (ЦГАОР СССР, ф. 130, оп. 2, д. 569, л. 11 об).

Ս. Գ. Շահումյանի հեռագիրը Մոսկվայում ստացվել է հուլիսի 21-ին: Դժբախտաբար Բաքվում դեպքերն այնպես ընթացան, որ Անդրանիկը հնարավորություն չունեցավ օգնության հասնելու կոմունային:

Այդ օրերին Բաքվի կոմունային օգնության են հասնում Հյուսիսային Կովկասում գտնվող մի մեծ խումբ արևմտահայեր: Ս. Գ. Շահումյանը հունիսի 28-ին Ի. Վ. Ստալինին գրել է.



«Սույնը ներկայացնողը՝ Տիգրան Ղազանչյանը (Պերճ Մուշեղյանը,—Խ. Բ.) անձամբ ինձ հայտնի հին հնչակյան է: Նա եկել է այստեղ, և իմիջիայլոց, պատմում է, որ իրեն ընկերներից 500 հոգի, որոնք զինաթափվել էին Թիֆլիսում, գտնվում են Հյուսիսային Կովկասում և պատրաստակամություն են հայտնում կրկին զենք վերցնել և լինել մեր տրամադրության տակ: Ես նրան խոստացա Ձեր անունով նամակ տալ, որպեսզի դու տեղում որևէ մեկին հանձնարարես ստուգելու բոլոր հանգամանքները և եթե նրանք մեզ օգտակար լինեն, նրանց աջակցություն ցույց տալ, մտցնել մեր ջոկատների մեջ, մի բան, որը և ես կանեմ» (ЦГАСА, ф. 193, оп. 1, д. 87, л. 17):

Տիգրան Ղազանչյանն իր 24-րդ գումարտակով հուլիսին Բաքվի հեղափոխական պաշտպանության դիրքերում էր:

Ս. Գ. Շահումյանը, առաջնորդվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, օգտագործում էր իմպերիալիստական տերությունների, ինչպես և ներքին հակահեղափոխական ուժերի միջև եղած հակասություններն ու կոնֆլիկտները: Կռիվներում և ապա հետագա մարտական գործողությունների ընթացքում ձախ էսեռների, հայկական ազգային ուժերի օգտագործումը Բաքվի կոմունայի վարած ճիշտ տակտիկայի արդյունք էր: Կոմունայի ղեկավարությանը միանգամայն պարզ էր, որ հիշատակված ուժերը հեղափոխության մշտական ուղեկիցներ չեն, բայց ստեղծված ռազմա-քաղաքական վիճակը պահանջում էր հեռատես դիվանագիտություն: Հատկապես Բաքվի պայմաններում դա խիստ անհրաժեշտ էր, քանի որ կոմունան շրջապատված էր թշնամական մեծ ուժերով: Ավելացնենք նաև, որ հայկական ազգային զինված ուժերի շարքերում կային ոչ քիչ թվով աշխատավորներ, որոնք տոգորված էին հայրենիքի ազատագրության գաղափարով: Ս. Գ. Շահումյանը հուլիսի 23-ին Աստրախանի վրայով Վ. Ի. Լենինին տրված հեռագրում ռազմական ուժ խնդրելով, նշում է.

«Մեր զորքերի գլխավոր կոնտինգենտը—սկզբում քաջաբար կռվող հայկական զորամասերը բարոյալքված են հրամանատարական կազմի մի մասի վախկոտության և անգլիական ագիտացիայի հետևանքով» (Ստ. Շահումյան, Նամակներ, էջ 131):

Մայիսի 29-ին հանդես գալով Բաքվի սովետում Շահումյանը նշում էր, որ երկրամասում կար հսկայական զինված ուժ, բայց դաշնակցությունը մենշևիկների ու մուսավաթիստների հետ միասին այլասերեց ու կազմալուծեց զորքերի շարքերը, ոչ թե այն զորքերի, որոնք երեք տարվա պատերազմից հետո ծարավի էին հաշտության, այլ այն հայկական զորքերի, որոնք պատրաստ էին մեռնել ու պահել իրենց երկիրը: Կոմունայի համար ստեղծված վտանգի ծանր պահին Համազասպը լքեց ռազմաճակատը և այդպիսով տեղի տվեց թուրքական արշավանքի առջև:

Կոմունայի համար ստեղծված դժվարին պայմաններում էսեռները, մենշևիկները, դաշնակները և հակաբոլշևիկյան մյուս տարրերը գլուխները կորցրած պահանջեցին Բաքու հրավիրել անգլիացիներին: Կոմունայի ղեկավարները հետևողականորեն վարելով լենինյան գիծ, մերժեցին նրանց կործանարար քաղաքականությունը: Բայց համաձայնողական կուսակցությունների քաղաքականության հետևանքով Բաքվի սովետը, որ կանգնած էր կրկնակի դավաճանության փաստի առջև, հուլիսի 25-ին, ձայների աննշան տարբերությամբ՝ 259-ն ընդդեմ 236-ի, որոշեց անգլիացիներին հրավիրել Բաքու: Միայն բոլշևիկներն էին, որ Շահումյանի գլխավորությամբ մինչև վերջ վարելով ինտերնացիոնալիստական քաղաքականություն, պաշտպանում էին իրենց դիրքերը, մերկացնում պրոլետարիատի շահերը վաճառողներին:

Վ. Ի. Լենինը, հավանություն տալով անգլիացիների նկատմամբ Բաքվի բոլշևիկների վարած քաղաքականությանը, 1918 թ. օգոստոսի 29-ին ասել է.

> «Անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կնքելուց վճռականորեն հրաժարվելը Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է, քանի որ նրանց կարելի է հրավիրել, առանց ինքնուրույն, սոցիալիստական իշխանությանը, թեկուզ և կտրված տերիտորիայում, վերածելու իմպերիալիստական պատերազմի սարույկի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 9):

1918 թվականի հուլիսի 31-ին Բաքվի կոմունան ժամանակավորապես ընկավ: Իշխանությունն անցավ էսեռա-դաշնակցական-մենշևիկյան այսպես կոչված «Ցենտրոկասպիայի դիկտատուրայի» ձեռքը: Բաքվի քաջարի կոմիսարները ձերբակալվեցին: Կասպիական ռազմական նավատորմիղի կոմիսար Վ. Պոլուխինը Բաքվի դրության մասին օգոստոսի 1-ին հեռագրել է ՌՍՖՍՀ ծովային գործերի ժողկոմատի կոլեգիայի անդամ Ս. Ե. Սաքսին.

> «Թուրքերը Բաքվից 5 վերստի վրա են,— ասում է Պոլուխինը: Ժողկոմսովետը ցած է դրել լիազորությունները: Շահումյանը, Տեր-Գաբրիելյանը, Պետրովը իր ջոկատով և ես էշալոնով ձերբակալված ենք» (ЦГАВМФ, ф. 5, оп 1, д. 124. л. 26):

Վ. Ի. Լենինն օգոստոսի 9-ին Աստրախանի սովդեպի նախագահին ուղարկած հեռագրում անհանգստացած պահանջում էր պարզել Բաքվի դրությունը. իմանալ թե որտեղ է Շահումյանը:

> «Դրությունը Բաքվում ինձ համար, այնուամենայնիվ, պարզ չէ:
> Ո՞վ է կանգնած իշխանության գլուխ:
> Որտե՞ղ է Շահումյանը:
> Հարցում արեք Ստալինին և Գործեցեք բոլոր հանգամանքները նկատի առնելով.
> դուք գիտեք, որ ես լիովին վստահում եմ Շահումյանին:
> Այստեղից չի կարելի հասկանալ դրությունը և արագ օգնելու հնարավորություն չկա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 380):

Սեպտեմբերի 14-ին կոմունիստական ջոկատը (Ա. Միկոյան, Արտակ Ստամբուլցյան, Ս. Աղամիրյան, Սուրեն Շահումյան) բանտից ազատում է Բաքվի կոմիսարներին՝ Շահումյանի գլխավորությամբ: Նույն օրը Բաքվի բոլշևիկյան կոնֆերանսի որոշմամբ նրանք ծովով ուղևորվում են Սովետական ուժերը: Սեպտեմբերի 17-ին անգլիական իմպերիալիստների հրամացիների և նրանց գործակալների պահանջով նավի ուղղությունը փոխում է Կրասնավոդսկ, որտեղ տեր ու տնօրինություն էին անում հակահեղափոխական ուժերը: Սեպտեմբերի 17-ին անգլիական իմպերիալիստների հրամանով աջ էսեռները ձերբակալում են Բաքվի կոմիսարներին և տանում Կրասնավոդսկի բանտը:

Սեպտեմբերի 19-ին ՌՍՖՍՀ արտաքին գործերի ժողկոմ Չիչերինը Նիդերլանդների դեսպանորդին հղած նոտայում վճռականորեն բողոքում է.

> «Բաքուն էվակուացնելիս, անգլիացիները իրենց հետ տարել են Բաքվի սովետական կառավարության նախկին անդամներ Շահումյանին, Ջափարիձեին, գլխավոր հրամանատար Պետրովին և ուրիշների: Վճռականորեն բողոքում եմ: Պահանջում եմ վերադարձնել նրանց» (Документы Внешней политики СССР. М., том. I, стр. 489)

Բաքվի կոմունարների ճակատագիրը անհանգստություն էր պատճառում Վ. Ի. Լենինին:

Անգլիական ինտերվենտները և նրանց էսեռա-մենշևիկյան գործակալները տմարդի կերպով դատաստան տեսան Բաքվի պրոլետարիատի լավագույն ղեկավարների հետ: 1918 թ. սեպտեմբերի 20-ին էսեռական «Գոլոս սրեդնեյ Ազիի» թերթը գրել է, թե իրենց ձեռքն է ընկել Շահումյանը, որին



վաղուց արդեն մկրտել են «Կովկասի Լենին» անունով, թե Բաքվի կոմիսարները ենթարկվելու են ամենասոսկալի խոշտանգումների և «քառատման»: Նույն օրը երեկոյան, Կրասնովոդսկ-Աշխաբադ երկաթուղու 207-րդ վերստի վրա, Ախչա-Կույմա և Պերևալ կայարանների միջև, Անդրկասպիայի ամայի ավազուտներում, ստոր մարդասպանների ձեռքով ընկան պրոլետարական հեղափոխության անվեհեր մարտիկները: Բոցաշունչ կոմիսարները մահից առաջ բացականչում են. «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար: Կեցցե՜ կոմունիզմը»:

50 տարի է անցել Բաքվի կոմիսարների կոմունիզմի անձնվեր մարտիկների ողբերգական մահից: Նրանց թափած արյունն իզուր չանցավ: Տեռորն ու վայրի կամայականությունները, օտարերկրյա զավթիչների ասպատակությունները, նրանց սվինների վրա հենված բուրժուա-նացիոնալիստական, հակաժողովրդական կառավարությունների մռայլ տիրապետությունը երկար չտևեց: Ադրբեջանում, Հայաստանում, Վրաստանում ծածանվեց մեծ Հոկտեմբերի հաղթական դրոշը: 1920 թվականին Բաքու փոխադրվեցին 26 կոմունարների աճյունները և թաղվեցին քաղաքի կենտրոնում՝ Ազատության հրապարակում: Կասպիական ափերին, կանաչ ու մշտադալար պուրակում հանգչում են Բաքվի պրոլետարիատի 26 անձնվեր և անմոռաց զավակների շիրիմները... Նրանց վրա բոցկլտում է եղբայրության հավերժ կրակը:

Հերոսներն անմա՜հ են: Սովետական ժողովուրդը միշտ վառ է պահել և հավերժ կպահի հեղափոխության մարտերում զոհված իր զավակների՝ Բաքվի 26 կոմունարների լուսապայծառ հիշատակը: Այն հերոս կոմունարների, որոնց անունները ապրում են կոմունիստական շինարարության կոնկրետ գործերում, կոմունիզմ կառուցող մարդկանց սրտերում:

ՄԻՐԶՈՅԱՆ Լ. Վ.

# ՄԵԾ ԳԻՏՆԱԿԱՆՆ ՈՒ ՔԱՂԱՔԱՑԻՆ

## (ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Շատ առեղծվածներ է առաջադրում մարդկությանը աստղային երկինքը: Դժվարին է աստղագիտությունը՝ երկնային մարմինների կառուցվածքի, շարժման ու վարգացման վերաբերյալ գիտությունը: Քչերը միայն կարող են հասնել այդ գիտության գագաթներին և վնելով բացվող հորիզոնները նոր ճշմարտություններ պարզևել աշխարհին: Այդ քչերի թվին է պատկանում Վիկտոր Համազասպի Համբարձումյանը՝ մեր երկրի մեծագույն աստրոֆիզիկոսը:

ՎԻԿՏՈՐ ՍՈԲՈԼԵՎ

*Անհնար է, թերևս, սրանից ավելի դիպուկ բնութագրել ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանի տեղը ժամանակակից աստղագիտության մեջ: Մնում է միայն նշել, որ այս բնութագիրը սովետական նշանավոր աստղագետ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Սոբոլևը տվել է այն ժամանակ, երբ Համբարձումյանը դեռ չէր բոլորել իր կյանքի հիսուն տարին: Իսկ այսօր Վիկտոր Համբարձումյանը վաթսուն տարեկան է: Բերված խոսքերը գրվելուց հետո անցած մոտ տասնհինգ տարում Համբարձումյանն ապրել է ստեղծագործական ուժերի բուռն ծաղկում, գիտությունը հարստացրել նոր, սկզբունքային նշանակություն ունեցող արմատական արդյունքներով:*

*Հենց այդ շրջանի աշխատանքներն են, որ աշխարհահռչակ գիտնական, Միջազգային աստղագիտական միության նախկին պրեզիդենտ, Լեյդենի աստղադիտարանի (Հոլանդիա) դիրեկտոր Յան Օորտին հիմք են տվել գրելու, որ վերջին հիսուն տարում «Աստղագիտության մեջ սովետական գիտնականների ամենակարևոր ներդրումն ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի հետազոտություններն են՝ գալակտիկաների էվոլյուցիայում նրանց կորիզների դերի մասին... Նույնքան կարևոր են նրա գաղափարները լայնացող աստղասփյուռներում աստղերի ծննդի վերաբերյալ»:*

* * *

*Ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը ծնվել է 1908 թ. սեպտեմբերի 18-ին, Թիֆլիսում: Նրա հայրը՝ Համազասպ Ասատուրի Համբարձումյանը (1880—1965), բանասերգեղարվեստ էր, իսկ մայրը՝ Հռիփսիմե Սահակի Խախանյանը (ծնվ. 1885 թ.) Ծղինվալի գյուղից (Վրացական ՍՍՀ): Ապագա գիտնա-*





կանի հայրը շատ վաղ հասկացավ որդու արտակարգ ընդունակությունները բնական գիտությունների ասպարեզում և ինքը լինելով բազմակողմանի զարգացած ու զարմանալի եռանդի տեր անձնավորություն, սկզբից ևեթ կարողացավ ճիշտ հունի մեջ դնել նրա դաստիարակությունը:

Դեռ աշակերտական նստարանից Վիկտոր Համբարձումյանը լրջորեն զբաղվում է աստղագիտությամբ և տեսական ֆիզիկայով: Նա հատկապես հրապուրվում է Ալբերտ Էյնշտեյնի ստեղծած հարաբերականության տեսությամբ: Ժամանակակիցների վկայությամբ դեռ աշակերտ Համբարձումյանի՝ այդ տեսությանը նվիրված հրապարակային դասախոսությունները Երևանում և Թիֆլիսում ունկնդիրներին զարմացնում էին իրենց խորությամբ և ձևակերպումների հստակությամբ: Աշակերտական տարիներին են վերաբերում գիտական հետազոտությունների նրա առաջին փորձերը:

1924 թ., տասնվեց տարեկան հասակում Վ. Համբարձումյանը սկսում է իր ուսումնառությունը Լենինգրադում, մանկավարժական ինստիտուտի ֆիզիկա-մաթեմատիկական ֆակուլտետում, իսկ մեկ տարի անց այն շարունակում է Լենինգրադի համալսարանում: Այստեղ նա ուսման հետ միասին սիստեմատիկորեն զբաղվում է հետազոտական աշխատանքով:

1926 թ. գերմանական «Astronomische Nachrichten» գիտական հանդեսում հրապարակվում է Վ. Համբարձումյանի առաջին աշխատությունը:

Լենինգրադի համալսարանն ավարտելուց հետո, 1928 թ. Վ. Համբարձումյանն ընդունվում է Պուլկովյան նշանավոր աստղադիտարանի ասպիրանտուրան և ռուս նշանավոր աստրոֆիզիկոս Ա. Ա. Բելոպոլսկու ղեկավարությամբ սկսում խորանալ աստրոֆիզիկայի մեջ: Այդ մի ժամանակաշրջան էր, երբ ատոմի ժամանակակից տեսության առաջացումն ստեղծել էր անհրաժեշտ նախադրյալներ դեռևս շատ երիտասարդ տեսական աստրոֆիզիկայի բուռն ծաղկման համար: Վ. Համբարձումյանը դարձավ Սովետական Միության առաջին տեսաբան-աստրոֆիզիկոսը:

1931 թ. ասպիրանտուրան փայլուն ավարտելուց հետո, Վ. Համբարձումյանը հրավիրվում է աշխատանքի Լենինգրադի համալսարան, որտեղ Սովետական Միությունում առաջին անգամ նա մշակում և ներմուծում է տեսական աստրոֆիզիկայի համալսարանական դասընթացը: 1934 թ. Վ. Համբարձումյանն ստեղծում է Լենինգրադի համալսարանի աստրոֆիզիկայի ամբիոնը և երկար տարիներ ղեկավարում այն: Նրա գործունեության լենինգրադյան շրջանը շատ բեղմնավոր է եղել նաև գիտական տեսակետից:

1932 թ. անգլիական Թագավորական ընկերության ամսագրում Վ. Համբարձումյանի հրապարակած Մոլորակաձև միգամածությունների ճառագայթային հավասարակշռության մասին աշխատությունը գազային միգամածությունների ժամանակակից տեսության անկյունաքարն է, որով սկիզբ է դրվում այդ միգամածությունների ֆիզիկայի հարցերին նվիրված հետազոտությունների հանրահայտ շարքին: 1936 թ. Վ. Համբարձումյանը մշակեց աստղերի տեսագծային արագություններով[1] նրանց տարածական արագությունների բաշխման որոշման ընդհանուր տեսությունը: Աստղագիտության մեջ գիտական խոշոր ներդրում էր աստղային համակարգերի համար նրա մշակած նոր, հատուկ ֆիզիկական վիճակագրությունը, որը հանգեցրեց ա-

---

1 Տեսագծային արագություն—մոտենալու կամ հեռանալու արագությունն է, որը որոշվում է սպեկտրալ դիտումներից՝ Դոպլերի հայտնի սկզբունքի հիման վրա:

տըղային համակարգերի վիճակագրական մեխանիկայի հիմունքների ստեղծմանը։

1935—37 թթ. է վերաբերում Վ. Համբարձումյանի գիտական բանավեճը անգլիական նշանավոր գիտնական Ջինսի հետ՝ մեր աստղային համակարգության—Գալակտիկայի ներկա տարիքի մասին։ Վ. Համբարձումյանն ապացուցեց, որ այն չի անցնում 10 միլիարդ տարուց, այսինքն՝ գրեթե հազար անգամ ավելի փոքր է այն գնահատականից, որ Ջինսի հաշվումների հիման վրա անվերապահորեն ընդունված էր գիտնականների կողմից և որի վրա պնդում էր Ջինսը։ Այդ կարևոր եզրակացությունը հաստատվեց հետագա հետազոտություններով և լրիվ ճանաչում ստացավ գիտության մեջ։

Վ. Համբարձումյանի հետազոտությունները ժամանակին ըստ արժանվույն գնահատվեցին։ 1934 թ. նրան շնորհվեց պրոֆեսորի կոչում, 1935 թ. առանց դիսերտացիայի պաշտպանության՝ ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտորի գիտական աստիճան, իսկ 1939 թ. նա ընտրվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ։

Վ. Համբարձումյանի աշխատությունների մի այլ, ստվար շարք նվիրված է միջաստղային նյութի ուսումնասիրությանը։ Իր աշակերտ Շ. Գորդելաձեի հետ համատեղ կատարած մի աշխատության մեջ նա ցույց տվեց, որ Գալակտիկայում լույսի կլանման երևույթը պայմանավորված է նրա ներսում բազմաթիվ փոշային միգամածությունների (ամպերի) առկայությամբ։ Միջաստղային կլանող միջավայրի այդպիսի պատառաձև կառուցվածքի վերաբերյալ պատկերացումը, որը հակասում էր մինչև այդ ընդունված անընդհատ բաշխված կլանող նյութի պատկերացմանը, լիովին հաստատվեց Վ. Համբարձումյանի և այլ հետազոտողների հետագա աշխատություններով։

Շուտով Վ. Համբարձումյանը մշակեց ֆլուկտուացիաների տեսությունը[1], որը հնարավորություն ընձեռեց որոշելու միջաստղային կլանող ամպերի հիմնական հատկանիշները, կարևոր դեր խաղաց կլանող ամպերի կառուցվածքի ու հատկությունների ուսումնասիրության գործում և աստղաբաշխության մեջ ստեղծեց մի նոր ուղղություն։

Հայրենական մեծ պատերազմը չընդհատեց Վ. Համբարձումյանի գիտական և կազմակերպական գործունեությունը։ 1941 թ. նա նշանակվում է Լենինգրադի պետական համալսարանի ֆիլիալի պետ Ելաբուգա քաղաքում (Թաթարական ՍՍՀ)։ Այստեղ, այդ ծանր օրերին, համալսարանի էվակուացված գիտական լաբորատորիաներում Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ կատարվում են պաշտպանական ու տնտեսական նշանակություն ունեցող մի շարք կարևոր հետազոտություններ։ Այդ տարիներին Վ. Համբարձումյանի մշակած լույսի ցրման յուրօրինակ տեսությունը խոշոր ավանդ հանդիսացավ գիտության մեջ, իսկ նրա առաջարկած ինվարիանտության սկզբունքը[2] մի հզոր միջոց՝ ֆիզիկայի, աստրոֆիզիկայի և գեոֆիզիկայի մի ամբողջ շարք խնդիրների լուծման համար։ Լույսի ցրման այդ նոր տեսությունը 1946 թ. արժանացավ պետական մրցանակի։

1943 թ. Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ստեղծումը շրջադարձային դեր խաղաց նաև Վ. Համբարձումյանի կյանքում։ Նա նորաստեղծ ակադեմիայի հիմնադիր անդամներից էր, ընտրվում է ակադեմիայի վիցե-

1 Ֆլուկտուացիա—շեղում միջին արժեքից։

2 Ինվարիանտ—չփոփոխվող։



պրեզիդենտ և շուտով մշտական բնակություն հաստատում Երևանում։ Այդ պահից նրա գործունեությունն ամբողջովին կապվում է մեր հանրապետության գիտական մտքի կենտրոնի և նրա աստղադիտարանի հետ։

1946 թ. Վ. Հ. Համբարձումյանի նախաձեռնությամբ սկսվում է Բյուրականի աստրոֆիզիկական դիտարանի (աստղադիտարանի) շինարարությունը։ Այստեղ իր աշակերտներից կազմված մի փոքր խմբի հետ նա սկսում է իր գիտական կյանքի նոր, արտակարգ բեղմնավոր շրջանը։

Այդ տարիներին Վ. Համբարձումյանն զբաղվում է աստղերի և աստղային համակարգերի վերաբերյալ աշխարհի տարբեր աստղադիտարաններում կուտակված հարուստ դիտողական նյութի տեսական վերլուծությամբ և ընդհանրացմամբ։ Այդ աշխատանքը, որը նա սկսել էր մոտ տասը տարի առաջ Լենինգրադում, 1947 թ. պսակվեց Գալակտիկայում նոր տիպի աստղային համակարգերի՝ աստղասփյուռների հայտնագործությամբ։ Աստղասփյուռների հայտնագործման և ուսումնասիրության համար Վ. Համբարձումյանն իր աշակերտ Բ. Ե. Մարգարյանի հետ միասին արժանացավ պետական մրցանակի։

1947 թ. Վ. Համբարձումյանն ընտրվում է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ և մինչև օրս հաջողությամբ ղեկավարում մեր հանրապետության գիտության կազմակերպման, պլանավորման ու զարգացման գործը։ Չնայած իր խիստ ծանրաբեռնվածությանը, գիտությունների ակադեմիայում նա նպատակասլաց և հետևողականորեն շարունակում է գիտական աշխատանքը։

1950-ական թվականներին նա ավարտում է աստղասփյուռների կազմում դիտվող T Ցուլի տիպի[1], ինչպես նաև նրանց հարող որոշ աստղերի ֆիզիկական ուսումնասիրությանը նվիրված աշխատությունների շարքը, որը պարունակում է սկզբունքային տեսակետից կարևոր արդյունքներ՝ աստղային էներգիայի աղբյուրների բնույթի վերաբերյալ։

Աստղասփյուռների ուսումնասիրությունը Վ. Համբարձումյանին բերեց այն արմատական վարկածին, որ աստղերը ձևավորվում են գիտության առայժմ անհայտ բնույթի զանգվածային մարմինների տրոհման հետևանքով, որոնք պետք է օժտված լինեն նյութի շատ բարձր խտությամբ։ Այդ կապակցությամբ Վ. Համբարձումյանի և Գ. Ս. Սահակյանի մի շարք համատեղ աշխատանքներում մշակվեց նյութի գերխիտ գոյաձևերի՝ բարիոնային աստղերի[2] տեսությունը։

Աստղերի և աստղային համակարգերի առաջացման ու զարգացման, նախաստղային նյութի բնույթի վերաբերյալ աստղասփյուռների տեսության մեջ մշակած պատկերացումներն իրենց տրամաբանական զարգացումն ստացան Վ. Համբարձումյանի՝ գալակտիկաների էվոլյուցիայի պրոբլեմին նվիրված հետազոտություններում։

Վ. Համբարձումյանի գործունեության բյուրականյան շրջանն արտասովոր հարուստ է նրա գիտական ծառայությունների բարձր գնահատության վկայություններով։ Գիտության զարգացման գործում աչքի ընկնող ծառայությունների

1 T Ցուլի—սա պայծառ աստղերի անվանման ընդունված ձև է և նշանակում է Ցուլի համաստեղության «T» աստղը։ T Ցուլի տիպի աստղերը սառը, թզուկ աստղեր են, որոնց պայծառությունը ֆիզիկական անկայունության հետևանքով անկանոն փոփոխվում են։

2 Բարիոններ ընդհանուր անունն են կրում պրոտոնները, նեյտրոնները և տարբեր տիպի հիպերոնները։ Բարիոնները հայտնի ամենածանր տարրական մասնիկներն են։

համար նա պարգևատրվել է Լենինի երկու և Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշաններով։ Նրա հետազոտություններն երկու անգամ (1946, 1950) արժանացել են ՍՍՀՄ Պետական մրցանակների. 1953 թ. նա ընտրվել է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, իսկ 1955-ին նաև նույն ակադեմիայի նախագահության անդամ։

Վ. Հ. Համբարձումյանի գիտական ծառայությունները համընդհանուր ճանաչում են ստացել և բարձր գնահատվել նաև արտասահմանում. նա ընտրվել է ԱՄՆ-ի, Ավստրիայի, Բելգիայի, Գերմանական (Բեռլին), Իտալիայի և Ֆրանսիայի գիտությունների ակադեմիաների օտարերկրյա անդամ, Արվեստների ու գիտությունների ամերիկյան (Բոստոն) և բնական գիտությունների Հալլեի (ԳԴՀ) ակադեմիաների, ամերիկյան, անգլիական թագավորական և Կանադայի թագավորական աստղագիտական ընկերությունների պատվավոր անդամ, Ավստրալիական ազգային (Կանբերրա), Լյեժի (Բելգիա), Պրագայի և Սորբոնի (Փարիզի) համալսարանների պատվավոր դոկտոր։ Նրան շնորհվել են անգլիական թագավորական, Խաղաղօվկիանոսյան աստղագիտական ընկերությունների ոսկե մեդալները և ֆրանսիական աստղագիտական ընկերության՝ Ժանսենի անվան մեդալ։ 1948—1955 թթ. նա եղել է Միջազգային աստղագիտական միության վիցե-պրեզիդենտը, իսկ 1961—64 թթ. այդ Միության պրեզիդենտը։

* * *

> Մենք այժմ ապրում ենք խոշորագույն աստղագիտական հայտնագործությունների դարաշրջանում... այնպիսի հայտնագործությունների, որոնց ժամանակ բացահայտվում են սկզբունքային նոր երևույթներ:
>
> ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վ. Համբարձումյանի կարևորագույն հետազոտությունների շարադրանքը դուրս է գալիս ներկա հոդվածի սահմաններից։ Մենք այստեղ, կսահմանափակվենք միայն արմատական նշանակություն ունեցող այն արդյունքներով, որոնք վերաբերում են աստղասփյուռներին ու գալակտիկաների կորիզների ակտիվությանը և Յան Օորտի կարծիքով, «աստղագիտության մեջ սովետական գիտնականների ամենակարևոր ներդրումն են»։

Դեռևս իր գործունեության առաջին շրջանում Վ. Համբարձումյանին հաջողվեց հայտնաբերել աստղերի և աստղային համակարգերի վիճակներում տեղի ունեցող զգալի փոփոխությունների առաջին նշանները։

Աստղերի անկայուն, ներկայումս քայքայվող խմբերի՝ աստղասփյուռների հայտնագործումից հետո նրանց վերաբերող դիտողական տվյալների վերլուծության հիման վրա Վ. Համբարձումյանը գիտության պատմության մեջ առաջին անգամ ցույց տվեց, որ մեր աստղային համակարգության՝ Գալակտիկայի կազմում Արեգակի նման ծեր (մի քանի միլիարդ տարեկան) աստղերի հետ միասին կան բազմաթիվ հարյուրավոր, հազարավոր անգամ ավելի երիտասարդ աստղեր։ Այդ փաստից անմիջականորեն բխում է գիտական և փիլիսոփայական մեծ նշանակություն ունեցող այն եզրակացությունը, որ միլիարդավոր տարիներ առաջ Գալակտիկայում սկսված աստղառաջացման երևույթները ներկայումս շարունակվում են, իսկ աստղասփյուռները հենց այն օջախներն են, որտեղ ձևավորվում են աստղերը։

Չափազանց կարևոր է նաև այն եզրակացությունը, որ աստղերն աստ-



ղասփյուռներում ձևավորվում են խմբերով՝ ընտանիքներով, որոնցից շատերը կարճ ժամանակում քայքայվում են։ Մասնավորապես, այս եզրակացությունը կարող է հիմք ծառայել Արեգակի ընտանիքի՝ մեր մոլորակային համակարգության առաջացումը բացատրելու համար։

Այս արդյունքները հնարավորություն տվեցին աստղերի առաջացման ու զարգացման պրոբլեմի ուսումնասիրությունը դնելու լուրջ գիտական հիմքերի վրա, որի շնորհիվ աստղասփյուռների՝ Վ. Համբարձումյանի մշակած տեսությունը դարձել է հիմնաքար աստղերի և դրանց համակարգերի առաջացման ու զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությանը նվիրված ժամանակակից բոլոր հետազոտությունների համար։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև աստղասփյուռների կազմի մեջ մտնող երիտասարդ աստղերի բնույթին ու ճառագայթմանը նվիրված հետազոտությունների արդյունքները։ Նշենք դրանցից միայն մեկը։ Վ. Համբարձումյանը ցույց տվեց, որ երիտասարդ և այդ պատճառով ֆիզիկապես անկայուն որոշ աստղերի ճառագայթման հզորության դիտվող անկանոն, երբեմն շատ արագ փոփոխությունները մեծ մասամբ պայմանավորված են այդ աստղերի արտաքին շերտերում ներաստղային էներգիայի անմիջական անջատման երևույթներով։ Այդ երևույթներն արմատապես տարբերվում են Արեգակի և «հանգիստ» այլ աստղերի համար բնորոշ ճառագայթման երևույթներից և, հավանաբար, պայմանավորված են հիշյալ աստղերի ներքին շերտերից արտաբերվող նյութի արտասովոր, գիտությանն անհայտ, ֆիզիկական վիճակներով։

Գիտությանը առայժմ անհայտ վիճակներում գտնվող նյութի մեծ զանգվածների գոյությունը Տիեզերքում հաստատվում է գալակտիկաների և նրանց կորիզների ուսումնասիրությունից ստացված արդյունքներով։ Վ. Հ. Համբարձումյանը հիմնավորեց այն նոր պատկերացումը, որ գալակտիկաների կյանքում շատ կարևոր է, նրանց կենտրոնական, անհամեմատ փոքր չափերի խտացումների՝ կորիզների դերը։ Կորիզներում տեղի են ունենում բուռն անկայունության երևույթներ (վիթխարի պայթյուններ, նյութի հսկայական զանգվածների արտավիժում, նյութի անընդհատ արտահոսք, հզոր ռադիո և անսովոր կարճալիք ճառագայթումներ և այլն), որոնք ուղեկցվում են էներգիայի աներևակայելի մեծ քանակների անջատմամբ։

Չափազանց կարևոր է նրա այն հետևությունը, թե այդ երևույթների բացատրության համար անհրաժեշտ է ենթադրել, որ գալակտիկաների կորիզները, բացի աստղերից և ցրված գազային նյութից, պարունակում են նաև մեծ զանգվածներ ու խտություն ունեցող անհայտ մարմիններ, որոնք վճռական դեր են խաղում գալակտիկաների ձևավորման և զարգացման մեջ։

Գալակտիկաների կորիզների հիշյալ հետազոտությունները մեծ նշանակություն ունեն ինչպես աստրոֆիզիկայի, այնպես էլ ժամանակակից ֆիզիկայի սկզբունքային պրոբլեմների տեսակետից։ Համբարձումյանի կարծիքով, օրինակ, գալակտիկաների կորիզներից նյութի արտահոսքի և արտավիժումների վերաբերյալ «Արդեն եղած աղքատիկ փաստերը, խոսում են այն մասին, որ այդ տվյալները (գալակտիկաների կորիզներից արտավիժվող զանգվածների գնահատականները—Լ. Վ.) կարող են հանգեցնել հակասության էներգիայի (և նյութի) պահպանության օրենքի հետ, նրա արդի տեսքով, որը սահմանափակված է էներգիայի մեզ հայտնի ձևերով և պահանջել այդ օրենքի ընդհանրացում...»։

* * *

Ես արդեն դադարել եմ վարմանալ այն բանից, թե ինչպես, մեկը մյուսի հետևից հաստատվում են Համբարձումյանի գիտական վարկածները, որ նա մարգարեաբար արել է շատ տարիներ առաջ:

ՅԱՆ ՕՈՐՏ

*Ճշգրիտ գիտությունների զարգացման գործում վիթխարի է տեսական հետազոտությունների նշանակությունը: Հատկապես մեծ է այն հետազոտությունների դերը, որոնք կանխատեսելով նոր երևույթներ, ընդլայնում են մեր գիտելիքները շրջակա նյութական աշխարհի վերաբերյալ և կանխորոշում գիտության զարգացման հետագա ընթացքը:*

*Հետազոտությունների գերազանցապես այս խմբին են պատկանում Վ. Համբարձումյանի աշխատությունները, որոնք ընդգրկում են ճշգրիտ գիտությունների ամենատարբեր բաժինները:*

*Հատկապես նշանակալից է Վ. Համբարձումյանի ներդրումը ժամանակակից աստղագիտության մեջ: Տեսական աստրոֆիզիկայի, աստղաբաշխության և աստղային կոսմոգոնիայի լուրջ հաջողությունները Սովետական Միության մեջ, իսկ դրանց մի շարք ճյուղերում նաև ողջ աշխարհում, անխզելիորեն կապված են նրա անվան հետ: Վ. Համբարձումյանի ամենքին հայտնի գիտական դպրոցի ներկայացուցիչների լավագույն հետազոտությունները պատկանում են գիտության ոսկե ֆոնդին և ստեղծել են մի շարք նոր ու կարևոր ուղղություններ:*

*Վ. Համբարձումյանի հետազոտություններում, առաջին հերթին, աչքի է ընկնում քննարկվող հարցերի լուծմանը նրա նոր, յուրօրինակ մոտեցումը: Յուրաքանչյուր հարցի լուծման անհրաժեշտ պայմանը նա համարում է դրա բազմակողմանի ուսումնասիրությունը՝ ֆիզիկական տեսակետից: Միայն այն բանից հետո, երբ դիտողական տվյալների հիման վրա լրիվ պարզվում է երևույթի էությունը, Վ. Համբարձումյանը ձեռնարկում է այդ երևույթի բնույթի ու պատճառների բացահայտմանը, դրա տեսական, մաթեմատիկական մեկնաբանմանը: Այլ կերպ ասած՝ Վ. Համբարձումյանը հիմնական շեշտը դնում է քննարկվող պրոբլեմի ֆիզիկական կողմի վրա, մաթեմատիկական ապարատը դիտելով որպես հետազոտության չափազանց կարևոր և անհրաժեշտ, սակայն միայն օժանդակ միջոց: Հենց այսպիսի նոր մոտեցման մեջ է Վ. Համբարձումյանի հաջողությունների գաղտնիքը:*

*Ուսումնասիրվող հարցերին նման մոտեցման, փաստացի տվյալների բազմակողմանի ֆիզիկական վերլուծության ու ընդհանրացման միջոցով Վ. Համբարձումյանին հաջողվել է ո՛չ միայն բացահայտել հայտնի երևույթների էությունը, այլ նաև որոշ դեպքերում կանխատեսել նոր, նախկինում անհայտ բնույթի երևույթներ: Այդ կանխատեսումները գրեթե միշտ սկզբում հարուցել են գիտնականների թերահավատ վերաբերմունքը: Սակայն կանխատեսվող երևույթները դիտումներով հաստատվելուց հետո, այդ վերաբերմունքը փոխվել է զարմանքի:*

*Այդպես, 1949 թ. աստղասփյուռների անկայունությունից ելնելով, Վ. Համբարձումյանը տեսականորեն կանխատեսել էր դրանց լայնացման երևույթը: 1951 թ. այդ կանխատեսումը փայլուն կերպով հաստատեցին մի քանի աստղասփյուռների աստղերի դիտվող շարժումների հիման վրա հոլանդացի Բլաաուն՝ Լեյդենում և Բ. Ե. Մարգարյանը՝ Բյուրականում, իսկ հետագա հե-*



*տազոտությունները այդ պատկերացման օգտին լրացուցիչ փաստարկներ բերեցին:*

*Աստղագիտության պատմության մեջ վերջին կես դարում դժվար է նշել նախկինում բոլորովին անհայտ երևույթի տեսական կանխատեսության մի այլ, ավելի զարմանալի օրինակ: Բանն այն է, որ այդ կանխատեսությունը վերաբերում էր աստղերի բոլորովին նոր տեսակի շարժումների (աստղային համակարգերի լայնացում և քայքայում), որոնք իրենց բնույթով և պատճառներով խիստ տարբերվում էին այն ամենից, ինչ մինչ այդ ուսումնասիրվում էր աստղաբաշխության մեջ:*

*Վ. Համբարձումյանի գիտական աշխատանքներին միշտ հատուկ է եղել նպատակասլացությունը, արտակարգ խորությունը, գրեթե անհասանելի պարզությունն ու յուրօրինակությունը: Նրանց քննարկման առարկան՝ աստղագիտության տվյալ ժամանակաշրջանում ամենահրատապ հարցերը, սովորաբար մնում են գիտնականի ուշադրության կենտրոնում, քանի դեռ չի հաջողվել ստանալ դրանց սկզբունքային տեսակետից կարևոր լուծումները: Երբեմն այդ միանգամից չի հաջողվել և հարկ է եղել ընթացիկ գիտական աշխատանքների հետ միասին երկար տարիներ խորհրդածել դեռևս մութ հարցերի լուծման հնարավոր ուղիների մասին: Գիտական աշխատանքում նման հետևողականությունը միշտ էլ հանգեցրել է ցանկալի արդյունքների:*

*Որպես օրինակ կարելի է բերել լույսի ցրման տեսությունը: 1943 թ. Վ. Համբարձումյանին հաջողվեց, իր առաջարկած ինվարիանտության սկզբունքի միջոցով, ստանալ պղտոր միջավայրում լույսի ցրման պրոբլեմի ճշգրիտ լուծումը: Երկար տարիներ թվում էր, որ այդ շատ նուրբ եղանակը հնարավոր չէ կիրառել լույսի ցրման ոչ-գծային տեսության մեջ, այսինքն՝ այն դեպքերում, երբ միջավայրի օպտիկական հատկությունները փոխվում են նրա միջով անցնող լույսի ազդեցության տակ: Սակայն մոտ քսան տարի հետո Վ. Համբարձումյանը կրկին անդրադարձավ այդ հարցին և ի զարմանք լույսի ցրման հարցերով սիստեմատիկորեն զբաղվող բոլոր գիտնականների, տվեց լույսի ոչ-գծային տեսության մեջ ինվարիանտության սկզբունքի կիրառության մի եղանակ:*

*Աստղագիտության ականավոր ներկայացուցիչները հաճախ են նշել Վ. Համբարձումյանի գաղափարների մեծ ազդեցությունը ժամանակակից աստղագիտության տարբեր բաժինների զարգացման վրա: Իր* Աստղերի էվոլյուցիան *գրքի առաջաբանում (1950 թ.) մեր ժամանակի ամենամեծ աստղագետներից մեկը, ամերիկյան գիտնական հանգուցյալ Օտտո Ստրուվեն նշել է, որ այդ գրքի տեսական կողմը կրել է Վ. Համբարձումյանի* Աստրոֆիզիկան և աստղերի էվոլյուցիան *աշխատության ազդեցությունը:*

*Աստղառաջացման շարունակվող պրոցեսի վերաբերյալ Վ. Համբարձումյանի առաջ քաշած և հիմնավորած նոր պատկերացման մասին անվանի աստղագետ, Կիտ-Պիկի աստղադիտարանի (ԱՄՆ) դիրեկտոր, Ամերիկյան ազգային ակադեմիայի անդամ Ն. Մեյոլը գրել է. «Այդ պատկերացումն անգնահատելի դուրս եկավ աստղերի առաջացման և զարգացման պրոցեսները հասկանալու մեր ջանքերում: Համբարձումյանի աշխատանքն այդ հրապուրիչ բնագավառում, անկասկած, ամենահզոր ազդակներից մեկն եղավ աստղային էվոլյուցիայի և Գալակտիկայի կառուցվածքի վերաբերյալ արդի հետազոտությունների խթանման գործում»:*

*Սովետական աստղաբաշխության զարգացման հիսունամյա ուղուն նվիր-*

ված հոդվածում խոսելով աստղասփյուռների ուսումնասիրության հիման վրա
Վ. Համբարձումյանի ստացած, իր խոսքերով «էական, սկզբունքորեն կա-
րևոր» արդյունքների մասին, Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի
Աբասթումանի աստղադիտարանի դիրեկտոր, ակադեմիայի իսկական անդամ
Եվգենի Խարաձեն տվել է հետևյալ բնութագիրը. «Դա մի իրադարձություն էր,
որ առաջ բերեց որոնումների այնպիսի մի տարափ, այնպես խթանեց դիտում-
ները, որ ընդհանրապես ես, թերևս, դժվարանում եմ սովետական աստղաբաշ-
խության մեջ նշել մի այլ օրինակ, որը նույնքան խոր ու լայն հետք թողներ
այդ գիտության զարգացման մեջ»։

1967 թ. Պրագայում, միջազգային աստղագիտական համագումարում
հատկապես նշվեց գալակտիկաների կորիզների ակտիվության
գաղափարի և դրա հիման վրա աստղագիտության մեջ ծնված նոր ուղղության
հսկայական նշանակությունը։ Համագումարի օրերին հրապարակվող միջազ-
գային աստղագիտական օրաթերթն իր համարներից մեկում ամերիկյան նշա-
նավոր աստղագետ Ալան Սանդեյջի ռադիոգալակտիկաներին նվիրված զե-
կուցման շարադրանքին կցել էր հետևյալ վերտառությունը. «Դոկտոր Սանդեյջն
ընդգծեց ակադեմիկոս Համբարձումյանի հոյակապ կանխատեսությունը, որը
հիանալի հաստատվում է ներկա դիտումներով»։ Խոսքը գալակտիկաների կո-
րիզների ակտիվության վերաբերյալ Վ. Համբարձումյանի մշակած պատկե-
րացման մասին է։ Սանդեյջի խոստովանությունը խիստ ուշագրավ է, քանի
որ վերջինս սկզբում շատ թերահավատ էր նոր գաղափարի նկատմամբ։
Սակայն, հետագայում ամերիկյան մի այլ աստղագետի՝ Լինդսի հետ միասին
աշխարհի խոշորագույն աստղադիտակով կատարած դիտումների հիման վրա
Սանդեյջն ստացավ գալակտիկաների կորիզների բուռն ակտիվության վերա-
բերյալ նոր պատկերացման ամենափայլուն հաստատումներից մեկը։

* * *

Շատ բեղմնավոր է եղել Վ. Համբարձումյանի աշխատանքը երիտասարդ
գիտնականների պատրաստման ու դաստիարակության գործում։ Լենինգրադի
պետական համալսարանում աշխատելու տարիներին նա մեծ աշխատանք է
կատարել ո՛չ միայն տեսական աստրոֆիզիկայի և աստղային դինամիկայի
գիտական պրոբլեմների մշակման ուղղությամբ, այլ տարիներ շարունակ
կարդացել է այդ առարկաների առաջին համալսարանական դասընթացները,
որոնք խոր ազդեցություն են թողել ունկնդիրների վրա և խթանել այդ բնագա-
վառում հետազոտական աշխատանքները մեր երկրում։

Վ. Համբարձումյանի մշակած տեսական աստրոֆիզիկայի դասընթացը
հիմք ծառայեց նաև Տեսական աստրոֆիզիկա ռուսերեն առաջին դասագրքի
համար, որով անցյալ տարիներին դաստիարակվել են սովետական աստղա-
գետների մի քանի սերունդներ։

Նույնպիսի կարևոր նշանակություն ունեցան Վ. Համբարձումյանի դասա-
խոսություններն աստղային դինամիկայի զարգացման համար։ Ցավոք, այդ
դասախոսությունները ո՛չ իր ժամանակին, ո՛չ էլ հետագայում չհրապարակ-
վեցին։ Սակայն դրանում զարգացված գաղափարները, որոնցից կարևորների
շարադրանքը լույս տեսավ համառոտ հոդվածների ձևով, հաստատուն մտավ
գիտության այդ բաժնի գանձարանը։

Ինչպես այդ, այնպես էլ հետագա տարիներին Վ. Համբարձումյանի շուր-
ջը համախմբվում են նրա անմիջական աշակերտները, աշխատակիցները,



երբեմն նույնիսկ հարակից գիտությունների ներկայացուցիչները, որոնց միա-
վորում են նրա առաջ քաշած գրավիչ գաղափարները՝ աստրոֆիզիկայի հան-
գուցային պրոբլեմների վերաբերյալ։

Մեծ գիտնականն ակտիվ մասնակցել է աստղագիտության և աստրո-
ֆիզիկայի մի քանի ռուսերեն դասագրքերի ստեղծման աշխատանքներին։ Նրա
խմբագրությամբ և մասնակցությամբ 1952 թ. ստեղծված Տեսական աստրո-
ֆիզիկայի նոր դասագիրքը, հետագա տարիներին թարգմանվեց անգլերեն,
գերմաներեն և չինարեն։

Վ. Համբարձումյանի ազդեցությունն այս կամ այն չափով կրել են մեր
ժամանակի շատ գիտնականներ։ Ամենաբազմազան գիտական հարցերով նրան
են դիմում շատերը, նրա հետ քննարկում ավարտված աշխատանքների ար-
դյունքները և ապագա հետազոտությունների պլանները, հետազոտության ժա-
մանակ ծագած դժվարություններն ու դրանց հաղթահարման հնարավոր ուղի-
ները, նոր մեթոդներն ու պրոբլեմները։ Եվ Վ. Համբարձումյանը մեծ ուշա-
դրությամբ լսում է նրանց, հաճույքով բավարարում դիմողներին։

Այդ իմաստով շատ բնորոշ են Ղրիմի աստղադիտարանի դիրեկտոր,
ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Անդրեյ Սևերնու խոս-
քերը. «...Գիտական կյանքի դժվարին պահերին, երբ կասկածներ են ծագել
ընտրված ուղու ճշտության վերաբերյալ, վերջին ավելի քան քսան տարիների
ընթացքում շատ անգամ հարկ է եղել նամակներով դիմել Վիկտոր Համա-
զասպովիչին և նրա մոտ գտնել կամ նոր ձեռնարկումների պաշտպանություն,
կամ այլ ուղիով ընթանալու բարի, օգտակար խորհուրդ»։

Իր գիտական ու մանկավարժական գործունեության ավելի քան քառասուն
տարիների ընթացքում Վ. Համբարձումյանը դաստիարակել է բարձրորակ
մասնագետների մի ստվար խումբ. այդ թվում գիտության մի քանի տասն-
յակ թեկնածուներ և դոկտորներ։ Նրա աշակերտներն աշխատում են Սովե-
տական Միության տարբեր քաղաքներում, տարբեր աստղադիտարաններում,
սակայն նրանք բոլորը սերտորեն կապված են իրենց ուսուցչի հետ։ Նրանցից
շատերն անվանի գիտնականներ են, ղեկավարում են աստղադիտարաններ ու
ամբիոններ, գիտական բաժիններ ու լաբորատորիաներ և իրենց հետազոտու-
թյուններում կիրառում ու զարգացնում են Վ. Համբարձումյանի գաղափար-
ները, նրա մշակած տեսություններն ու հետազոտության մեթոդները։ Իրենց
ուսուցչի ուշադիր ու ջերմ վերաբերմունքին նրանք պատասխանում են խոր
սիրով ու հարգանքով։

Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ նրա աշակերտների մի մեծ խումբ
հաջողությամբ աշխատում է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի
Բյուրականի աստղադիտարանում։

* * *

Ինձ հետաքրքրում է այն գիտահետազոտական աշխատանքը, որ
կատարվում է Բյուրականում, որովհետև այն հիմնվում է ակադեմիկոս
Վ. Հ. Համբարձումյանի գաղափարների վրա։

ԳԻԼԵՐՄՈ ՀԱՐՈ
(Մեքսիկայի ազգային աստղադիտարանի
դիրեկտոր)

Հայրենական գիտությանը Վիկտոր Համբարձումյանի մատուցած ամենա-
մեծ ծառայություններից մեկը Բյուրականի աստղադիտարանի ստեղծումն ու
նրա վերընթաց զարգացման փորձառու ղեկավարությունն է։

1946 թ. նոր աստղադիտարանի շինարարությանը զուգընթաց նրա ղեկավարությամբ, իր հայ աշակերտներից մի քանիսը Բյուրականում շատ համեստ չափերի աստղադիտակներով, տառացիորեն բաց երկնքի տակ, սկսում են առաջին աստղագիտական դիտումները՝ Գալակտիկայի կառուցվածքի ուսումնասիրության նպատակով:

Աստղասփյուռների հայտնագործումը 1947 թ. ամբողջովին կանխորոշեց երիտասարդ աստղադիտարանի հետագա զարգացման ուղին: Աստղասփյուռների ուսումնասիրության մեծ կարևորությունն աստղերի և նրանց համակարգերի առաջացման ու զարգացման օրինաչափությունների բացահայտման գործում դրանք դարձրեց ուսումնասիրության հիմնական օբյեկտ աստղադիտարանի աշխատանքներում: Գիտական թեմատիկայի նման հաջող ընտրությունը բախտորոշ նշանակություն ունեցավ աստղադիտարանի հետագա գործունեության համար: Ավելի ուշ, զգալիորեն ընդլայնվեց աստղադիտարանի գիտական թեմատիկան արտագալակտիկական հետազոտությունների ծավալման իմաստով, որը նույնպես շատ արգասավոր դուրս եկավ:

Իր գոյության համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, Բյուրականի աստղադիտարանը մեծ առաջընթաց ապրեց: Ստեղծվեց գիտական հետազոտությունների առաջնակարգ գիտա-տեխնիկական բազա, տեղակայվեցին ժամանակակից աստղադիտակներ և լաբորատոր սարքավորումներ, կազմակերպվեցին մի շարք գիտական բաժիններ ու լաբորատորիաներ:

Սակայն աստղադիտարանի բեղմնավոր գործունեության նախապատրաստման համար ամենաբնորոշը, իհարկե, բարձրորակ մասնագետների պատրաստումն էր: Երբ սկսվեց աստղադիտարանի շինարարությունը, Վ. Համբարձումյանն ընդամենը 38 տարեկան էր, իսկ աստղադիտարանի աշխատակիցների առաջին սերունդը՝ ավելի երիտասարդ: Հետագայում աստիճանաբար նրա աշխատանքներում ներգրավվել են երիտասարդ աստղագետների մի քանի նոր սերունդ: Այդ գործում մեծ է եղել Երևանի պետական համալսարանի աստրոֆիզիկայի ամբիոնի դերը, ամբիոն, որի հիմնադիրը և անփոփոխ ղեկավարը նույնպես Վ. Համբարձումյանն է:

Վ. Համբարձումյանի ղեկավարությունը և անձնական գործուն մասնակցությունն աստղադիտարանում կատարվող գրեթե բոլոր հետազոտություններում ձեռք բերված կարևորագույն նվաճումների գրավականն են եղել, իսկ Համբարձումյան-ուսուցչի ու գիտնականի, Համբարձումյան-մարդու ու քաղաքացու անձնական օրինակը, հիմնականում կանխորոշել է նրա գիտական անձնակազմի դեմքը:

Աստղադիտարանի գիտական անձնակազմը, որն առանց բացառության կազմված է Վ. Համբարձումյանի աշակերտներից, գերազանցապես Երևանի պետական համալսարանի սաներից, լուրջ հաջողությունների է հասել ժամանակից աստղագիտության մի շարք կարևորագույն բաժիններում:

Ահա թե ինչ է գրել ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Անդրեյ Սևերնին հայ աստղագետների աշխատանքների մասին. «Ժամանակակից բնագիտության հիմնական պրոբլեմներից մեկը աստղերի առաջացման ու զարգացման պրոբլեմն է: Խոսելով այդ մասին, չի կարելի չխոսել նրա լուծման մեջ այն արմատական ներդրման մասին, որ կատարել են Վիկտոր Համազասպի Համբարձումյանը և նրա ղեկավարած Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Բյուրականի աստղադիտարանի կոլեկտիվը: Աստղերի ու աստղային համակարգերի առաջացման և զարգացման պրոբլեմին վերաբերող



վերջին ժամանակների բոլոր նոր գաղափարները, ըստ էության, բխել են այդ աստղադիտարանից»:

Բազմաթիվ են համաշխարհային աստղագիտության մեջ հայ աստղագետների ավանդի գնահատման վկայությունները: Յոթ հայ աստղագետներ ընտրվել են Միջազգային աստղագիտական միության և նրա մի շարք մասնագիտական հանձնաժողովների անդամ: Բյուրականում տեղի են ունեցել աստրոֆիզիկայի կարևորագույն պրոբլեմներին նվիրված համամիութենական և միջազգային մի շարք գիտաժողովներ: 1965 թ. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահության որոշմամբ Երևանում սկսվեց աստրոֆիզիկայի գծով մեր երկրում միակ համամիութենական «Աստրոֆիզիկա» հանդեսի հրատարակությունը, որի գլխավոր խմբագիրը Վ. Համբարձումյանն է, իսկ խմբագրության անդամների կեսը՝ Բյուրականի աստղադիտարանի աշխատակիցները: Կարճ ժամանակամիջոցում գիտական նոր հանդեսը լայնորեն տարածվեց ողջ աշխարհում: Ներկայումս նրա աշխատանքներին սովետական գիտնականներից բացի, մասնակցում են նաև արտասահմանյան աստղագետները: «Աստրոֆիզիկա» հանդեսի բոլոր համարներն ամբողջությամբ թարգմանվում և անգլերեն տպագրվում են Նյու-Յորքում:

Բյուրականի աստղադիտարանը գիտական համագործակցություն է հաստատել սովետական և արտասահմանյան մի շարք աստղագիտական հիմնարկների հետ: «Բյուրականի աստղադիտարանի հաղորդումներ»-ի հասցեատերերի ցուցակում կան մոտ 500 սովետական ու արտասահմանյան հիմնարկներ և առանձին նշանավոր գիտնականներ: Հայ գիտնականները Բյուրականում մշակվող գիտական պրոբլեմների գծով համատեղ հետազոտություններ են կատարել սովետական և օտարերկրյա (Անգլիա, ԱՄՆ, ԳԴՀ, Ֆրանսիա և այլն) աստղագետների հետ: Նրանք հնարավորություն են ունեցել աշխատելու այդ երկրների խոշորագույն աստղադիտակներով և ռադիոդիտակներով: Բյուրականի աստղադիտարանում որակավորման և համատեղ հետազոտություններ կատարելու նպատակով աշխատել են Հարավսլավիայի, Հունգարիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի և այլ երկրների երիտասարդ աստղագետները:

Հայ աստղագետների աշխատանքի բարձր գնահատության լավագույն վկայությունն է այն նշանակալից փաստը, որ 1967 թ. աստրոֆիզիկայի զարգացման գործում աչքի ընկնող ծառայությունների և բարձրորակ գիտական կադրերի պատրաստման համար Բյուրականի աստղադիտարանը բոլոր սովետական աստղադիտարաններից առաջինը և միակը արժանացավ Սովետական Միության բարձրագույն կառավարական պարգևի՝ Լենինի շքանշանի:

* * *

Մեր ժամանակներում խիստ աճել է գիտության դերը մարդկության կյանքում: Գիտությունն ներկայումս ո՛չ միայն շրջակա նյութական աշխարհի և նրա զարգացման օրինաչափությունների ուսումնասիրության մի միջոց է, այլև վճռական մի գործոն ժողովրդական տնտեսության, տեխնիկայի ու մշակույթի զարգացման գործում: Բնականաբար, աննախընթաց չափով աճել է գիտա-կազմակերպչական աշխատանքի նշանակությունը գիտության պլանավորման, կազմակերպման և զարգացման համար:

Վ. Համբարձումյանի գիտական և մանկավարժական գործունեությունը մշտապես և անխզելիորեն զուգակցվել է չափազանց բեղմնավոր գիտա-կազմակերպչական աշխատանքի հետ: Որտեղ էլ եղել է Վ. Համբարձումյանը,

անկախ զբաղեցրած պաշտոնից, միշտ ամբողջովին նվիրվել է հայրենական գիտության զարգացման գործին, աշխատել այն համաշխարհային գիտության առաջին շարքերում տեսնելու ձգտումով: Այդ բանը նա արել է շատ հաճախ, դժբախտաբար, իր սեփական գիտական աշխատանքի հաշվին: Սակայն այդ զոհաբերությունը նա միշտ կատարել է առանց ափսոսանքի, առաջնորդվելով «մեծ գործը մեծ զոհաբերություն է պահանջում» սկզբունքով: Իսկ այդ մեծ գործը՝ հայրենական գիտության բուռն զարգացումը, միշտ էլ մնացել է նրա ուշադրության կենտրոնում: Առանձնապես պետք է նշել Վ. Համբարձումյանի աչքի ընկնող դերը Հայաստանի գիտությունների ակադեմիայի պրեզիդենտի պաշտոնում՝ ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների զարգացման, բնա-կան և տեխնիկական գիտությունների բնագավառում գիտա-հետազոտական աշխատանքների մակարդակի բարձրացման, ռադիոֆիզիկայի, էլեկտրոնիկայի և ավտոմատիկայի հետ կապված նոր գիտական ուղղությունների ստեղծման գործում: Շատ տեսակետներից այդ բանն օգնել է հանրապետությունում նոր արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծմանը, տեխնիկայի, արդյունա-բերության և արտադրաուժերի զարգացմանը:

Ամենաբարդ երևույթների և հարցերի էությունն արագ ըմբռնելու ար-տակարգ ընդունակությունը Վ. Համբարձումյանին առանձնապես հաճախ է օգնել բազմաթիվ այն հարցերում, որոնց հետ նա ամեն օր շփվել է, որպես մեր հանրապետության գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ: Նրան հա-վասարապես զբաղեցնում են ֆունդամենտալ գիտական հետազոտություն-ների և ժողովրդական տնտեսության զարգացման հարցերը, Բյուրականի աստ-ղադիտարանն ու Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, Նուրբ օրգա-նական քիմիայի ինստիտուտն ու Հրազդանի լեռնաքիմիական համալիրը, Մա-թեմատիկայի ու մեխանիկայի ինստիտուտն ու մաթեմատիկական հաշվիչ մե-քենաների ստեղծումը, հայ ժողովրդի պատմությունն ու Երևանի էլեկտրոնային հզոր արագացուցիչը:

Վ. Համբարձումյանի ղեկավարությամբ գիտությունների ակադեմիան հասել է մեծ հաջողությունների, հատկապես ֆիզիկա-մաթեմատիկական գի-տությունների բնագավառում: Բուռն զարգանում են օգտակար հանածոների ուսումնասիրության և օգտագործման, էներգետիկայի ու արդյունաբերության, հայ ժողովրդի պատմական անցյալի ու հոգևոր կուլտուրայի ուսումնասիրու-թյան հետ կապված ուղղությունները: Պատահական չէ, որ մեր ակադեմիան իր գոյության քառորդ դարի ընթացքում լուրջ ավանդ է մուծել սովետական գի-տության զարգացման գործում և իրավամբ համարվում է հանրապետական ամենաառաջավոր ակադեմիաներից մեկը:

* * *

Վիկտոր Համբարձումյանի գիտական, մանկավարժական և կազմակերպ-չական աշխատանքը ներդաշնակորեն միաձուլված է աչքի ընկնող հասարա-կական աշխատանքի հետ: 1950 թվականից սկսած նա հինգ անգամ անընդմեջ ընտրվել է երկրի իշխանության բարձրագույն օրգանի՝ ՍՍՀՄ Գերագույն սո-վետի դեպուտատ: Նա արդեն քսան տարի է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի անդամ է:

Գերագույն սովետի նիստերում, կուսակցական համագումարներում և կոն-ֆերանսներում ունեցած իր բազմաթիվ ելույթներում, կենտրոնական մամուլի էջերում տպագրված իր հոդվածներում Վ. Համբարձումյանն առաջ է քաշել



հայրենական գիտության, մեր երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հետ կապված կարևոր հարցեր, օգտակար առաջարկություն-ներ:

Կազմակերպման պահից նա Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչության նախագահն է և մեծ աշխատանք է կատարել ժողովրդի մեջ գի-տական և քաղաքական գիտելիքների տարածման, գիտության ու տեխնիկայի նվաճումների մասսայականացման նպատակով: Նրա հրապարակային զեկու-ցումները Երևանում և Մոսկվայում, Տամշադինում և Լենինգրադում, մեր հան-րապետության տարբեր շրջաններում, նրա գիտա-հանրամատչելի գրքույկները և հոդվածները կարևոր ներդրում են այդ բնագավառում:

Նա բազմիցս ղեկավարել է սովետական գիտնականների պատվիրակու-թյունները միջազգային համագումարներում և գիտաժողովներում, որտեղ նրա ելույթները, գիտական հաղորդումները և զեկուցումները նպաստել են մեր եր-կրի միջազգային գիտական կապերի ամրապնդմանը, օժանդակել հայրենա-կան գիտության հեղինակության բարձրացմանը:

Վ. Համբարձումյանը լուրջ ծառայություններ ունի Հայաստանում գիտա-կան գրականության հրատարակության կազմակերպման գործում: Երկար տարիներ նա ղեկավարել է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի խմբագրա-հրատարակչական խորհուրդը, եղել ակադեմիայի «Զեկույցների» և գիտական այլ հանդեսների խմբագիր: Այժմ նա ղեկավարում է հայերեն առաջին Հայկական սովետական հանրագիտարանի գլխավոր խմբագրու-թյունը:

* * *

Կարմիր գերհսկա[1]: Այսպես է բնութագրել Վ. Համբարձումյանին Կանբեր-րայի (Ավստրալիա) համալսարանի պրոռեկտոր Հաքսլին: Իրոք, քառասուն տարուց ավելի է, ինչ նա իր ինքնատիպ հետազոտություններով, գիտության գանձարանը հարստացնող կարևոր հայտնագործություններով որպես մի կար-միր գերհսկա աստղ փայլում է գիտության երկնակամարում:

Իր երկրին և իր ժողովրդին անշահախնդիր ծառայելու մի զարմանալի օրինակ է գիտնականի ողջ գործունեությունը:

Մեծ գիտնականի աշակերտներն ու բարեկամները, նրա պայծառ տաղանդի բազմաթիվ երկրպագուները, մեր ողջ ժողովուրդը ցանկանում են նրան քաջ-առողջություն և երկար տարիների բեղմնավոր գործունեություն՝ ի բարօրու-թյուն մեր հայրենիքի, ի փառս մեր ժողովրդի:

1 Կարմիր գերհսկաները մեզ հայտնի ամենամեծ աստղերն են, որոնք օժտված են շատ հզոր ճառագայթմամբ. «Կարմիր» ածականով Հաքսլին միաժամանակ ակնարկել է Վ. Համ-բարձումյանի սովետական գիտնական լինելը:

ԲԱԲԱՅԱՆ Հ. Հ.

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱԹԵՄԱՏԻԶԱՑԻԱՆ

Վ. Ի. Լենինի գիտական հարուստ ժառանգության մեջ ուրույն տեղ են
գրավում բնագիտության փիլիսոփայական հարցերը, որոնց նա անդրադար-
ձել է Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Փիլիսոփայական տետրեր, Մար-
տընչող մատերիալիզմի մասին և այլ աշխատություններում։
Լենինն այդ գործերում իմացաբանական իմաստավորում տվեց բնական
գիտությունների կողմից կատարած նոր հայտնագործություններին, նշեց այդ
գիտությունների զարգացման հետագա ուղին։ Բնագիտության փիլիսոփայա-
կան հարցերի վերաբերյալ լենինյան դրույթները, որոնց ճշմարտացի լինելն
ապացուցվեց գիտության զարգացման պատմությամբ, այսօր էլ չեն կորցրել
իրենց ուժը և անհրաժեշտ են ինչպես բնագետներին, այնպես էլ փիլիսո-
փաներին։

***

Մատերիական աշխարհի առարկաներն ու երևույթները բազմակողմանի
ուսումնասիրելու համար պետք է դրանց հատկությունները իմանալ ո՛չ միայն
որակապես, այլ քանակապես, քանի որ նրանք գտնվում են օբյեկտիվ միաս-
նության մեջ, լրացնում են միմյանց, պայմանավորված են միմյանցով։
Գիտության պատմությունը ցույց է տալիս, որ գիտական շատ խոշոր
հայտնագործություններին, որպես կանոն, նախորդել են մաթեմատիկական
նոր գաղափարների, հասկացությունների ու մեթոդների մշակումը։ Այսպես,
անկարելի է պատկերացնել կլասիկ մեխանիկայի օրենքները, համաշխարհա-
յին ձգողականության օրենքը, ալիքների տարածման երևույթը և այլն առանց
դիֆերենցիալ ինտեգրալ հաշիվների, հարաբերականության տեսությունն ու
քվանտային մեխանիկան՝ առանց Ն. Լոբաչևսկու երկրաչափության, ատոմա-
յին էներգիայի հայտնագործումը՝ առանց օպերատորների սեփական արժեք-
ների և սովորական դիֆերենցիալ հավասարումների տեսությունների։ Ուսում-
նասիրության մաթեմատիկական մեթոդների դերն առանձնապես մեծացավ
մեր դարասկզբին, որը կապված էր ֆիզիկայի բնագավառում կատարված
հեղաշրջիչ փոփոխությունների հետ, փոփոխություններ, որոնց մարքսիզմի
հակառակորդներն ամեն կերպ փորձում էին օգտագործել ընդդեմ մատերիա-
լիզմի։



Իրականում բնագիտության մեջ կատարված խոշոր հայտնագործություն-
ներն էական նշանակություն ստացան փիլիսոփայական-մատերիալիստական
նոր ընդհանրացումները և գոյություն ունեցող հին պատկերացումները վեր-
արժեքավորելու, վերանայելու առումով։
1896 թվականին Հ. Բեքերելը հայտնագործեց ուրանի ճառագայթման
երևույթը՝ որոշակի հատկություններ ունեցող ճառագայթների ինքնամույղ
առաքումն ուրանի աղերից։ Նա նկատեց, որ լուսանկարչական թիթեղը սև
թղթով փաթաթելուց և վերջինիս վրա ուրանի միացությունը տեղավորելուց
հետո, թիթեղի միջով անցած ճառագայթները նրա վրա այնպիսի հետք են
թողնում, ինչպիսին կստացվեր լույսի ազդեցությամբ։ Դրանից երկու տարի
անց Մարիա և Պիեռ Կյուրիները հայտնաբերեցին քիմիական երկու նոր
տարր՝ ռադիումը և պոլոնիումը, որոնց ճառագայթումը գերազանցում էր
ուրանի ճառագայթմանը։ Նրանք տարրերի այդ հատկությունն անվանեցին
ռադիոակտիվություն։
Հետագայում պարզվեց, որ այդ ճառագայթները կարող են պարպել
էլեկտրասկոպը և հաղորդիչ դարձնել շրջապատող միջավայրը։ Ռադիոակտիվ
նյութերի ճառագայթումը ուղեկցվում է մի տարրի փոխակերպմամբ մի այլ
տարրով, ինչպես նաև հսկայական քանակությամբ էներգիայի անջատմամբ։
Ռադիոակտիվության երևույթի հայտնագործումից պարզ դարձավ, որ
ատոմները բարդ կառուցվածք ունեն։ Բնագիտության արմատական վերա-
փոխումների հիմնական գործոններից էր նաև էլեկտրոնի հայտնագործումը
(Ջ. Թոմսոն), նրա մասսայի և լիցքի չափումը, մատերիայի էլեկտրոնային
տեսության հիմունքների մշակումը (Գ. Լորենց), ինչպես նաև հարաբերա-
կանության հատուկ տեսության սկզբունքների ձևակերպումը (Ա. Էյնշտեյն)։
Մասսան այլևս չէր դիտվում որպես անփոփոխ և մատերիային նույնական
ատրիբուտ, որը և մախիստների համար հիմք դարձավ խոսելու «մատերիայի
չքացման մասին», ենթադրելու, որ, իբր, շարժումը հնարավոր է պատկերաց-
նել առանց մատերիայի և այլն։
««Մատերիան չքանում է»— սա նշանակում է՝ չքանում է այն սահմանը,
մինչև որը մատերիան մենք գիտեինք մինչև այժմ,— գրում է Վ. Ի. Լենինը,—
մեր գիտելիությունն ավելի խորանում է, չքանում են մատերիայի այնպիսի
հատկություններ, որոնք առաջ թվում էին բացարձակ անփոփոխ, նախա-
սկզբնական (անթափանցելիություն, իներցիա, զանգված և այլն) և որոնք
այժմ երևան են գալիս որպես հարաբերական հատկություններ և հատուկ են
մատերիայի միայն մի քանի կացությունների» (Երկեր, հ. 14, էջ 346)։ Գի-
տության զարգացման հետագա ընթացքը հաստատեց այս դրույթի ճշմար-
տացիությունը։
Մատերիայի շարժման մյուս ձևերը մեխանիկական շարժումից ավելի
բարդ են, որոնց օրենքները, չնայած նրանց միջև գոյություն ունեցող օրգա-
նական սերտ կապի, տարբերվում են նյուտոնյան մեխանիկայի համապա-
տասխան օրենքներից (ինչպես արդեն ապացուցել է սովետական ֆիզիկոս
Դ. Ի. Բլոխինցևը, քվանտային մեխանիկայի Է. Շրեդինգերի հիմնական հավա-
սարումը, երբ Պլանկի հաստատունը՝ h=0 փոխարկվում է նյուտոնյան մե-
խանիկայի հիմնական դրույթներն արտահայտող Համիլտոն-Յակոբիի հավա-
սարմանը, ձգողության թույլ դաշտերի և փոքր արագությունների համար հա-
րաբերականության ընդհանուր տեսության հավասարումները դառնում են

կլասիկ մեխանիկայի շարժման և ձգողության օրենքներն արտահայտող հա-
վասարումներ):
Միկրոաշխարհի և լույսի արագությանը մոտ արագություն ունեցող մաս-
նիկների շարժումների ուսումնասիրությունը դարձել էր ֆիզիկայի առաջնա-
հերթ խնդիրը: Այս պայմաններում մասնավորապես հերքվեց այն գերիշխող
կարծիքը, թե, իբր, տարածությունն ու ժամանակը անկախ են իրարից, նը-
րանց գոյությունը պայմանավորված չէ ժամանակի և տարածության մեջ
շարժվող մատերիայի հատկություններով: Հարաբերականության ընդհանուր
տեսության համաձայն,— գրում է Ա. Էյնշտեյնը,— քառաչափ տարածաժա-
մանակային կոնտինուումի մետրիկական բնույթը (կորությունը) յուրաքան-
չյուր կետում որոշվում է այդ կետում գտնվող մատերիայով և վերջինիս
վիճակով:
Գիտության այս հայտնագործությունների ժամանակ նշանակալից է մա-
թեմատիկայի դերը, որը միանգամայն օրինաչափ է: Եթե մինչ այդ ֆիզի-
կայի, ինչպես և մյուս բնական գիտությունների ուսումնասիրության օբյեկտը,
որոշ իմաստով, առարկայական էր, ապա մատերիայի հատկությունների
ուսումնասիրության մեջ խորանալիս իրական-առարկայական պատկերա-
ցումներին փոխարինում են մաթեմատիկական աբստրակտ հասկացություն-
ները, որոնք ճշգրտում են օբյեկտիվ աշխարհի մասին ունեցած մեր պատ-
կերացումները, նպաստում նոր երևույթների հայտնաբերմանը:
Սակայն գերագնահատելով մաթեմատիկական մեթոդների դերը, մի շարք
փիլիսոփաներ ու ֆիզիկոսներ չկարողացան գիտության ստացած նոր տվյալ-
ներից իմացաբանական ճիշտ եզրակացությունների հանգել: Մատերիալիզ-
մը «հերքելու» համար նրանք փորձում էին հավատացնել, թե նոր հայտնա-
գործությունների հետևանքով բնագիտության մեջ առաջացած դժվարություն-
ների գլխավոր պատճառը բնության մատերիալիստական մեկնաբանումն է:
Այստեղից նրանք եզրակացնում էին, որ մատերիալիզմը պետք է անպայման
փոխարինվի «ժամանակակից բնագիտության փիլիսոփայությամբ»՝ մախիզ-
մով:
Մերկացնելով մախիզմի փիլիսոփայական հիմքերը, Լենինն իր Մա-
տերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ (1908 թ.) հանգամա-
նորեն իմացաբանական վերլուծության ենթարկեց գիտության զարգացման
օրինաչափությունները, բացահայտեց «ֆիզիկական» իդեալիզմի էությունը: Ի
հակադրություն մախիստական-էմպիրիոկրիտիկական փիլիսոփայության Լե-
նինը ցույց տվեց, որ գիտության զարգացումն ընթանում է միմիայն դիալեկ-
տիկորեն: Նա անթույլատրելի էր համարում ֆիզիկական ռեալությունների
նկարագրման մաթեմատիկական լեզվի և ուսումնասիրության մաթեմատիկա-
կան մեթոդների շփոթումն իմացության տեսության հարցերի հետ: Փիլիսո-
փայական ուղղությունները միմյանցից բաժանող տեսական-իմացաբանական
կարևոր հարցը ո՛չ թե ճշգրտության որպիսի աստիճանի վրա գտնվող պատ-
ճառական կապակցությունների մեր նկարագրություններն են և դրանք մաթե-
մատիկորեն արտահայտված բանաձևերը, այլ այն, «...թե այդ կապակցու-
թյունների մեր իմացության աղբյուրը բնության օբյեկտիվ օրինաչափու-
թյո՞ւնն է արդյոք, թե՞ մեր մտքի հատկությունները, որոշ ապրիորային ճըշ-
մարտություններ իմանալու՝ նրան հատուկ ունակությունը և այլն: Ահա թե
ինչն է անդառնալի կերպով բաժանում մատերիալիստներ Ֆոյերբախին,



Մարքսին և Էնգելսին ագնոստիկներ (յումիստներ) Ավենարիուսից և Մախից»
(Երկեր հ. 14, էջ 203):
«Ֆիզիկական իդեալիզմի» առաջացման Վ. Ի. Լենինի նշված իմացաբա-
նական երկու վճռական պատճառներից մեկը հենց ֆիզիկայի մաթեմատի-
զացիան է (ի դեպ, նշենք, որ ֆիզիկայի ճգնաժամը ոչ թե այդ գիտության
զարգացման կանգառ է նշանակում, այլ այն, որ նրա մեջ է խցկվում իդեա-
լիզմը): Իրականում այդ գիտության մեջ հեղաշրջում էր կատարվում: Ճգնա-
ժամը վերաբերում է ֆիզիկական նոր տեսությունների իդեալիստական-իմա-
ցաբանական վերլուծություններին: Նույնիսկ մախիզմի կողմնակիցները չեն
ժխտում, որ տեսական ֆիզիկան դառնում է մաթեմատիկական ֆիզիկա:
«Ֆիզիկայի ճգնաժամը ֆիզիկայի նվաճումն է մաթեմատիկայի ոգու կող-
մից»,— գրում է ֆրանսիական պոզիտիվիստ և «կիսով չափ մախիստ» Աբել
Ռեյն իր Ֆիզիկայի թեորիան ժամանակակից ֆիզիկոսների մոտ գրքում:
Շատ ֆիզիկոսներ կասկածանքով էին նայում ֆիզիկայի օբյեկտիվու-
թյանը, դրանով հարություն տալիս կանտյան այն իդեային, թե, իբր, մարդու
բանականությունն է օրենքներ թելադրում բնությանը: «Բնագիտության խո-
շոր հաջողությունը,— գրում է Լենինը,— մոտեցումը մատերիայի այնպիսի
համասեռ ու հասարակ տարրերին, որոնց շարժման օրենքները թույլ են տա-
լիս կատարել մաթեմատիկական մշակում, առաջացնում են այն, որ մաթե-
մատիկոսները մոռանում են մատերիան: «Մատերիան չքանում է», մնում են
սոսկ հավասարումները» (Երկեր, հ. 14, էջ 411):
Մատերիալիզմի հակառակորդները իրենց տեսությունները «հաստատե-
լու» համար փորձեցին հենվել մաթեմատիկական աբստրակցիաների ծայրա-
հեղ վերացականության վրա: Ֆիզիկայի մեջ մաթեմատիկայի դերի մեծացու-
մը իդեալիստները դիտում են որպես մաթեմատիկական բանաձևերում ու
հավասարումներում օբյեկտիվ ռեալության մերժում: Այդ տեսակետին էր
նույնիսկ խոշոր ֆիզիկոս Հանրի Պուանկարեն: Իրականում գիտական բոլոր,
ինչպես և մաթեմատիկական աբստրակցիաները, ձևով սուբյեկտիվ են, բո-
վանդակությամբ՝ օբյեկտիվ: Դրանք աբստրահված են մատերիական բոլան-
դակությունից, մի հանգամանք, որն աչքաթող էին անում մախիստները:
«Մարդկային հասկացությունները սուբյեկտիվ են իրենց վերացականու-
թյամբ, անջատվածությամբ,— գրում է Լենինը,— բայց օբյեկտիվ են ամ-
բողջության մեջ, պրոցեսում, հանրագումարի մեջ, իրենց տենդենցի մեջ,
ակունքում» (Երկեր, հ. 38, էջ 255):
Այս նոր դարաշրջանի ռացիոնալիստների կարծիքով մաթեմատիկոսները
կարող են մաթեմատիկան զարգացնել, եթե նույնիսկ մատերիական աշխարհը
մի հրաշքով չքանար: «Այո,— պատասխանում է նրանց Լենինը,— եթե այն
չքանար այժմ, բայց կարո՞ղ են նրանք ստեղծել մաթեմատիկա, եթե մատե-
րիական աշխարհ երբեք գոյություն չունենար» (Նույն տեղը, էջ 524):
Մախիստների կարծիքով ֆիզիկայի կողմից դիֆերենցիալ և ինտեգրալ
հաշվի ապարատի օգտագործումը իդեալիզմի հաստատում, մատերիալիզմի
հերքում է նշանակում: Ֆիզիկան մաթեմատիկական հավասարումների ու
բանաձևերի համախումբ է, հայտարարում են մախիստները, ավելին, նրանք
ամեն կերպ փորձում էին համոզել, թե այդ հավասարումներն ու բանաձևերը
ընդհանուր ոչինչ չունեն օբյեկտիվ իրականության հետ, այլ գիտնականների
բանականությամբ ու կամքով ստեղծված սիմվոլներ ու նշաններ են: «Միայն
հավասարումներ,— ոչ մի մատերիա, ոչ մի օբյեկտիվ ռեալություն, լոկ սիմ-

վոլներ»: Նրանք չկարողացան հասկանալ այն պարզ ճշմարտությունը, որ իրենց ժամանակակից խոշորագույն ֆիզիկոսները (Մ. Ֆարադեյ, Ջ. Մաքս-վել, Հ. Հերց, Ջ. Թոմսոն, Գ. Լորենց, Ա. Էյնշտեյն) իրենց հետազոտություն-ներում կիրառելով մաթեմատիկան, ավելի խոր ու բազմակողմանի են ճա-նաչել մատերիական աշխարհի օրինաչափությունները:

Ձնայած վեց տասնամյակ է անցել Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպի-րիոկրիտիցիզմ աշխատության հրապարակումից, այն ամենատարբեր բնա-գավառի գիտնականների համար մնում է որպես գիտական հայտնագործու-թյունների տեսական անսասան ելակետ: Սակայն, ինչպես և պետք է սպա-սել, բուրժուական գիտության մեջ այժմ կարելի է հանդիպել «ֆիզիկական» իդեալիզմի կողմնակիցների, որոնք դեռևս չեն հաղթահարել դարասկզբին առաջացած ճգնաժամը: Իրենց փիլիսոփայական հայացքներում հետևողական չէին նույնիսկ հարաբերականության տեսության և քվանտային մեխանիկայի հիմնադիրները՝ Էյնշտեյնը, Ն. Բորը, Դիրակը, Շրեդինգերը, Հայզենբերգը: Միանգամայն տեղին է Լենինի այն դիտողությունը, թե փիլիսոփայության բնագավառում չի կարելի հավատալ բուրժուական գիտնականներին, որքան էլ մեծ լինի նրանց վաստակը գիտությունների առանձին բնագավառներում:

Վ. Ի. Լենինը Մարտնչող մատերիալիզմի մասին նշանավոր հոդվածում նորից էր հիշեցնում, որ բուրժուական իդեոլոգները չեն դադարի բնագիտու-թյան նորագույն հաջողություններն օգտագործել մատերիալիզմի դեմ «խա-չակրաց» արշավանքներ կազմակերպելու համար և որ ոչ մի բնական գի-տություն, եթե այն փիլիսոփայորեն լուրջ հիմնավորված չէ, չի կարող դի-մանալ իդեալիզմի գրոհին: Վերջինիս հակահարված տալու համար «...բնա-գետը պետք է լինի ժամանակակից մատերիալիստ, գիտակից կողմնակից այն մատերիալիզմի, որը ներկայացրել է Մարքսը, այսինքն՝ որ պետք է դիալեկտիկ մատերիալիստ լինի» (Երկեր, հ. 33, էջ 274): Գիտության հե-տագա զարգացումը ցույց տվեց լենինյան մտքերի իրավացիությունը:

Անկարող լինելով բացատրել ժամանակակից գիտության կողմից մա-թեմատիկական ապարատի առավել օգտագործման փաստը, որոշ գիտնա-կաններ ուզում են ապացուցել, որ աշխարհն օբյեկտիվորեն գոյություն ունե-նալ չի կարող: Ա. Էդինգտոնի կարծիքով, օրինակ, ժամանակակից ֆիզիկան զբաղվում է միայն մաթեմատիկական ստրուկտուրաներով, ֆիզիկայի բոլոր օրենքներն ու հաստատունները ֆիզիկոսների բանականության արդյունք են: Ֆիզիկայի մեջ մաթեմատիկական բանաձևերն ու հավասարումները չեն դիտ-վում որպես օբյեկտիվ իրականության առարկաների ու երևույթների հատ-կություններ, օրինաչափություններ: Էդինգտոնը հարցնում է. «Ի՞նչ ենք դի-տում մենք» և պատասխանում՝ «հավանականությունների տեսությունը տվել է մեկ պատասխան՝ մենք դիտում ենք միայն հ ա ր ա բ ե ր ո ւ թ յ ո ւ ն ն ե ր: Քվանտային մեխանիկան տվել է ուրիշ պատասխան՝ մենք դիտում ենք միայն հ ա վ ա ն ա կ ա ն ո ւ թ յ ո ւ ն ն ե ր» («В. Ф.», էջ 62, 1958, № 1):

Հայզենբերգի կարծիքով «օբյեկտիվը» ստեղծում է անհատի բանակա-նությունը: Նա պնդում է, որ ինչքան էլ խորանում ենք ատոմի ուսումնասի-րության մեջ, այնքան ավելի ենք համոզվում, որ այն գոյություն չունի, նրա յուրաքանչյուր մասնիկը մաթեմատիկական որևէ ձև է՝ նախագծված մարդու բանականությամբ, իսկ մատերիայի ատոմային կառուցվածքի վերջին հիմ-քը՝ մաթեմատիկական օրենքն է, մաթեմատիկական սիմետրիան: Կասկած չի կարող լինել, որ ժամանակակից քվանտային տեսության մեջ, վերջին հաշ-



վով, տարրական մասնիկները կլինեն նույնպես մաթեմատիկական ձևեր, բայց ավելի բարդ բնույթի:

Այս հարցում Հայզենբերգը ցուցաբերում է անհետևողականություն, մեկ-նաբանությունների մեջ հակասում ինքն իրեն, տուրք տալիս տարերային մատերիալիզմին: Հետևողական աշխատանք կատարող յուրաքանչյուր գիտ-նական,— գրում է նա,— զգում է, որ ինքը որոնում է այն, ինչը օբյեկտիվ ճշմարտություն է:

Այժմ արդեն հայտնաբերված են ավելի քան երեք տասնյակ տարբեր տարրական մասնիկներ (պրոտոն, նեյտրոն, էլեկտրոն, պոզիտրոն, նեյտրինո, ֆոտոն, մեզոն, հիպերոն, անտիպրոտոն, անտինեյտրոն և այլն): Ավելի ու ավելի թափանցելով մատերիայի էության մեջ, հայտնաբերելով միկրոաշ-խարհի նոր տարրեր, կրկին անգամ համոզվում ենք, որ այնտեղ հոգևոր սկիզբ չկա, որ իրականության բոլոր երևույթների ու պրոցեսների հիմքում ընկած է օբյեկտիվորեն գոյություն ունեցող շարժվող մատերիան: Գերագնա-հատելով գիտական ընդհանրացումների ու սահմանումների դերը և այն ան-ջատելով օբյեկտիվ իրականությունից, առանձին տեսաբաններ գտել են, որ գիտական այս կամ այն տեսություն ընդունվում է ոչ թե նրա օբյեկտիվ հա-վաստիության, այլ պարզ ու գեղեցիկ շարադրված մաթեմատիկական հավա-սարումների ու բանաձևերի համար: Ըստ Ֆ. Ֆրանկի, Պտղոմեոսի սիստեմը փոխարինվեց Կոպեռնիկոսի սիստեմով ո՛չ թե այն պատճառով, որ վերջինս ճիշտ է արտացոլում իրականությունը, այլ այն, որ նա ունի մաթեմատիկա-կան ավելի պարզ արտահայտություն: Չըմբռնելով գիտելիքների հարաբերա-կանության դիալեկտիկան, Ֆրանկը գտնում է, որ գիտական այս կամ այն տեսությունը կարելի է ընտրել գիտնականների միջև փոխադարձ համաձայ-նությամբ: Մենք պետք է ընտրենք վերջնական տեսություն կոմպրոմիսի ճա-նապարհով, գրում է նա:

Այս ամենը վկայում է, որ գիտության մեջ իդեալիզմը չի հաղթահար-ված, քանի որ նրա առաջացման համար կան իմացաբանական (ինչպես նաև սոցիալական) արմատներ: Ավելին, նեոպոզիտիվիզմի տարբեր տարատե-սակների ներկայացուցիչները (Ա. Էդինգտոն, Բ. Ռասել, Պ. Բրիջմեն և ուրիշ-ներ) հենվելով ժամանակակից տեսական ֆիզիկան մաթեմատիկական մեթոդների ունեցած դերի բարձրացման վրա, փորձում են «ապացուցել» ֆի-զիկական տեսությունների ոչ-օբյեկտիվ լինելը:

***

Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում գիտությունը դառ-նում է անմիջական արտադրական ուժ, հասարակության զարգացման հզոր գոր-ծոն: «Ներկա ժամանակաշրջանում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— գիտու-թյան և տեխնիկայի առաջադիմության հետագա հեռանկարները որոշվում են, ամենից առաջ, բնագիտության առաջատար ճյուղերի նվաճումներով: Մա-թեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության զարգացման բարձր մակարդակը տեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական և այլ գիտու-թյունների վերելքի ու արդյունավետության անհրաժեշտ պայմանն է» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 549, 1962 թ.):

Գիտությունների մաթեմատիզացիան, որը բնորոշվում է իբրև որակապես տարբեր երևույթների քանակական կողմի ընդհանրացում, ժամանակակից գիտության զարգացման կարևորագույն տենդենցներից է։ Մաթեմատիզացիան գիտությունների զարգացման մշտապես գործող պայման է։ Այդ առավել ևս ակնհայտ է ժամանակակից պայմաններում, երբ ստեղծվում ու զարգանում են մաթեմատիկայի նոր բաժիններ (մաթեմատիկական տրամաբանություն, ալգորիթմների տեսություն, խաղերի տեսություն, գծային ծրագրման, ղեկավարող սիստեմների մաթեմատիկական պրոբլեմների տեսություններ և այլն)։

Նյութական արտադրության պրոցեսների բարդացումը տեխնիկայի զարգացման, ժամանակակից քաղաքակրթության պայմաններում առաջ են քաշում այնպիսի խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է մաթեմատիկայի միջամտություն, մաթեմատիկական նոր մեթոդների անհրաժեշտություն։ Այժմ գիտության ուսումնասիրության օբյեկտն ավելի ու ավելի է «հեռանում» ուսումնասիրողից, և գիտելիքների շատ բնագավառներում, նույնիսկ ժամանակակից տեխնիկայով հագեցած ամենակատարելագործված գործիքների առկայությամբ, անհնար է դառնում հետազոտվող առարկայի անմիջական ընկալումը։ Նման դեպքերում դժվար է գերագնահատել ուսումնասիրության մաթեմատիկական աբստրակտ մեթոդների դերը։ Այսպես, ֆիզիկական ոչ մի հարմարանք չի կարող գուշակել այնպիսի անկայուն տարրական մասնիկների գոյությունը, որոնց կյանքի տևողությունը չափվում է 10—23 վրկ կարգի մեծությամբ։ Հիմնվելով խմբերի տեսության դրույթների վրա, Բրուկխեյվենյան լաբորատորիայում (1964 թ.) ֆիզիկոսներին հաջողվեց մաթեմատիկական եղանակով հայտնագործել, այսպես կոչված՝ «Օմեգա մինուս», տարրական մասնիկը։

Մատերիական աշխարհում հանդիպող բազմաբնույթ ամենատարբեր առարկաներն ու երևույթները որակական և քանակական որոշակիությունների միասնություն են, որով պայմանավորված է նրանց փոխադարձ կապերի ու հարաբերությունների ճշգրիտ քանակական նկարագրության սկզբունքային հնարավորությունը։ Ուրեմն, այդ միասնության մեջ էլ հենց կարելի է փնտրել գիտելիքների ցանկացած բնագավառի մաթեմատիզացիայի հնարավորության հիմքերը։ Շնորհիվ այդ օբյեկտիվ և ռեալ հնարավորության, մաթեմատիկան այսօր դարձել է աբստրակցիայի բարձրագույն արտահայտությունը, ժամանակակից իմացության մի շարք առաջատար բնագավառների լեզուն։ Նրա մեթոդներից օգտվում են նույնիսկ գիտելիքների այնպիսի բնագավառներ, որոնք համեմատաբար վերջերս շոշափման ոչ մի կետ չունեին մաթեմատիկայի հետ (էկոնոմիկա, կենսաբանություն, բժշկություն, լեզվաբանություն և այլն)։

Մաթեմատիկական մեթոդների ամենուր կիրառման հնարավորության փաստի հետ մեկտեղ չպետք է անտեսել, որ գիտելիքների տարբեր բնագավառներում այդ մեթոդների դերն առայժմ միևնույնը չէ։ Դրա պատճառը տարբեր գիտությունների կողմից ուսումնասիրվող օբյեկտների տարբերությունն է, ինչպես նաև մաթեմատիկական մեթոդի բնորոշ առանձնահատկությունը։ Ուսումնասիրության ընթացքում մաթեմատիկան վերանում է ուսումնասիրվող օբյեկտի, երևույթի որակական բոլոր որոշակիություններից և ուշադրությունը կենտրոնացնում միայն քանակական կողմի վրա։ Այսպիսով, մաթեմատիկական մեթոդի օգտագործման հնարավորությունը պայմանավոր-



-ված է նրանով, թե տվյալ գիտության օբյեկտն ուսումնասիրության ժամանակ ի՞նչ չափով է «թույլատրում» անտեսել որակական իր ցուցանիշները։ Այդ բանը մեխանիկայի ու ֆիզիկայի մեջ ավելի հեշտ է կենսագործել, քան կենսաբանական և սոցիոլոգիական գիտությունների բնագավառներում։ Որքան բարդ է մատերիայի շարժման ձևը, այնքան օրգանական սերտ կապի մեջ են համապատասխան երևույթների քանակական և որակական որոշակիությունները։ Մասամբ դա է պատճառը, որ կենսաբանական և սոցիոլոգիական հետազոտությունների ժամանակ մաթեմատիկական մեթոդները դեռևս պակաս են կիրառվում, քան մեխանիկայի, ֆիզիկայի, աստղագիտության մեջ։

Ամփոփենք։ Գիտելիքների տարբեր բնագավառների մաթեմատիզացիան գիտության զարգացման դիալեկտիկական պրոցեսի անհրաժեշտ էտապ է, և մաթեմատիկական գիտության զարգացման, ինչպես նաև հաշվող-վճռող կիբեռնետիկական մեքենաների լայն կիրառման, հասարակական պրակտիկայի պահանջմունքների աճման շնորհիվ այժմ չտեսնված արագ և ինտենսիվ է կատարվում։ Ա. Ա. Լյապունովի պատկերավոր արտահայտությամբ ասած՝ եթե աքսիոմատիկ մեթոդը ժամանակակից մաթեմատիկայի ոճն է, ապա պրակտիկայի պահանջմունքները (բառիս ամենալայն իմաստով, այդ թվում նաև հարակից գիտությունների պահանջմունքները) նրա ֆունդամենտն են։ Գիտելիքների տարբեր բնագավառների կողմից ուսումնասիրության մաթեմատիկական մեթոդների օգտագործման օբյեկտիվ հիմքն այն է, որ հենց ուսումնասիրվող առարկաների ու երևույթների քանակական և որակական կողմերն են գտնվում սերտ կապի մեջ։ Մաթեմատիկան հնարավորություն է տալիս տվյալ առարկայի և երևույթի քանակական հարաբերությունների միջոցով ճանաչել նրա որակական կողմը։

Ձնայած գիտելիքների մաթեմատիզացիայի վերաբերյալ Վ. Ի. Լենինն իր հայացքները շարադրել է ավելի քան կես դար առաջ և հիմնականում միայն ֆիզիկայի մաթեմատիզացիայի փաստի վրա հենվելով, այսօր էլ (երբ բավական ընդլայնվել է ուսումնասիրության մաթեմատիկական մեթոդների կիրառման ոլորտը, երբ ավելացել են գիտելիքների այնպիսի բնագավառները, որոնք ձգտում են ի հայտ բերել պարզ և համասեռ տարրեր, որոնց շարժման օրինաչափությունները հնարավոր է ձևակերպել մաթեմատիկական լեզվի օգնությամբ) դրանք ո՛չ միայն նվազագույն չափով չեն կորցրել իրենց ճշմարտացի լինելը և գիտության նշանակությունը, այլև հաստատել են իրենց ճշմարտացի լինելը և գիտության ամենատարբեր բնագավառի ներկայացուցիչների համար ուղեցույց են՝ գիտություններում ստացված նոր արդյունքներից ճշմարիտ իմացաբանական եզրակացություններ անելու համար։

Վ. Ի. Լենինի փիլիսոփայական ժառանգությունը, արդի գիտության հայտնագործությունները հերքում են բնագիտական երևույթների իդեալիստական մեկնաբանությունները։

ՋԱՎՐԻԵՎ Դ. Ս.

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԱՌԱՋԱԴԵՄ ՈՒԺԵՐԸ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Իմպերիալիզմի սահմանագծերում, ազգային-ազատագրական շարժումը
այժմ այլևս համաշխարհային հեղափոխության օժանդակ ռեզերվ չէ։ Արդի
ազգային-ազատագրական հեղափոխությունը համաշխարհային հեղափոխա-
կան պրոցեսի հակաիմպերիալիստական պայքարի երեք հզոր հոսանքներից է։*

*Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն ազգա-
յին ազատագրական շարժումը սահմանափակվում էր առանձին երկրների
շրջանակներով։ Այժմ այն ընդհանուր բնույթ է կրում։*

*Զարգացող երկրներում իմպերիալիզմն ու գաղութարարությունը բնակ-
չության բոլոր հիմնական խմբերի թշնամին են։ Ուստի, հայրենասիրական ու
դեմոկրատական ուժերի միասնությունը, ինչպես միշտ, մնում է այդ պայքարի
հաջողության գրավականը։ Հեղափոխական լագերում են միավորվել բանվոր-
ները, գյուղացիները, հեղափոխական ինտելիգենցիան, քաղաքի և գյուղի մանր
բուրժուազիան, գաղութային բուրժուազիայի առանձին ներկայացուցիչներ։*

*Ազգային-ազատագրական հեղափոխության ամենավճռական և գիտակից
շարժիչ ուժը բանվոր դասակարգն է։ Նա ղեկավար դեր է նվաճել մի շարք
երկրների ազգային-ազատագրական շարժումներում և ներգործել հեղափոխա-
կան պրոցեսի զարգացման վրա։ Աֆրիկայի երկրներում բանվոր դասակարգը
նոր է ձևավորվում և տեղի հասարակության ամենաառաջադիմական ուժն է։
Նրա թվական կազմը, կազմակերպվածությունը, դերը հասարակական-քաղա-
քական կյանքում գնալով աճում է։*

*Ազգային-ազատագրական շարժման առաջին էտապում վարձու աշխա-
տանքով զբաղվածների թիվը Աֆրիկայի երկրներում 12 միլիոն էր, արհմիու-
թյուններում՝ 3 միլիոնից պակաս, իսկ այժմ, համապատասխանաբար՝ 20 մի-
լիոն (կամ ինքնագործ բնակչության 18 տոկոսը) և 5 միլիոն։*

*Աֆրիկյան պրոլետարիատի դասակարգային ձևավորումը և նրա ինքնա-
գիտակցության զարգացումը ետ է մնում այն պատճառով, որ վարձու աշխա-
տողների մեծամասնությունը հողից կտրված չէ, լեռնային արդյունաբերության
մեջ, պլանտացիաներում և այլ ճյուղերում զբաղված բանվորների մի մասը
աշխատում է ոչ ամբողջ տարին։ Բացի այդ, աֆրիկացիները պահպանում են
ցեղային կապերը, որոնք մի կողմ են մղում դասակարգային պատկանելությու-
նը։ Այստեղ բանվորների միավորմանը արգելակում է ռասայական խտրա-*



*կանությունը, դասակարգային ինքնագիտակցությանը՝ համատարած անգրա-
գիտությունը։ Չնայած այս բոլորին, մեծանում է կադրային բանվորների թի-
վը, ամրանում բանվոր դասակարգի միջուկը։*

*Զարգացող երկրների ինքնագործ բնակչության մեծամասնությունը գյու-
ղացիությունն է։ Հոկտեմբերից հետո, երբ ազգային-ազատագրական շարժու-
մը դարձավ համաշխարհային հեղափոխական պրոցեսի երեք հոսանքներից
մեկը, փոխվեց ուժերի հարաբերակցությունը։*

*Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում գյուղացի-
ների հսկայական մեծամասնությունը մանր ապրանքարտադրողներ են և չեն
կարողանում հայթայթել մինիմալ կենսամիջոցներ։ Նույնիսկ ագրարային ռե-
ֆորմներ իրականացրած երկրներում արմատական փոփոխություն չի կատար-
վել գյուղացիության դրության մեջ, ու նա շարունակում է մնալ ֆեոդալա-ճոր-
տատիրական հարաբերությունների, տեղական և օտարերկրյա կապիտալի եռա-
կի ճնշման տակ։*

*Կորցնելով հավատը բուրժուազիայի նկատմամբ, գյուղացիությունը գնում
է բանվոր դասակարգի ետևից, իսկ որտեղ այն թույլ է, գնում է նույնիսկ իմ-
պերիալիզմի դեմ պայքարի ելած ֆեոդալա-միապետական տարրերի ետևից
(Եթովպիա, Մարոկկո, Աֆղանստան)։*

*«Հեղափոխական դեմոկրատիան» իր մեջ է ներառում քաղաքային մանր
ապրանքարտադրողներին հարող, հայրենասիրաբար տրամադրված ինտե-
լիգենցիային (ժուռնալիստներին, գրողներին, ուսուցիչներին, իրավաբան-
ներին, բժիշկներին, սպայական անձնակազմին, ուսանողությանը, ծառայող-
ներին)։ Նրանց քաղաքական ինքնուրույնությունը պայմանավորված է ազգա-
յին բուրժուազիայի թուլությամբ, մի հանգամանք, որ միջակա խավերին հնա-
րավորություն է ընձեռում ժողովրդական մասսաներին մոբիլիզացնելու նույ-
նիսկ զարգացման ոչ-կապիտալիստական ուղու համար պայքարելու։*

*...Համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտե-
րում,— գրել է Լենինը,— երկրագնդի բնակչության մեծամասնության շարժու-
մը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի
կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ...» (Երկեր, հ. 32, էջ 622)։*

*Զարգացման ոչ կապիտալիստական ուղին, ինչպես հայտնի է, ենթա-
դրում է բանվոր դասակարգի դաշինք՝ գաղութարարության կողմից ճնշված
բազմամիլիոն կիսապրոլետարական և ոչ-պրոլետարական մասսաների հետ։
Գաղութարարության լծից ազատված երիտասարդ սուվերեն պետություններին
ցույց տրվող սոցիալիստական երկրների աջակցությունը բանվոր դասակարգի
և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարի կենսագործումն է։ Հեն-
վելով սոցիալական, այդ կարևոր արտաքին գործոնի վրա, մանրբուրժուական
խավերի, դեմոկրատական ինտելիգենցիայի ներկայացուցիչներն առաջադի-
մության ուղիներում ի վիճակի են հաջողությամբ լուծել ազգային վերածննդի
խնդիրները։*

*Ազգային-ազատագրական հեղափոխության ընդհանուր-ազգային էտա-
պում միջակա խավերը հանդես են գալիս համազգային որոշակի լոզունգնե-
րով։ Բայց անկախությունն նվաճելուց հետո նրանց շարքերում տեղի է ունե-
նում սահմանազատում, երևան են գալիս առաջադիմական, սոցիալիստական,
ինչպես նաև անարխիստական գաղափարախոսության ու պրակտիկայի կրող-
ներ։*

*Առաջադիմական միջակա խավերի ներկայացուցիչները գլխավորում են*

ժողովրդական լայն մասսաների, առաջին հերթին, գյուղացիության և բանվոր-
դասակարգի մղած պայքարը իմպերիալիստական մոնոպոլիաների դեմ, դրա-
նով նրանք սահմանափակում են խոշոր, մասամբ նաև միջին կապիտալիս-
տական կուտակումները, վերացնում կալվածատիրությունը, հողը բաշխում
գյուղացիներին, գյուղատնտեսությունը փոխադրում զարգացման կոոպերատիվ
հիմունքների վրա, ստեղծում ինդուստրացման, գյուղատնտեսության պետա-
կան սեկտորներ, կիրառում պլանային սկզբունքներ, վերակառուցումներ կա-
տարում կուլտուրայի և լուսավորության բնագավառներում, կանխում նեոգա-
ղութարարության առաջացման ամեն մի հնարավորություն։ Այստեղ մանր
բուրժուազիայի դիրքը ազգային-դեմոկրատական շարժման մեջ բնորոշվում է
նրանով, որ կապիտալիստական զարգացման պայմաններում տնտեսապես
հետամնաց երկրների բուրժուազիան կարող է կուլ գնալ խոշոր կապիտալին։

Առաջադիմական գաղափարները հրապուրում են նաև բուրժուական միջա-
վայրից դուրս եկած, հայրենասիրությամբ տոգորված սպայությանը։ Թեև բա-
նակը սովերեն իրավակարգի պաշտպանության երաշխիք չէ, բայց հարաբե-
րականորեն կայուն քաղաքական և սոցիալական ուժ է։ Ուստի, հակաիմպե-
րիալիստական և դեմոկրատական շարժման կարևորագույն խնդիրն է՝ պայ-
քարել հանուն բանվորներից, գյուղացիներից և առաջադեմ սպաներից կազմ-
ված ազգային բանակի ստեղծման։

Արդի կապիտալիզմի փաստաբանները բարբաջում են, այսպես կոչված՝
«ժողովրդական կապիտալիզմի» պայմաններում «առատության հասարակու-
թյուն» ստեղծելու հնարավորության մասին։ Նրանք օրինակ են բերում խոշո-
րագույն իմպերիալիստական պետությունները, որտեղ արտադրաուժերը կա-
րող են բավարարել ողջ հասարակության պահանջմունքները, բայց ստեղծված
արժեքների առյուծի բաժինն ընկնում է մի բուռ շահագործողների ձեռքը, իսկ
ժողովրդական մասսաները ապրում են աղքատության մեջ։

Սոցիալիստական սիստեմի վիթխարի նվաճումները վերջնականապես
վարկաբեկեցին կապիտալիզմը։ Նույնիսկ գաղութարարությունից ազատագրը-
ված ազգային բուրժուազիայի ներկայացուցիչների համար ակներև դարձավ,
որ իմպերիալիզմը ունակ չէ օբյեկտիվորեն լուծելու իր առջև ծառացած սոցիա-
լական ու տնտեսական խնդիրները։ Հրապարակ եկան «հասարակությունը
սոցիալիստական օրինակով» կառուցելու, գյուղացիական կոոպերատիվներ
ստեղծելու, «համայնական զարգացման», «առանց դիկտատուրայի սոցիա-
լիզմ» կառուցելու վերաբերյալ կոչեր։ Գամալ Աբդել Նասերը խոսում է «կոո-
պերատիվ սոցիալիզմի» մասին։ Աֆրիկայում մեծ հեղինակություն վայելող,
միջազգային լենինյան մրցանակաբաշխության դափնեկիր, հանգուցյալ պրո-
ֆեսոր Դյուբուան սոցիալիզմը տեսնում էր երկրի էկոնոմիկայի կարգավոր-
ման և քաղաքական կազմակերպվածության մեջ, որի շրջանակներում քա-
ղաքացու առաջին պարտքը պետությանը ծառայելն է։ Քվամե Նքրուման
գրում էր «տրադիցիոն սոցիալիզմի» մասին, որը համապատասխանում է
Աֆրիկայի հասարակության պատմության տրադիցիաներին, միջավայրին,
համայնքի պայմաններին և այլն։

Գիտական սոցիալիզմի գաղափարներն Աֆրիկայում արդեն տարածվել
են ինտելիգենցիայի առաջավոր մասի շրջանում։ Այստեղ գիտական սոցիա-
լիզմի գաղափարների տարածման գործում քիչ դեր չեն խաղացել Անգլիա-
յի, Ֆրանսիայի և այլ կոմունիստական կուսակցությունները, որոնք իրենց
շուրջն են համախմբել դեմոկրատական լայն խավերին ու նվաճել Ասիայի և



Աֆրիկայի ժողովուրդների վստահությունը։ Աֆրիկյան ինտելիգենցիայի որոշ
քաղաքական գործիչներ, Եվրոպայում ուսանելու շրջանում շփվելով կոմու-
նիստական շարժման հետ, սկսեցին դատապարտել կապիտալիզմը և տնտե-
սական զարգացման այլ ուղիներ որոնել։ Սրանով է բացատրվում Աֆրիկայում
սոցիալիստական տեսությունների «առատությունը», որը մոնոպոլիստական
կապիտալի ու գաղութարարության դեմ բողոքի արտահայտություն է, զար-
գացման կապիտալիստական ուղուց խուսափելու կամ դրա ժամկետները նվա-
զագույնի հասցնելու ցանկություն։ Այս ամենից ձգտում է առաջանում ստեղծել
պլանային տնտեսություն, պետական սեկտոր, մասնավոր ձեռնարկատիրու-
թյան նկատմամբ պետական վերահսկողություն, սանձահարել մոնոպոլիստա-
կան կապիտալը։

Նման մոտեցումը մարքսիզմ-լենինիզմի գիտական ըմբռնում չէ, այլ
կապիտալիզմի դաժան դատապարտում։ Այդ հասկանում են նաև իմպերիա-
լիստները։ Զուր չէ, որ անգլիական գաղութարարները վերջերս փորձում են
թույլ զարգացած երկրներում ստեղծել, այսպես կոչված՝ միջին դասակարգ,
տեղական բուրժուազիա, որի վրա հետագայում կարելի լիներ հենվել։

Ազատագրված երկրներում տակավին քիչ բան է արված ժողովրդի դրու-
թյունը բարելավելու համար. տեղ-տեղ բարձրացել է աշխատավարձը, ծավալ-
վել բնակարանային շինարարությունը, որոշ միջոցներ են ձեռնարկվել կրթու-
թյունը զարգացնելու և առողջապահության գործը ընդլայնելու համար։ Բայց
ազատագրված երկրներում աշխատավորների դրությունը քիչ է փոխվել։ Հաս-
կանալի է, որ այդ երիտասարդ պետությունները կարճ ժամկետում չեն կա-
րող ձերբազերծվել գաղութարարության ծանր հետևանքներից և արմատապես
լավացնել աշխատավորության կենսապայմանները։ Զարգացող երկրներում
հեղափոխական վերափոխությունների կենսագործման համար կատարվող յու-
րաքանչյուր քայլ հանդիպում է միջազգային և հայրենական ռեակցիայի,
ինչպես նաև օտարերկրյա մոնոպոլիաների կատաղի դիմադրությանը։ Կապի-
տալի արտահանումը, ոչ-համարժեք փոխանակումը միջոցներ են՝ օտարեր-
կրյա մոնոպոլիստների կողմից Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկա-
յի երկրների ազգային եկամտի խոշոր մասը յուրացնելու համար։ Կապիտալի
արտահանումը, մի կողմից՝ մոնոպոլիաներին թույլ է տալիս արտադրության
ոլորտում շահագործել զարգացող երկրներին, մյուս կողմից՝ ոչ-համարժեք
փոխանակման միջոցով նրանց կողոպտելու համար պայմաններ է ստեղծում։

Օտարերկրյա մոնոպոլիաների և ֆեոդալա-ցեղային բյուրոկրատացած
վերնախավի ռեակցիոն մա-
ավագանու ներկայացուցիչներից բացի, ռեակցիայի լագերում գործում են աջ
բուրժուա-նացիոնալիստական խմբերը, բանկային վերնախավի ռեակցիոն մա-
սը։ Զինվորական ռեակցիոն հեղաշրջում կատարվեց Գանայում, այդպիսի փորձ
արվեց Գվինեայում, ինչպես նաև Նիգերիայում, ուր գեներալ Ագաի-Իրոնսիի
զինվորական կառավարությունը ցրելով բոլոր քաղաքական կուսակցություն-
ները, ինքը ևս տապալվեց։

Պետական հեղաշրջումները և ռազմական ռեժիմները խափանեցին ժո-
ղովրդի ակնկալումները։ Բայց չնայած կուսակցությունների արգելմանը,
նրանք շարունակում էին գոյություն ունենալ։ Ռազմական կառավարողները
չարդարացրին ժողովրդի հույսերը։ Իշխանության գլուխ անցած զինվորական-
ները դարձան այն կոնֆլիկտների զոհերը, որոնց վերացման համար իրենք
պայքարում էին։

Ռազմական հեղաշրջումները զուգորդվում էին քաղաքական տեռորով։

1966 թ. սպանվեց Իրաքի պրեզիդենտ Աբդել Սալյամ Արեֆը, բացահայտվեց պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի վրա մահափորձ կատարելու դավադրությունը։ Նման դեպքերը այդ երկրների քաղաքական կյանքում տիպական են։

Առաջադիմական սոցիալական խավերը իշխանության գլուխ անցան ԱՄՀ-ում, Ալժիրում, Սիրիայում, Մալիում, Գվինեայում, Տանզանիում, Կոնգոյում (Բրազավիլ), Բիրմայում և այլուր։ Այդ երկրներում առաջադիմական ռեժիմների նվաճումներն անվիճելի են։ Պատմությունը ցույց է տալիս,—ասել է Լ. Ի. Բրեժնևը,— որ հետամնացության վերացումը, կապիտալիզմի շրջանցումով առաջշարժումը դեպի սոցիալիզմ ենթադրում են շատ բարդ սոցիալական պրոբլեմների լուծումը, պահանջում են ստեղծել ժամանակակից արտադրաուժեր։ Սոցիալիստական կողմնորոշում ընտրած երկրների ժողովուրդները դեռ պետք է լուծեն այդ պրոբլեմները և լուծեն այնպիսի պայմաններում, երբ վերացված չէ գաղութարարության ժառանգությունը, երբ պահպանողական տարրերը դեռ օգտվում են դրանից։

ԱՄՀ-ում հեղափոխությունը գլխավորեց հայրենասիրական սպայական կազմակերպությունը, 34-ամյա փոխգնդապետ Գամալ Աբդել Նասերի ղեկավարությամբ։ Այդ կազմակերպությունը հենվում էր ժողովրդի աջակցության վրա, ժողովուրդ, որն ապստամբել էր իմպերիալիստների, ֆեոդալների և մերձիմպերիալիստական բուրժուազիայի շահերը պաշտպանող թագավոր Ֆարուկի ատելի ռեժիմի դեմ։ Նոր կառավարությունն ազգայնացրեց Սուեզի ջրանցքը և Սովետական Միության օգնությամբ ձեռնամուխ եղավ Ասուանի (Սաադ ալ-Ալի) բարձրադիր ամբարտակի կառուցմանը, որը հնարավորություն կընձեռի ոռոգելի տարածությունները ավելացնել մեկ երրորդով, էլեկտրիֆիկացնել երկրի զգալի մասը։ Իմպերիալիստական մոնոպոլիստների և ներքին պահպանողական ուժերի դեմ մղված համառ պայքարի շնորհիվ պետական ազգայնացված սեկտորի վերահսկողության տակ դրվեց էկոնոմիկայի 90 տոկոսը՝ խոշոր և միջին արդյունաբերությունը, տրանսպորտը, բանկային սիստեմը (ազգային բանկը և բանկ Միսրը՝ տեղական կապիտալիստների խոշորագույն միավորումը)։ 1967 թ. կառավարությունը որոշում ընդունեց 18 ամսվա ընթացքում ազգայնացնել մեծածախ առևտուրը։ Այդպիսով պետական սեկտորը դարձավ երկրի տնտեսական զարգացման վճռական ուժը, որը միաժամանակ աճում է թե՛ նոր ձեռնարկություններ շարք մտցնելու, թե՛ գործողները մոդեռնացնելու հաշվին։ Երկիրը արտադրում է պողպատ, գլանվածք, երկաթուղային վագոններ, քիմիական պարարտանյութեր, էլեկտրալար, ռադիոընդունիչներ և այլն։

Խոշոր հարստությունները բուրժուազիայի ձեռքին չկուտակելու նպատակով մասնավոր անձանց թույլատրվում է ունենալ 10 հազար եգիպտական ֆունտ ակցիաներից ոչ ավելի։ Վարչական և տնտեսական ապարատի յուրաքանչյուր աշխատողի ռոճիկի տարեկան առավելագույն չափը՝ 5 հազար եգիպտական ֆունտ է։

Ագրարային ռեֆորմի վերաբերյալ օրենքը խոշոր հողատերերին արգելում է 42 հեկտարից ավելի հողամաս ունենալ։ Գյուղացիներին արդեն 500 հազար հեկտար հող է բաշխվել։ Կառավարությունը որոշ միջոցների է դիմել աշխատավորների դրությունը բարելավելու համար։ Կրճատվել է աշխատանքային օրվա տևողությունը, ստեղծված է կենսաթոշակային ֆոնդ, իջեցված է բնակարանավարձը, սահմանված է աշխատավարձի մինիմում։

Պառլամենտում դեպուտատական տեղերի կեսը բանվորներին ու գյուղա-



ցիներինն է։ Ընտրական իրավունքից զրկվում են նրանք, ովքեր մերկացված են քաղաքական կաշառքի, արհմիություններն ու կոոպերատիվները հակաժողովրդական նպատակներով օգտագործելու համար։

Ալժիրի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետությունում ընդհանուրազգային սեկտորի զգալի մասն աշխատավորներն ստեղծել են երկրից փախած ֆրանսիական գաղութարարների ֆիրմաներն ու ձեռնարկությունները գրավելու միջոցով։ Գյուղացիներին տրվեց 3 միլիոն հեկտար հող, կամ մշակվող այն տարածության մեկ երրորդը, որը հագեցված էր առավել արդյունավետ և ժամանակակից տեխնիկայով։ Նոր ստեղծված արտադրական կոլեկտիվները կազմեցին ինքնակառավարվող ձեռնարկությունների սեկտորը։ 1964 թ. վերջին այդ սեկտորն ընդգրկեց մշակվող հողատարածության մեկ երրորդից ավելին և ձեռնարկությունների մեկ երրորդը, որոնք տալիս են երկրի ողջ արդյունաբերական արտադրանքի մեկ հինգերորդ մասը։ Եղած 2 հազար ֆիրմաներից 580-ը արդեն եկամտաբեր են։

Ալժիրում գոյություն ունի արտադրամիջոցների հանրային սեփականության մի այլ ձև՝ պետությանը անմիջականորեն ենթակա ձեռնարկությունների սեկտորը։ Վերջինիս վերահսկողության տակ են գտնվում երկաթուղային, օդային և ծովային տրանսպորտը, նավթամթերքների, տեքստիլ, հագուստեղենի և կաշվե արտադրանքների զգալի մասի արտադրությունն ու վաճառքը։ Պետությունն ակցիաների զգալի բաժին ունի օտարերկրյա կապիտալի հետ խառը կամպանիաներում։ Ազգայնացված ձեռնարկությունները տալիս են արտադրվող ամբողջ գործվածքեղենի 40 տոկոսը, վերնահագուստի՝ 60, կահույքի՝ 50, աղյուսի՝ 75 տոկոսը։

1966 թ. Ալժիրում ազգայնացվեցին լեռնամշակման արդյունաբերության, ապահովագրական կամպանիաների ձեռնարկությունները, ստեղծվեց ազգային բանկ։ Պետության վերահսկողության տակ են գտնվում ֆրանսիական մոնոպոլիաներին պատկանող երկու խոշոր մետալուրգիական գործարան։ **Նոր կառուցվող գործարաններից** խոշորը Աննաբի մետալուրգիական կոմբինատն է, որն ստեղծվում է Սովետական Միության օգնությամբ։ Ալժիրում արդյունաբերական բանվորների թիվը հասնում է ավելի քան 100 հազարի, որը բավականաչափ լայն բազա է ստեղծում սոցիալիստական վերափոխությունների համար։

Մալիում լայն թափով է զարգանում ընդհանուր-ազգային սեկտորը։ Նոր ձեռնարկություններն ստեղծվում են պետական կապիտալ ներդրումների հաշվին։ 1961 թ. ազգայնացվեց «Օֆիս լյու Նիժեր» խոշորագույն գյուղատնտեսական կամպանիան, որը նախկինում պատկանում էր ֆրանսիացիներին։ Օտարերկրյա կապիտալի գործունեությունը վերահսկվում է։ Ստեղծված է պետական բանկ, ազգայնացված է երկրի ընդերքը, շրջանառության է դրված սեփական ազգային վալյուտան։

1960 թ. վերջին օրենք ընդունվեց գյուղատնտեսությունը կոոպերացնելու վերաբերյալ։ Շուտով երկրում ստեղծվեց 2000 գյուղատնտեսական կոոպերատիվ, որտեղ միավորվեց երկրի գյուղական բնակչության մոտ 20 տոկոսը։ Կոոպերատիվները կամավորության սկզբունքներով ստեղծված ինքնուրույն կազմակերպություններ են, որոնց պետությունն օգնում է գյուղատնտեսական տեխնիկայով։ Վարչական մարմիններն իրավասու չեն միջամտել գյուղատնտեսական կոոպերատիվների գործերին կամ, մանավանդ, որոշումներ պարտադրել նրանց։

Կոոպերատիվները Մալիում գյուղատնտեսական արտադրանքի միավորման և վաճառահանման պարզ կենտրոններ չեն։ Դրանք դեռևս մեկ գյուղի բազայի վրա, գերազանցապես, վաճառահանման բնույթի են, քանի որ տրանսպորտի զարգացման տվյալ մակարդակի պայմաններում հաղորդակցությունը դժվար է հարևան գյուղերի միջև։ Բայց կառավարությունը կոոպերատիվները գյուղում դիտում է որպես նոր հարաբերությունների ծիլեր։

Աշխատավորների դրությունը բարելավելու համար օրենք է հրատարակվել աշխատանքի, ապահով ծերության մասին։ Օտարերկրացի աստիճանավորներն ու մասնագետները պետական ապարատում փոխարինվում են Մալիի քաղաքացիներով։ Մալիում պետական սեկտորին բաժին է ընկնում շինարարական կազմակերպությունների համախառն ապրանքաշրջանառության մոտ 90 տոկոսը, արդյունաբերական ձեռնարկությունների ապրանքաշրջանառության՝ 80, ապրանքային բամբակի արտադրության 33 և երկրի վերահսկողության տակ եղած արտածման 45 տոկոսը։

Սիրիայի Արաբական Հանրապետությունում, որի կառավարության կազմում են նաև կոմունիստները, աշխատավորների ճնշման տակ մի շարք միջոցառումներ են կենսագործված՝ օտարերկրյա կապիտալի գործունեությունը սահմանափակելու և պետական սեկտորն ամրապնդելու համար։ Պետությունն ամբողջությամբ վերցրած ընդգրկել է արդյունաբերության բոլոր ճյուղերը և միավորել 100 կոմպանիա, 235 միլիոն սիրիական ֆունտ ընդհանուր կապիտալով։ Ազգայնացված են՝ երկրի բնական միջոցները և մասնավոր կապիտալին արգելված է զբաղվել օգտակար հանույթների մշակությամբ։ Մենաշնորհ է մտցված կարևորագույն ապրանքների արտածման և ներմուծման նկատմամբ։

Բիրմայի Միությունում կենսագործված է տնտեսության հիմնական ճյուղերի ազգայնացումը, արգելված մասնավոր կապիտալիստական ձեռնարկությունների ստեղծումը։ 1965 թ. պետական սեկտորին բաժին ընկավ արդյունաբերության 60 տոկոսը, շինարարության՝ 50, տրանսպորտի՝ 40, առևտրի՝ 60 տոկոսը։ Այնտեղ գործում է քառամյա մի ծրագիր, որը նախատեսում է համախառն արտադրանքի միջին տարեկան աճը հասցնել 8 տոկոսի։

Զարգացող երկրների գլխավոր խնդիրներից մեկը տնտեսական անկախության նվաճումն է։ Դրան արգելակում են կապիտալի մասնատվածությունն ու թուլությունը։ Ուստի, զարգացող երկրների պետությունն է այն միակ տնտեսական ուժը, որն ունակ է կենտրոնացնել ժողովրդի նյութական միջոցները և դրանք հակադրել օտարերկրյա կապիտալի գերիշխանությանը։ Այդ երկրներում պետական սեկտորի ստեղծմանը բարոյական ու նյութական օգնություն է ցույց տալիս համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Պետական սեկտորը հաջող է զարգանում այն երկրներում, որտեղ իշխանությունը գտնվում է առաջադիմական դեմոկրատական ուժերի ձեռքին որոնց վերջնական նպատակը սոցիալիզմի կառուցումն է։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի բարերար ազդեցության ներքո աստիճանաբար հաղթահարվում են մանրբուրժուական դեմոկրատիայի նացիոնալիստական նախապաշարումները և լայն հնարավորություններ են ստեղծվում հեղափոխական պոտենցիալի բազմակողմանի դրսևորման համար։

ԹՈՒՄԱՍՅԱՆ Ս. Վ.

# ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՉ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՈՒՂԻՆ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Բանվոր դասակարգի համաշխարհային պայքարի փորձն ընդհանրացնող միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերում, ՍՄԿԿ ծրագրում և XXIII համագումարի որոշումներում տրված են ազատագրված երկրների զարգացման ոչ-կապիտալիստական ուղու բնութագիրը, գաղութատիրության դարավոր լուծը թոթափած ժողովուրդներին ժամանակակից քաղաքակրթության նվաճումներին հաղորդակից դարձնելու միջոցները։ Ազատագրված ժողովուրդների սոցիալական գոյաձևի ընտրությունից է մեծապես կախված այդ երկրների զարգացման հեռանկարը։

***

Գիտական կոմունիզմի հիմնադիրները, բացահայտելով մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, ապացուցեցին, որ մարդկության պատմությունը բնապատմական պրոցես է։ Հասարակությունը զարգացման այդ ուղին անցել է միմյանց հաջորդող հինգ հիմնական ֆորմացիաներով, որոնք օրգանական սերտ կապի մեջ են և ունեն առաջընթացի իրենց օրինաչափությունն ու հաջորդականությունը։ Մարքսի ու Էնգելսի հայտնաբերած հասարակական ֆորմացիաների հաջորդականությունը վերջին հարյուրամյակի սոցիոլոգիական մտքի մեծագույն նվաճումն է։ «Մարդկային բոլոր հասարակությունների զարգացումը,— գրել է Լենինը,— հազարամյակների ընթացքում անխտիր բոլոր երկրներում, ցույց է տալիս մեզ այդ զարգացման ընդհանուր օրինաչափությունը, կանոնավորությունը, հաջորդականությունը...» (Երկեր, հ. 29, էջ 585)։

Զարգացման ընդհանուր օրինաչափությունը, տարբեր հասարակական ֆորմացիաների ներքին օրգանական կապն ու հաջորդականությունը չեն բացասում այդ պրոցեսի «խախտումը» պատմական զարգացմամբ ետ մնացող առանձին երկրների ժողովուրդների մոտ։ Պատմականորեն անհրաժեշտ չէ, որ նրանք կրկնեն մյուս ժողովուրդների զարգացման անցած փուլերը՝ մեկուսի հասնեն քաղաքակրթության ժամանակակից մակարդակին, չօգտագործեն մարդկության դարավոր փորձը։ Ընդհակառակը, համաշխարհային առաջընթացի ներկա փուլը անկախության ուղին բռնած ժողովուրդներին հնարավորություն է ընձեռում յուրացնելու զարգացած երկրների փորձը, ավելի կարճ

ճանապարհով հասնելու նրանց, շրջանցելու զարգացման այս կամ այն փուլը։

Արդի դարաշրջանը հասարակության զարգացման տարբեր փուլերի յուրատեսակ միագումար է, որտեղ սոցիալիստական և կապիտալիստական երկրների կողքին գոյություն ունեն տոհմատիրական, ճորտատիրական և ստրկատիրական հասարակարգերի մնացուկներ։ Այս անհամաչափությունն առանձին ժողովուրդների շեղում է համայն մարդկության զարգացման ընդհանուր օրինաչափությունից, խախտում սոցիալական սանդուղքի բոլոր աստիճանները։ «Համաշխարհային պատմության զարգացման ընդհանուր օրինաչափությամբ,— գրում էր Լենինը,— բոլորովին չեն բացառվում, այլ, ընդհակառակը, ենթադրվում են զարգացման առանձին ժամանակաշրջաններ, որոնք ներկայացնում են այդ զարգացման կամ ձևի, կամ կարգի յուրատեսակություն» (Երկեր, հ. 33, էջ 567—568)։

Հասարակության մի ֆորմացիայից մյուսին անցնելն ընդհանուր սոցիալական օրենք է, իսկ առանձին ժողովուրդների որևէ հասարակական ֆորմացիայի շրջանցումն ստանում է սպեցիֆիկ բնույթ։ Մարքսիզմի կլասիկները առանձին ժողովուրդների՝ կապիտալիզմի շրջանցման հնարավորությունը կապեցին պրոլետարական հեղափոխության հետ, համարեցին դրա անբաժանելի մասը։ Ելնելով պատմության մատերիալիստական ըմբռնումից նրանք եզրակացրին, որ կապիտալիզմի շրջանցմամբ սոցիալիզմին անցնելը բխում է հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքից, ներքին և արտաքին նպաստավոր գործոնների առկայությունից, որտեղ հիմնականը տվյալ ժողովրդի սոցիալ-տնտեսական առաջընթացի աստիճանն է. սակայն հասարակական կյանքի առանձին երևույթները բացատրելիս չի կարելի ժխտել արտաքին գործոնի դերը, առանց որի անհնար է պատկերացնել որևէ հասարակարգի շրջանցում։ Արտաքին գործոնը այդ պրոցեսը արագացնող հանգամանք է, որը ցույց է տալիս կապիտալիզմը շրջանցող երկրի սոցիալական զարգացման ուղղությունը։ Շնորհիվ հասարակության զարգացման ներքին ու արտաքին պայմանների միասնության ռեալ հնարավորություններ են ստեղծվում որևէ սոցիալական առաջընթացի արագացման համար։

Մինչկապիտալիստական հարաբերությունների շրջանակներում գտնվող հետամնաց երկրները կապիտալիզմի շրջանցմամբ կարող են անցնել ավելի բարձր հասարակարգի՝ սոցիալիզմի։ Սոցիալիզմին անցնելու համար անհրաժեշտ են՝ հեղափոխական իրադրության առկայություն, երբ շահագործվող դասակարգերը վճռական գոտեմարտի են բռնվում ընդդեմ ռեակցիայի ու իմպերիալիստական պետությունների, երբ օրակարգի հարց է դառնում դեմոկրատական հեղափոխությունը։ Կապիտալիզմի համընդհանուր ճգնաժամի արդի փուլում երկրի զարգացման համար ներքին ռեալ հնարավորություններ են ստեղծվում, երբ կապիտալիզմը չի նպաստում արտադրաուժերի զարգացմանը, վարկաբեկվել է ժողովրդական մասսաների աչքում։

Կապիտալիստական համապարփակ սիստեմի փլուզումը, սոցիալիզմի միջազգային սիստեմի ձևավորումը, կապիտալիզմի շրջանցման հնարավորությունը համընդհանուր ճգնաժամի արդյունք են, հասարակության զարգացման նոր օրինաչափություն։ Մինչկապիտալիստական հարաբերություններից սոցիալիզմին անցումը մասնավոր, յուրահատուկ օրինաչափությունից արդի դարաշրջանում դառնում է ընդհանուր։

Հայտնի է, որ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը կապիտալիզմի շրջանցման հարցով զբաղվել են շատ ավելի վաղ, քան կարծում են որոշ տեսաբաններ։



Ուսումնասիրելով Ռուսաստանի հասարակական հարաբերությունները, Մարքսը նկատում է, որ համայնական սեփականատիրության ձևը մյուս ժողովուրդների մոտ անհետացել է։ Կապիտալիստական արտադրության հետ իր միաժամանակյա գոյությամբ ճորտատիրական Ռուսաստանը «...հնարավորություն ունի օգտագործելու կապիտալիստական կարգի ողջ դրական նվաճումները, չանցնելով նրա կավդիական կիրճերով», (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 408)։

Ռուսաստանի համար բացի կապիտալիստական ուղուց, Մարքսը հնարավոր էր համարում վերափոխված համայնքի սոցիալիզմի սաղմ դառնալը։ Ռուսական գյուղական համայնքը, նրա կոլեկտիվ տրադիցիաները կփրկեին ռուսական դեմոկրատական հեղափոխությունը, որը, ուղղված լինելով ցարական միջնադարյան բռնակալական կարգերի դեմ, ազդանշան կհանդիսանար Արևմուտքում պրոլետարական հեղափոխության համար (տե՛ս նույն տեղը, էջ 404)։

Ռուսական համայնական հողասեփականատիրության ձևերից սոցիալիզմին անցնելը ռեալ կլիներ միայն այն ժամանակ, երբ զարգացած Արևմտյան երկրների հաղթանակած պրոլետարիատը ֆինանսական, տեխնիկական և և այլ բնույթի անշահախնդիր օգնություն ցույց տար ռուսական (կամ այլ երկրների) գյուղացիությանը։ «Միայն այն ժամանակ, երբ կապիտալիստական տնտեսությունը հաղթահարվի իր հայրենիքում և այն երկրներում, որտեղ նա ծաղկման է հասել... երբ հետամնաց երկրներն այդ օրինակով տեսնեն, թե ինչպես է այդ արվում... Միայն այդ ժամանակ այդ հետամնաց երկրները կարող են վերցնել զարգացման այդպիսի կրճատված ուղու կուրս» (Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի նամակագրությունը ռուս քաղաքական գործիչների հետ, Հայպետհրատ, 1954, էջ 374)։ Սա վերաբերում է ոչ միայն Ռուսաստանին, այլև մինչկապիտալիստական զարգացման աստիճանի վրա գտնվող բոլոր երկրներին ու ժողովուրդներին։

Չի կարելի անցումը մինչկապիտալիստական հարաբերություններից սոցիալիզմին պատկերացնել որպես միօրինակ, պարզ, սխեմատիկ պրոցես։ Սոցիալ-քաղաքական զարգացման մակարդակը, ազգային առանձնահատկությունները, աշխարհագրական դիրքը որոշակիորեն ներգործում են անցման բնույթի, դասակարգային պայքարի ձևերի վրա։ Այս իմաստով Ռուսաստանը ավելի բարենպաստ պայմանների մեջ էր գտնվում, քան Հնդկաստանը, Չինաստանը և մյուս գաղութային ու կիսակախյալ երկրները։ Ռուսաստանը ինքնուրույն, անկախ, գաղութատեր պետություն էր։ Նրա «բնակչության մի մասն արդեն յուրացրել էր կապիտալիստական զարգացման ինտելեկտուալ արդյունքները» (Նույն տեղը) և հասարակական մտքի զարգացումը (սուբյեկտիվ գործոն) այնքան էր հասունացած, որ սոցիալիզմի նախադրյալներ ստեղծելու համար Արևմուտքի հետ հնարավոր էր միաժամանակյա սոցիալական վերափոխումներ անցկացնել, մի բան, որ XIX դարում բացակայում էր գաղութացված ժողովուրդների մոտ։

Կապիտալիզմի շրջանցման և սոցիալիստական հասարակարգին անցնելու հնարավորության մարքսիստական տեսությունը անհարիր է մանրբուրժուական, ուտոպիական հայացքներին։ Տկաչովը, իդեալիզմի դիրքերից բացատրելով հասարակական երևույթները, գտնում էր, որ ռուս գյուղացին, թեկուզ և սեփականատեր, ավելի մոտ է կանգնած սոցիալիզմին, հեղափո-

խական է բնազդով, և Ռուսաստանը մեկուսի կարող է անցնել սոցիալիզմին՝ շրջանցելով կապիտալիզմը (տե՛ս նույն տեղը, էջ 253, 256)։

Բացահայտելով սոցիալիզմի անցման հարցում հետամնաց ժողովուրդներին հաղթանակած երկրների պրոլետարիատի օժանդակության դերը, Մարքսն ու Էնգելսը հեռու էին այն մտքից, թե սոցիալիզմ կառուցող պրոլետարիատը ինչ-որ ձևով իր կամքը պետք է թելադրի հետամնաց ժողովուրդներին։ Ընդհակառակը, ըստ նրանց, օգնությունը պետք է լինի միմիայն փոխադարձ համաձայնությամբ, հետամնաց ժողովուրդների ներքին գործերին չմիջամտելու պայմանով, գեթ վերջիններիս խնդրանքով, առանց քաղաքական պայմանների պարտադրման և առաջադրման։

Քամահրելով այս ամենը, Չինաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությունը, ուլտրահեղափոխական, տրոցկիստական լոզունգների ներքո ձգտում է ամենուրեք և միանգամից «առաջ հրել» հեղափոխությունը։

Մարքսն ու Էնգելսը, մշակելով մինչկապիտալիստական կարգերից սոցիալիզմին անցնելու հնարավորության մատերիալիստական ուսմունքը, այն ժամանակ հնարավորություն չունեին պարզաբանելու այդ պրոցեսի առանձնահատկությունները, մասնակի դրսևորումները։ Դա, հատկապես, երևում է Էնգելսի Կ. Կաուցկուն գրած 1882 թ. սեպտեմբերի 12-ի նամակից։ Էնգելսը գրում էր. «Ինչպիսի սոցիալական և քաղաքական փուլեր պետք է հաղթահարեն այդ երկրները (մինչկապիտալիստական— Ս. Թ.) մինչ սոցիալիստական կազմակերպությանը հասնելը, այդ ուղղությամբ ես կարծում եմ մենք կարող ենք առաջ քաշել միայն բավական ապարդյուն ենթադրություններ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 35, стр. 298)։

Պատմական նոր պայմաններում հասարակական մտքի բոլոր բնագավառներում զարգացնելով մարքսիստական ուսմունքը, Վ. Ի. Լենինը հանդես եկավ Կաուցկու, Սուխանովի և այլոց «արտադրաուժերի», կուլտուրայի զարգացման մինիմում մակարդակ ունենալու տեսությունների դեմ։ Նա ցույց տվեց, որ կուսակցությունն իր ստրատեգիական և տակտիկական գիծը մշակելիս պետք է հենվի ոչ թե դոգմաների վրա, որոնք անհնար են համարում հեղափոխության հաղթանակը արտադրաուժերի և կուլտուրայի զարգացման որոշ մակարդակ չունեցող երկրներում (թեև այդ մակարդակը ոչ ոք չի սահմանել և անհայտ է նրա չափը)։ Ընդհակառակը, սովորեցնում էր Լենինը, հեղափոխության միջոցով է անհրաժեշտ սկսել այդ մակարդակի նախադրյալներ նվաճելը «...իսկ հետո արդեն, բանվորագյուղացիական իշխանության և սովետական հասարակարգի հիման վրա առաջ շարժվել մյուս ժողովուրդներին հասնելու համար» (Երկեր, հ. 33, էջ 569)։

Մինչկապիտալիստական հարաբերություններից սոցիալիզմին անցնելու հնարավորության իրականացման համար ռեալ պայմաններ ստեղծվեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ։ Բազմաթիվ ժողովուրդներ ու երկրներ, որոնք իրենց զարգացմամբ ետ են մնացել պատմության ընդհանուր ընթացքից, ի վիճակի են հաղթահարել այդ դժվարությունները և պատմական կարճ ժամանակամիջոցում հասնել առաջավոր, քաղաքակիրթ երկրների մակարդակին։ Այդ գործում մեծ է սոցիալիզմի համաշխարհային լագերի դերը։ Այն, իր հեղափոխիչ օրինակով, զարգացման նոր, գեղեցիկ հեռանկարներ բացեց իմպերիալիզմի լուծը թոթափած առանձին ժողովուրդների համար, որոնք շահագրգռված են ընթանալ առաջադիմության ուղիով։



Այժմ գաղութային լծից ազատագրված մի շարք երկրներ (ՍԱՀ, ՄԱՀ, Գվինեա, Մալի, Ալժիր, Բիրմա և այլն) ընտրել են զարգացման ոչ-կապիտալիստական ուղին, սոցիալիզմը հայտարարել վերջնական նպատակ։ Ինչ խոսք, զարգացող երկրներում սոցիալիզմին անցնելու ուղին ունի իր յուրահատկությունները։ Այստեղ նացիոնալիզմի դրոշի ներքո ընթացող պայքարի սուր սլաքը հիմնականում ուղղված է գաղութատիրության լծի դեմ։ Իմպերիալիստական տերությունները տնտեսական, քաղաքական, ռասայական մշտական ճնշմամբ ու կեղեքմամբ աշխատել են բարբարոսական մեթոդներով խեղանդամել այդ ժողովուրդներին, վիրավորել ու նվաստացնել նրանց ազգային ինքնասիրությունը, որը և նրանց մոտ նացիոնալիզմ է ծնել՝ ընդդեմ տիրող ազգի մեծապետական շովինիզմի, ռասիզմի։

«**Արթնացած** ժողովուրդների ազատագրական շարժումը շատ երկրներում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— ընթանում է նացիոնալիզմի դրոշի ներքո։ Մարքսիստ-լենինյանները տարբերություն են դնում ճնշված ազգերի նացիոնալիզմի և ճնշող ազգերի նացիոնալիզմի միջև։ Ճնշված ազգի նացիոնալիզմի մեջ կա համադեմոկրատական բովանդակություն, որն ուղղված է ճնշման դեմ, և կոմունիստները պաշտպանում են այն...» (1961, էջ 55)։

Ազատագրված երկրների առաջադեմ դասակարգերը, որոնք ընթանում են զարգացման ոչ-կապիտալիստական ուղիով, համախմբված են ազգային ճակատում և կազմում են ազգային դեմոկրատիայի պետություն։ Վերջինս ոչ թե մի դասակարգի դիկտատուրա է, այլ ազգային բուրժուազիայի, գյուղացիության և պրոլետարիատի քաղաքական իշխանությունն է՝ ընդդեմ ներքին ու արտաքին թշնամիների։ Ընդհանուր թշնամու դեմ պայքարելու համար երկրի ողջ պրոգրեսիվ ուժերը հանդես են բերում կամքի միասնություն։ Ազգային դեմոկրատիայի պետությունը մինչկապիտալիստական հարաբերություններից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի քաղաքական իշխանության ձև է, այն ստատիկ վիճակում չի գտնվում և, դեմոկրատական, ազգային-ազատագրական հեղափոխությունը սոցիալիզմի վերաճելու ընթացքում, ազգային բլոկի առաջավոր դասակարգերի դիկտատուրայից կարող է վերաճել պրոլետարիատի դիկտատուրայի։ Տարբեր դասակարգերի քաղաքական իշխանության գոյությունը ցույց է տալիս, որ այդ վիճակը երկար չի կարող մնալ։ Ազատագրված երկրների դասակարգային փոխհարաբերությունը, միջազգային իրադարձությունների զարգացումը նպաստում են առաջադիմական սոցիալական վերափոխումներին։ Հատկանշական է նաև այն, որ պրոլետարական կուսակցությունների դեռևս ոչ-ուժեղ դիրքը, ազգային բուրժուազիայի ոչ-հետևողական դեմոկրատական գործելակերպը ասպարեզ են բերել մանրբուրժուազիայի, ինտելիգենցիայի, բանակի ներկայացուցիչներին (Նե Վին, Գամալ Աբդել Նասեր, Մոդիբո Քեյթա և ուրիշներ), որոնք չեն ղեկավարվում գիտական սոցիալիզմի տեսությամբ, բայց իրենց նպատակը համարում են սոցիալիզմի կառուցումը։ Այդ հանգամանքը որոշ հեղինակների մոտ շփոթություն է առաջացնում, որոնք ազգային դեմոկրատների գործունեությունը նույնացնում են կոմունիստական կուսակցությունների գործունեությանը (տե՛ս «Коммунист», 1966 г., № 1, стр. 110—114)։

Այդ գործիչների հայացքները զարգանում են երկրի սոցիալ-տնտեսական հարաբերությունների փոփոխմանը զուգընթաց։ Նրանք հանդես են գալիս սոցիալական անարդարությունների դեմ։ «Իրենց զարգացման մեջ,— գրել է Վ. Ի. Լենինը,— հետամնաց կամ հետ մնացող տնտեսական հարաբերություն-

ները շարունակ տանում են դեպի բանվորական շարժման այնպիսի կողմնակիցների երևան գալը, որոնք յուրացնում են... նոր աշխարհայեցողության առանձին մասերը միայն, կամ առանձին լոզունգները, պահանջները, ի վիճակի չլինելով վճռականորեն իրենց կապերը խզել ընդհանրապես բուրժուական աշխարհայեցողության և մասնավորապես բուրժուա-դեմոկրատական աշխարհայեցողության բոլոր տրադիցիաներից» (Երկեր, հ. 16, էջ 454—455)։

Զպետք է անտեսել նաև այն տարբերությունը, որ գոյություն ունի սոցիալիզմի դիրքերին հարած հեղափոխական գործիչների և աֆրիկյան, արաբական, ասիական «սոցիալիզմ» դավանողների միջև։ Վերջիններիս մերկացնելը, նրանց բուրժուական էության քննադատությունը անհրաժեշտ է՝ գիտական սոցիալիզմին անհարիր, մասսաներին մոլորեցնելու դեմագոգիկ «իզմերի» վտանգը վերացնելու համար։ Այսպես, «Հնդկական սոցիալիզմի» ջատագով դոկտոր Սամուրնանանդը քարոզում է ստեղծել կապիտալիստական հասարակարգ՝ առանց կապիտալիստների և դասակարգային պայքարի։ Նա, հակադիր դասակարգերի դաշնակցության, սոցիալիզմին անցնելու կաուցկիական թեզն է առաջադրում.

«Հնարավոր չէ՞ արդյոք կապիտալիստին մեկուսացնել կապիտալիզմից,— հարցնում է նա ու պատասխանում.— ես կարծում եմ, դա հնարավոր է։ Կարելի է ներդնել կապիտալ, արդյունաբերական ձեռնարկատեր լինել, բայց չշահագործել ուրիշներին...» («Коммунист», 1966, № 5, стр. 110)։

Զարգացման ոչ կապիտալիստական ուղիով ընթացող երկրները, ազգայնացնելով ներքին և արտաքին ձեռնարկատերերի մասնավոր սեփականությունը, զարկ են տալիս պետական սեկտորին արդյունաբերության մեջ և կոոպերացմանը գյուղատնտեսության, առևտրի ու արհեստի բնագավառներում, որը զարգացման տվյալ էտապի տնտեսական հիմքն է։ Տնտեսական ոլորտի այդ վերափոխումները սոցիալիստական չեն։ Մասնավոր սեկտորը դեռևս գոյություն ունի, այն գտնվում է սահմանափակման շրջանակներում։ Ու թեև չկան սոցիալիստական արտադրահարաբերություններ, բայց առկա է դրանց ստեղծման տենդենցը, բուրժուական արտադրահարաբերությունները աստիճանաբար սահմանափակվում են և արտադրական նոր բազիս ստեղծելու խնդիրը գտնվում է լինելության պրոցեսում։

Ազատագրված երկրների զարգացման ոչ-կապիտալիստական ուղին սոցիալիզմի անցման կարևոր փուլ է, որտեղ աստիճանաբար ստեղծվում են սոցիալիզմի հոգևոր և նյութական նախադրյալները։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը պատնեշում է նրանց իմպերիալիստական տերությունների տնտեսական ու քաղաքական ոտնձգություններից և իր նյութական ու կուլտուրական ակտիվ օգնությամբ սոցիալիզմին (առանց վերապրելու կապիտալիզմի փուլը) անցնելու օրինակ է ցույց տալիս։

ՊԵՏՐՈՍՅԱՆ Հ. Ս.

# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱԶԱՏ ԺԱՄԱՆԱԿԸ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Հասարակության անդամների ազատ ժամանակը, արտադրության մեջ ունեցած իր դերով, սոցիոլոգիական և տնտեսական կարևոր կատեգորիա է։

Ազատ ժամանակը ընդգրկում է աշխատուժի ընդլայնված վերարտադրության և հասարակության անդամների կուլտուրական պահանջմունքների բավարարման գործոնները։

Արդի բուրժուական սոցիոլոգիան մեծ տեղ է տալիս ազատ ժամանակի պրոբլեմի ուսումնասիրմանը։ Միացյալ Նահանգներում, Արևմտյան Եվրոպայի շատ երկրներում բազմաթիվ գիտահետազոտական և ուսումնական հաստատություններ սիստեմատիկաբար զբաղվում են այդ հարցերով։ Նույնիսկ Յունեսկոյին կից (1959 թ.) ստեղծվել է ազատ ժամանակի սոցիալական պրոբլեմների ուսումնասիրման միջազգային խումբ։

Բուրժուական սոցիոլոգիայի ակտիվ հետաքրքրությունն ազատ ժամանակի նկատմամբ հեռու է մարդասիրությունից և հետապնդում է շահադիտական նպատակներ։ Այդ պրոբլեմի հետ առնչվող փաստական տվյալների միջոցով բուրժուական սոցիոլոգներն ուսումնասիրում են բնակչության ժամանցի և հանգստի ոլորտն ընդգրկող հարցերը։ Ամերիկյան սոցիոլոգ Ա. Վ. Զելոմեկը գրում է, որ ազատ ժամանակի ուսումնասիրումը կենսական է ինչպես արդյունաբերողների, այնպես և սոցիոլոգների համար։ Արդյունաբերության համար այն գիտականորեն որոշում է, թե գործունեության որ տեսակներն են անհրաժեշտ, և որոնք պետք է կրճատել։ Հետևաբար, այն կենսական նշանակություն ունի արտադրության զարգացման համար։ Մյուս կողմից՝ բուրժուական սոցիոլոգիան ջանում է ազատ ժամանակը օգտագործել որպես գաղափարապես ներգործելու միջոց, փնտրել նոր եղանակներ աշխատավորությանը իրենց ազդեցության տակ գցելու համար։ Արևմտագերմանական սոցիոլոգ Հեյնրիխ Կլիֆիշը պահանջում է, որ պետությունը չբավարարվի բանվորների ազատ ժամանակի վրա միայն անուղղակի ազդելով, քանի որ բանվորների կողմից ինքնուրույն ուղիներով ազատ ժամանակի օգտագործման ձևերի որոնումները ցանկալի արդյունք չեն տալիս։ Այդ նպատակով արվող ծախսերը բուրժուական երկրներում պատկառելի մի թիվ են կազմում։ Դրա համար նա գտնում է, որ բանվորների ազատ ժամանակի օգտագործման վրա հատկապես պետք է ներգործեն հասարակական այնպիսի ինստիտուտներ, ինչպիսիք

են՝ պետությունը, եկեղեցին, կուսակցությունները, արհմիությունները, զա-
նազան հասարակական ընկերություններ, միավորումներ։

Ընդգծելով եկեղեցու դերն այդ գործում, ժամանակակից ֆրանսիական
սոցիոլոգ Գեորգես Հուրդենը նկատում է, որ հասարակության անդամնե-
րը ազատ ժամանակը տնօրինելիս ավելի մեծ մաս են հատկացնում եկեղե-
ցուն, քան, ասենք, թատրոնին։ Իտալացի սոցիոլոգ Ջիաննո Տոտտին վկա-
յում է, որ Իտալիայում կաթոլիկական եկեղեցական կազմակերպություններն
ունեն մեծ թվով ակումբներ, կինոթատրոններ, գրադարաններ, սպորտ միա-
վորումներ, սպորտային ճամբարներ։ Իսկ անգլիական եկեղեցին մարդկանց
ուշադրությունը գրավելու համար կազմակերպում է զվարճալիքների ակումբ-
ներ, պարահանդեսներ, բիլիարդանոցներ, կինոլեկտորիումներ, գործում են
սպորտային խաղերի կոմիտեներ, խաղատների մեծ ցանց։

Բուրժուական սոցիոլոգիայի նման հետաքրքրասիրությունը լուսաբանվող
հարցի նկատմամբ գաղափարական ներգործման ամբողջական համակարգ է,
աշխատավորությանը քաղաքականության ոլորտից մեկուսացնելու բարդ մե-
խանիզմ։ Այս հարցին նվիրված բուրժուական հեղինակների աշխատություն-
ները նույնատիպ են, լի իրականությունը գունազարդող կեղծիքներով։

Բուրժուական սոցիոլոգիան աշխատավորների ազատ ժամանակի փաս-
տացի դրությունը սքողելու նպատակով բացարձակապես նույնացնում է ար-
տաաշխատանքային և ազատ ժամանակի տարբեր հասկացությունները։ Հայտ-
նի է, որ արտաաշխատաժամանակը օրվա աշխատաժամանակից դուրս այն
հատվածն է, որը պայմաններ է ստեղծում և ապահովում աշխատուժի ինչպես
պարզ, այնպես և ընդլայնված վերարտադրության համար։ Մինչդեռ, ազատ
ժամանակը արտաաշխատաժամանակի այն մասն է միայն, որը պայմաններ
է ստեղծում և ապահովում աշխատուժի միմիայն ընդլայնված վերարտադրու-
թյունը (այսինքն՝ ողջ արտաաշխատաժամանակից հանած տնային աշխա-
տանքի և ինքնասպասարկման՝ աշխատանքի վայրը գնալ-գալու, քնելու, սնվե-
լու համար կատարվող ժամանակի ծախսումները)։

Այսպիսով, տարբեր են արտաաշխատանքային և ազատ ժամանակների
նշանակությունը մարդկանց անձնական կյանքի և հասարակության համար։
Այնինչ, ժամանակակից բուրժուական սոցիոլոգիան փորձում է բովանդակու-
թյամբ և ծավալով տարբեր այդ երկու հասկացությունները նույնացնել,
թաքցնել կապիտալիզմի պայմաններում աշխատավորների ունեցած ազատ
ժամանակի իսկական չափերը։ Այս առնչությամբ Հեյնրիխ Կլիֆիշը գրում է,
որ ազատ ժամանակը բնորոշող ընդհանուր հասկացություն է, որի ընթացքում
մարդը ընդգրկված չէ աշխատապրոցեսի ոլորտում։ Արհեստականորեն ավելի
ուռճացնելով աշխատավորների ազատ ժամանակը, Զիգֆրիդ Բրաունը դրան
է վերագրում նաև կապիտալիզմի էությունից բխող ժամանակի կորուստները՝
գործազրկությունը, գործադուլները, քաղաքական ցույցերը, արտադրական
տրավմատիզմը, հիվանդությունները, աշխատանքային որակավորումը կորց-
նելը և այլն։ Իհարկե, միայն Բրաունը չէ, որ նման «գիտական» մոտեցում
ունի բանվորների ազատ ժամանակի հարցին։

Կապիտալիզմի պայմաններում աշխատավորների ազատ ժամանակի օգ-
տագործման օրինաչափություն է ազատ ժամանակի և մնացած արտաաշխա-
տաժամանակի միջև եղած անտագոնիստական հակադրությունը։ Աշխատա-
վորների արտաաշխատաժամանակի երկու հիմնական խմբերի միջև կապիտա-
լի աշխարհում մշտապես գործում են երկու հակադիր տենդենց։ Պարզ վերար-



տադրության համար օգտագործվող ժամանակը աշխատանքի լարվածությանը
զուգընթաց անընդհատ աճում է, որի հետևանքով բանվորների ֆիզիկական ու
հոգևոր ուժերը հյուծվում են, սպառվում և հարաբերականորեն կրճատվում է
արտաաշխատաժամանակի մյուս մասը՝ ազատ ժամանակը։ Սակայն աշխա-
տավորները ժամանակակից տեխնիկական բարդ սարքավորումներով հա-
գեցված արտադրությունից դուրս չնետվելու համար աշխատում են զբաղված
ժամանակից կտրել ու նվիրել իրենց որակավորման բարձրացմանը, ընթերցա-
նությանը, ինքնակրթությանը, նոր գիտելիքներ ձեռք բերելուն, այսինքն՝
ավելացնել ազատ ժամանակը։ Ուստի, արտաաշխատաժամանակի այս երկու
խմբի միջև հակադիր հարաբերություններ են ստեղծվում։ Զբաղված ժամա-
նակը մշտապես տատանվում է անընդհատ աճի տենդենցով, իսկ ազատ ժա-
մանակը՝ անընդհատ կրճատման։ Ըստ ֆրանսիական գիտնականների տվյալ-
ների, Փարիզի բանվորներին տրված այն հարցին, թե նրանք ազատ ժա-
մանակ ունե՞ն արդյոք, 60 տոկոսը պատասխանել են. «Այո՛, ընդամենը՝ 1,0—
1,5 ժամ, 15 տոկոսը՝ ո՛չ, 25 տոկոսը՝ հազվադեպ՝ շաբաթը 1,2 անգամ»։

1960 թ. տվյալներով Վորկինգտոն, Վաուկսխիլ, Դունլոպ և Մյուլլարդ քա-
ղաքների բանվորների 40 տոկոսը ազատ ժամանակ չունենալու պատճառով
տասնհինգ գիրք չեն կարդում, ստիպված են բավարարվել իրենց երեխա-
ների գրքերն ու տետրակները կարդալով։

Ֆրանսիական գիտնական Ժանինի Լարրուեյի տվյալներով, նրա կողմից
1957 թ. հետազոտված Տուլուզի մետաղագործների 29 տոկոսը ոչինչ չէին
կարդում, 33 տոկոսը՝ երեք ամիսը մեկ անգամ են միայն հաճախում կինո,
իսկ թատրոն, առհասարակ չի հաճախում հետազոտվածների 76 տոկոսը։

Համաձայն վիճակագրական մի այլ հաշվումների՝ Փարիզի երիտասարդ
բանվորների մեծ մասը 1957 թվականին ազատ ժամանակ չունենալու պատ-
ճառով թերթ և ամսագիր չի կարդում, իսկ որոշ տոկոսը, առհասարակ ոչինչ
չի կարդում։ Երաժշտասերների 76 տոկոսը ժամանակի սղության պատճառով
6 ամիս չի նվագել, իսկ 31 տոկոսը՝ չի եղել համերգասրահներում։

Այս ամենից հետո արտառոց կեղծիք է բուրժուական սոցիոլոգների այն
մտայնությունը, թե բանվորները ներկայումս ազատ ժամանակի այնպիսի
ավելցուկ ունեն, որպիսին նրանք երբեւիցե չեն ունեցել։

Ամերիկյան ժամանակակից սոցիոլոգ Մաքս Կապլանն իր մեծածավալ
գրքում ապացուցում է, թե իբր 1850—1960 թթ. ամերիկյան բանվորների
ազատ ժամանակը օրական «աճել է» 12—18 ժամ։ Սակայն Մաքս Կապլանը
ազատ և արտաաշխատանքային ժամանակը լիովին նույնացրել է և դրա
հետևանքով անցած 90 տարիների ընթացքում տեղի ունեցած արտաաշխա-
տանքային ժամանակի աճը նա մատուցում է որպես ազատ ժամանակի «աճ»։
Մյուս կողմից, Մաքս Կապլանը անտեսում է այն փաստը, որ անցած 90 տա-
րում տեխնիկայի զարգացման շնորհիվ տեղի է ունեցել նաև, աշխատանքի
ինտենսիֆիկացիայի հսկայական աճ, իսկ դա ներկայումս ավելի շատ է հյու-
ծում և սպառում բանվորների ֆիզիկական և հոգևոր ուժերը, իսկ դրանց վե-
րականգնումը ու պարզ վերարտադրությունը բանվորներից ավելի շատ ար-
տաաշխատանքային ժամանակ է պահանջում, քան 1850 թ.։ Իսկ արտաաշխա-
տանքային ժամանակի մյուս մասը կազմող ազատ ժամանակը, անցած 90
տարում գնալով ոչ թե աճել, այլ ընդհակառակը, կրճատվել է։

Ճիշտ չէ նաև ֆրանսիացի սոցիոլոգ Ժոֆֆրե Դումազեդյեն, որը արտա-
աշխատանքային ժամանակի որոշ աճը դիտում է որպես ազատ ժամանակի աճ։

Նա գրում է. երիտասարդ Մարքսի օրոք աշխատաժամանակը գործարաններում շաբաթական 75 ժամ էր։ Մեր օրերի առաջավոր երկրներում աշխատանքային շաբաթը 40—45 ժամ է։ Ժամանակի այս խնայումը համապատասխանորեն և ուղղակիորեն ավելացրել է ազատ ժամանակը։ Ազատ ժամանակի կարծեցյալ «ավելցուկի» գոյությունն ապացուցելու մասին բուրժուական սոցիոլոգների բոլոր այս ճիգերը տենդենցիոզ են։ Դրանով նրանք ուզում են հիմնավորել այն թեզը, թե իբր աշխատանքի ինտենսիֆիկացիայի հետագա զարգացման համար կան պոտենցիալ հնարավորություններ։ Անգլիական «The Statist» ամսագիրը, 1959 թ. նոյեմբերի իր համարում գրում է. Մենք կարծում ենք, որ եթե բանվորներին ընտրության հնարավորություն ընձեռվի շաբաթական 40 ժամ աշխատել ու դրա դիմաց ստանալ 12 ֆունտ ստեռլինգ, կամ աշխատել 48 ժամ և ստանալ 15 ֆունտ, ապա բանվորը անշուշտ, երկրորդը կընտրի։

Կապիտալիզմի պայմաններում աշխատավորների ազատ ժամանակի օգտագործման մյուս օրինաչափությունը՝ հասարակության դասակարգերի, սոցիալական տարբեր խմբերի ու խավերի ազատ ժամանակի օգտագործման անտագոնիստական հակադրություններն են։ Այստեղ ազատ ժամանակի ո՛չ միայն չափերն են տարբեր, այլև օգտագործման եղանակները։

Կյանքից հղփացածները սպանում են ժամանակը, վատնում աշխատող մարդկանց եռանդով ստեղծված արժեքները, դառնում անասնական կրքերի գերի։ Փոշիացնելով անաշխատ միջոցներով դիզված միլիոնները, քաղաքակրթվածի դիմակ հագած բորենիները հաճույքի զանազան հնարքներ են ստեղծում։ Ինչպես հաղորդում է «Правда» թերթը, ներկայումս միայն Նյու-Յորքում կան ավելի քան 10,0 հազար բախտագուշակ, ձեռնագուշակ, բացվել է անհավատարիմ ամուսինների մերկացման հատուկ հետաքննչական բյուրո, հաշվվում է ավելի քան 0,5 մլն տնային շնիկ, որոնց սպասարկման համար գործում են հատուկ դերձականոցներ, վարսավիրանոցներ, նկարչասալոններ և նույնիսկ առանձին ռեստորաններ։ Շների համար աղվեսամորթե մուշտակներ են կարում, բրիլյանտներով պատած վզագոտիներ։

Նյու-Յորքում (միայն պաշտոնական տվյալներով) կան 25 հազար թմրադեղամոլներ։ Բացի «ձանձրույթը փարատելու» և կյանքից դերհագենալու զբաղմունքներից, շահագործող դասակարգերն ունեն վակուումը լրացնելու այլ հետաքրքրություններ, որոնք խորթ են աշխատավոր մարդկանց։ Կապիտալը ղեկավարվում է, նպատակը արդարացնում է միջոցները մարդատյացության սկզբունքով։

Այլ է աշխատավորների ազատ ժամանակի օգտագործման պատկերը կապիտալիզմի պայմաններում։ Նրանք ստիպված են հանուն խաղաղության և սոցիալական արդարության ժամանակը նվիրել քաղաքական ցույցերին, միտինգներին, գործադուլներին՝ դասակարգային, տնտեսական քաղաքական պայքարին։

Անգործության և աղքատության անդրդվելի օրենքները աշխատավորներին ստիպում են անասելի ժամանակ կորցնել բորսաները և բանվորական ուժի վարձման գրասենյակները հաճախելու համար, փող աշխատելու հույսով աննպատակ կանգնել գործարանների և ֆաբրիկաների դարպասների առջև և այլն։ Այսպիսով, սոցիալական հակասությունների սրում է առաջանում մի բևեռում, ազատ ժամանակի անսպառ զանգված ու դրա անօգուտ վատնում, մյուսում՝ ազատ ժամանակի սուղ հնարավորություն և այն խնայելու,



ամենաանհրաժեշտ հոգևոր կարիքները և սոցիալական իրավունքները հոգալու համար դժվարին ճիգեր։ Մի բևեռում ֆինանսական ահռելի միջոցներ ժամանակի բազմապիսի օգտագործման համար, մյուսում՝ ամենանվազագույնը, որն անբավարար է անգամ նորմալ կյանքի համար։

Այսպիսով, սոցիալական տարբեր խավերի և դասակարգերի միջև առաջանում են ազատ ժամանակի օգտագործման անտագոնիստական անհարիր հակասություններ։

Կապիտալիզմի պայմաններում աշխատավորների ազատ ժամանակի օգտագործման մյուս օրինաչափությունը դրա օգտագործման ոչ-ռացիոնալ բնույթն է, որը կապիտալիստական հասարակարգում զարգացման բուրժուական հարաբերությունների արդյունք է։ Ինչպես ասվեց, կապիտալիստական երկրների աշխատավորների արտաաշխատաժամանակի բյուջեում ամենամեծ տեղը գրավում են զբաղված ժամանակի ծախսումները, գնալով կրճատվում են ազատ ժամանակի չափերը։ Ազատ ժամանակի ո՛չ միայն զանգվածն է քիչ, այլև նրա օգտագործումը կրում է ոչ-ռացիոնալ բնույթ։ ԱՄՆ-ի Միլպիտաս քաղաքում Ֆորդի գործարանի բանվորների ավելի քան 76 տոկոսը կինո են հաճախել ամիսը միայն մեկ անգամ և ավելի քիչ, իսկ 9 տոկոսը՝ ամենաշատը՝ տարին 1—2 անգամ։

Ժանինի Լարրուեի տվյալներով, Ֆրանսիայում 1957 թ. Տուլուզայի մետաղագործների ավելի քան 31 տոկոսը կինո է հաճախել ամիսը մեկ անգամ, իսկ 38-ը՝ կես տարին միայն մեկ անգամ, 76 տոկոսը թատրոն երբեք չի հաճախել։

Չնայած զվարճանքների «բիզնեսը» և «հանգստի ինդուստրիան» կապիտալիստական երկրներում շատ բարձր մակարդակի վրա է և այդ ասպարեզը կապիտալիստները մեծ շահույթներ են ստանում, այնուամենայնիվ, դրանք մատչելի չեն աշխատավորների լայն մասսաներին։ Այս բնագավառում ֆինանսական դժվարություններից բացի, աշխատավորների առջև ծառանում են նաև մի շարք քաղաքական, ռասայական, կրոնական և այլ պատնեշներ ու խոչընդոտներ։ Նման պայմաններում աշխատավորները, օրվա ընթացքում կատարած չափազանց լարված աշխատանքից ֆիզիկապես և հոգեպես հոգնած ու հյուծված, ունենալով նվազ ֆինանսական միջոցներ, ստիպված են փնտրել այլ զբաղմունքներ, որոնք մատչելի են իրենց գրպանին և միաժամանակ փոքր-ինչ շեղում են նրանց ուշադրությունը աշխատանքային լարված օրվա ծանրությունից։ Մյուս կողմից՝ աշխատավորների ազատ ժամանակին «տիրապետելու» նպատակով նրանց վրա է հարձակվում բուրժուական պրոպագանդիստական մեքենան՝ ներգործման իր բոլոր միջոցներով։ Այդ գործոններով է կազմավորվում աշխատավորների ազատ ժամանակի օգտագործման ոչ-ռացիոնալ ստրուկտուրան։

Չնայած բուրժուական սոցիոլոգիան հասարակության անդամների ազատ ժամանակի պրոբլեմին մեծ ուշադրություն է նվիրում, սակայն, այն ծառայում է բուրժուազիայի շահերին և չի բացահայտում աշխատավորների ազատ ժամանակի փաստացի վիճակը կապիտալիզմի օրոք, կոծկում է նրա անբուժելի խոցերն ու արատները։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՀԱՍՐԱԹՅԱՆ Ջ. Հ.

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՍԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Անցյալ տարի ՀԿԿ կազմակերպությունները նշանակալի գործունեություն ծավալեցին կուսակցության շարքերը երկրի լավագույն մարդկանցով համալրելու նպատակով։ 1967 թ. հանրապետությունում ՍՄԿԿ շարքերն են ընդունվել 3.867 անդամ և 4329 անդամության թեկնածու, որոնք հիմնականում առաջավոր բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականության աչքի ընկնող ներկայացուցիչներ են։

Այժմ, երբ կուսակցությունը ժողովրդի ողջ ուժերն ու եռանդը նպատակամղում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, կոմունիստական հասարակական հարաբերությունների կատարելագործմանը և նոր մարդու դաստիարակմանը, ողջ աշխարհում խաղաղության և համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդմանը՝ կուսշարքերի նորմալ աճն ու ամրապնդումը կարևոր հարց է։

ՀԿԿ շատ քաղկոմներ, շրջկոմներ և սկզբնական կազմակերպություններ պատշաճ հոգատարություն են ցուցաբերում կուսակցության որակական կազմի բարելավմանը։ Դրա փայլուն ապացույցն են կոնկրետ փաստերը։ Այժմ ՀԿԿ-ն իր շարքում միավորում է 119.956 անդամ և անդամության թեկնածու։ Ընդ որում, նրանցից 36.745-ը բանվոր են, 29.560-ը՝ գյուղացի, որոնց բացարձակ մեծամասնությունն աշխատում է արտադրության մեջ։

Վերջին տասը տարում, հանրապետության կուսկազմակերպության շարքերն աճել են 44.427 հոգով կամ 59,7 տոկոսով, ստեղծվել ավելի քան 900 սկզբնական կուսկազմակերպություն։ ՀԿԿ շարքերում գնալով աճում է բանվորական կորիզը։ Այսպես, եթե 1965 թ. բանվորները կուսակցության շարքերն ընդունվածների 37,7 տոկոսն էին, ապա 1967 թ. 47,1, այս տարվա առաջին եռամսյակում՝ 42,3 տոկոսը։

Հանրապետության կուսակցական կազմակերպության որակական կազմի բարելավումն արտահայտվում է նաև կրթության ասպարեզում։ Այժմ ամբողջ հանրապետության կոմունիստների 59,1, իսկ Երևանի կազմակերպությունում՝ 70 տոկոսը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Այս թվերը, միաժամանակ, վկայում են նաև հանրապետության աշխատավորության ընդհանուր կուլտուր-կրթական մակարդակի շեշտակի վերելքի մասին։



Հայաստանի կոմկուսի կազմն արտացոլում է հին և նոր, երիտասարդ կոմունիստների սերտ համագործակցությունը։ Այստեղ կուսակցության վետերանների, Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մարտնչած կոմունիստների հետ ձեռք-ձեռքի աշխատում են մինչև 40 տարին բոլորած կուսանդամ-թեկնածուներ, որոնք կազմում են բոլոր կոմունիստների ընդհանուր թվի 45,4 տոկոսը։

Ընդունելության, երիտասարդ կոմունիստների դաստիարակման, արտադրության մեջ նրանց ուժերի ճիշտ տեղաբաշխման տեսակետից ուշադրության արժանի է Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսկազմակերպությունը (կոմիտեի քարտուղար Ա. Գուրունյան)։ Այն իր շարքերում միավորում է 600 մարդ։ Այստեղ ընդունելության գործն այնպես է կազմակերպված, որ բոլոր արտադրամասերում միշտ լինեն կուսակցական կազմակերպություններ։ Նոր ընդունվածները ժամանակին ներգրավվում են քաղուսուցման ցանցում, նրանց սիստեմատիկաբար հանձնարարություններ են տրվում և ստուգվում դրանց կատարումը։ Ընդ սմին, հատուկ ուշադրություն է նվիրվում բանվորներին, հատկապես առաջատար մասնագիտություն ունեցողներին, կուսակցության մեջ ընդունելու հարցին։ Այսպես, օրինակ, 1967 թ. առաջին կիսամյակում գործարանային կուսկազմակերպությունը ՍՄԿԿ շարքերն է ընդունել 57 հոգի, որոնցից 49-ը (86 տոկոսը) առաջավոր բանվոր են, 8-ը ինժեներատեխնիկական աշխատող, 16-ը (28 տոկոսը)՝ կանայք։

Սակայն կան առանձին կուսկազմակերպություններ, ուր ուժեղացնելու փոխարեն թուլացրել են պահանջկոտությունը նոր ընդունվողների նկատմամբ, անբավարար են զբաղվում կոմունիստների քաղաքական ուսուցման և դաստիարակության, նրանց գաղափարական կոփման հարցերով։ Թերևս դա է պատճառը, որ 1967 թ. հանրապետությունում ՍՄԿԿ շարքերից վտարվել են 247 կուսանդամ և 22 կուսանդամության թեկնածու։ Հատկանշական է, որ կուսակցությունից վտարվածների շրջանում գնալով նվազում է բանվորների և կոլտնտեսականների թիվը։

Որոշ շրջկոմներ և սկզբնական կուսկազմակերպություններ երբեմն ՍՄԿԿ շարքերն են ընդունում առանց տվյալ անձնավորության քաղաքական, գործնական և բարոյական հատկությունների մանրակրկիտ ուսումնասիրման։ Օրինակ, 1965 թ. հոկտեմբերին Արարատի (նախկին Վեդու) շրջկոմը հաստատել է «Գյուղշին» տրեստի № 3 շինվարչության կուսկազմակերպության որոշումը՝ կուսակցության հանդեպ անազնիվ լինելու համար Ռ. Ս. Մեսրոպյան-Թարվերդյանին կուսակցությունից հեռացնելու մասին։

Ռ. Ս. Մեսրոպյանը (նախկինում Ռ. Ս. Թարվերդյան) 1953 թ. վտարվել է կուսշարքերից կուսակցությանը խաբելու (ՍՄԿԿ շարքերն ընդունվելիս նա թաքցրել է իր դատվածությունը՝ խուլիգանության, կեղծ ճանապարհով միջնակարգ դպրոցի ավարտական վկայական ձեռք բերելու համար) և իր թեկնածուական քարտը կողմնակի մարդկանց վստահելու համար։ Տարիներ են անցել, Ռ. Ս. Մեսրոպյանը, չփոխելով իր վերաբերմունքը կյանքի և աշխատանքի նկատմամբ, նորից է դիմել կուսակցության շարքերն ընդունվելու համար։

Սկզբնական կուսկազմակերպությունը, առանց խորապես ճանաչելու Մեսրոպյանին, կուսակցության մեջ է ընդունել նրան, իսկ Երևանի 26 կոմի-

սարների շրջկոմը 1964 թ. ապրիլին հաստատել է սկզբնական կուսկազմակերպության որոշումը։

Նման փաստերը, որքան էլ քիչ լինեն, որոշակիորեն բնութագրում են առանձին երաշխավորող կոմունիստների, սկզբնական կուսկազմակերպությունների և շրջկոմների անփույթ վերաբերմունքը ՍՄԿԿ շարքերի ընդունելության կարևոր գործին։ Անհրաժեշտ է այս ամենից լուրջ հետևություն անել, քանի որ կոմունիստի կոչման անարժան մարդկանց ՍՄԿԿ շարքերն ընդունելու, նույնիսկ եզակի փաստերը վնասում են կուսակցության հեղինակությանը, թուլացնում նրա մարտունակությունը։ Կուսկազմակերպությունները և երաշխավորող կուսանդամները միշտ չէ, որ կարողանում են կուսակցության շարքերն ընդունվողների մեջ նկատել կարիերիստական, մորթապաշտական ու էգոիստական այլ ձգտումներ, մերժել նրանց։ Այսպես, Ս. Լ. Աղդաշյանը ավարտելով Երևանի գյուղինստիտուտը, ստացել է ինժեներ-մեխանիկի որակավորում, բայց աշխատում է առևտրի ցանցում (Երևանի երրորդ սննդառի № 302 խանութում ավագ վաճառող է)։ 1964 թ. նա դարձավ ՍՄԿԿ անդամության թեկնածու։ Սակայն, 1965 թ. սեպտեմբերին, Օրջոնիկիձեի շրջկոմի բյուրոն Ս. Լ. Աղդաշյանին թեկնածուական ժամկետում իրեն չարդարացնելու համար չընդունեց ՍՄԿԿ անդամ։

Ս. Լ. Աղդաշյանը իրեն չկորցրեց։ 1965 թ. վերջին նա ավագ կոնստրուկտորի պաշտոնով ժամանակավորապես աշխատանքի տեղավորվեց Աշտարակի գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման գիտահետազոտական ինստիտուտում, որտեղ 1966 թ. նոյեմբերին կրկին դիմեց կուսակցության մեջ ընդունվելու համար։ Աշտարակի շրջկոմի բյուրոն, առանց լուրջ ուսումնասիրման, հաստատեց գիտահետազոտական ինստիտուտի կուսկազմակերպության հապճեպ որոշումը։

Ստանալով կուսակցական նոր փաստաթղթեր, 5 ամիս անց առհավետ հրաժեշտ տալով «գիտնականի» իր կարիերային, Ս. Լ. Աղդաշյանը փոխադրվեց Երևան։ Մայրաքաղաքում նա ձեռք բերեց կինոստուդիայի դիրեկտորի՝ տնտեսական մասի գծով տեղակալի պաշտոնը։ Չորս ամսից հետո Ս. Լ. Աղդաշյանը թողեց նաև այդ աշխատանքը, ավելի շահավետ գործ գտնելու հույսով։ Այդպես անցավ երեք ամիս։ Զգալով, որ թեկնածուական ժամկետը շուտով լրանալու է, Աղդաշյանը 1967 թ. հոկտեմբերին շտապ աշխատանքի է անցնում «Հայգյուղշին» տրեստի նյութատեխնիկական մատակարարման գրասենյակում՝ որպես սարքավորումների գծով տեխնիկ։ Երկու ամիս անց, 1967 թ. դեկտեմբերին, այդ հիմնարկության սկզբնական կուսկազմակերպությունը որոշում է Աղդաշյանին ընդունել ՍՄԿԿ անդամ։ Երևանի 26 կոմիսարների կուսշրջկոմի բյուրոն ս/թ հունվարի 30-ին հաստատում է այդ որոշումը։

Հետաքրքրական է, որ և՛ սկզբնական կուսկազմակերպությունը, և՛ շրջանային կոմիտեն անտեսել են Աղդաշյանի աշխատանքային գործունեությունը (տեղից-տեղ չվելը, մասնագիտությամբ չաշխատելը, գյուղ չգնալը և այլն)։

Կուսակցական կազմակերպությունները չպետք է մոռանան Լենինի այն ցուցումը, որ չի կարելի կուսակցության մեջ ընդունել այն մարդկանց, ովքեր տեղի համար են գալիս, նրանց պետք է վտարել կուսակցությունից։

Հանրապետությունում կան այնպիսի սկզբնական կուսկազմակերպություններ, որոնք երկար ժամանակ քանակապես չեն աճում, իրենց շարքերը չեն համալրում լավագույն մարդկանցով։ Այսպես, Արտաշատի շրջանի սկզբնա-



կան կուսկազմակերպություններ ...ս-ը՝ Ազատավանի, Աբովյանի, Այգեստանի, Բուրաստանի և մյուս գյուղերի կուսկազմակերպությունները, որոնք աշխատավորների առաջավոր շատ ջոկատներ ունեն, 1966 թ. բոլորովին ընդունելություն չեն կատարել։

Մի շարք կուսկազմակերպություններում ընդունելության ընթացքում խախտվում է սոցիալական համամասնության պահպանման սկզբունքը։ Դա է պատճառը, որ 1967 թ. Երևանի արդյունաբերական և շինարարական ձեռնարկություններում բանվորները կազմում են բոլոր աշխատողների 76 տոկոսը, իսկ քաղաքային կուսկազմակերպության՝ 21,3։ Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում բանվորները բոլոր աշխատողների ընդհանուր թվի 72 տոկոսն են, իսկ գործարանի կոմունիստների ընդհանուր թվի 47 տոկոսը, կոմպրեսորային գործարանում, համապատասխանաբար՝ 70 ու 30 տոկոս և այլն։

Նույնը կարելի է ասել գյուղական որոշ կուսկազմակերպությունների մասին։ 1967 թ. կուսակցության շարքերը ընդունվածների թվում էջմիածնի շրջանային կուսկազմակերպությունում կոլտնտեսականները 19 տոկոս են կազմել, Կամոյում՝ 14,3, Արթիկում՝ 14,7, Ալավերդում՝ 6,4 տոկոս։ Այս երևույթը ամենևին նորմալ չէ։

Կուսակցական կազմակերպությունները ընդունելության ժամանակ պետք է ղեկավարվեն ՍՄԿԿ կանոնադրությամբ և Կենտկոմի համապատասխան ցուցումներով։ Այդպիսի մոտեցումն ինքնին նոր ընդունվողների մեջ կուսակցական խիստ կարգապահություն կպատվաստի։

Հանրապետությունում ժամկետանց կուսթեկնածուները կազմում են բոլոր թեկնածուների 15,7 տոկոսը։ Դա միանգամայն անհանդուրժելի է։ Ժամկետանց թեկնածուական ստաժի փաստը հետևանք է ոչ միայն կուսթեկնածուների անփութության, այլև սկզբնական կուսկազմակերպությունների թույլ աշխատանքի, մարդկանց նկատմամբ նրանց անուշադիր վերաբերմունքի։

Կան նաև այնպիսի կուսկազմակերպություններ, որտեղ մոռանում են, որ կոմերիտմիությունը կուսակցության աճի հիմնական ռեզերվն է և վատ են զբաղվում կոմերիտականներին ՍՄԿԿ շարքերը ներգրավելու հարցով։ Ղափանի շրջանում 1967 թ. կուսակցության շարքերն են ընդունվել ընդամենը 11 կոմերիտական (բոլոր ընդունվածների 14 տոկոսը)։ Մինչդեռ այստեղ միայն նյութական արտադրության ոլորտում աշխատում են 3189 կոմերիտական, որոնցից շատերը արտադրության առաջավորներ են։ Գրեթե նույնն է դրությունը Ալավերդու, Աշտարակի, Հրազդանի, Հոկտեմբերյանի և Մեղրու շրջաններում։

Առանձին կուսկազմակերպություններ անհարկի ձգձգում են կոմերիտական կոմիտեների կողմից կուսակցության շարքերը երաշխավորված պատանիների և աղջիկների գործերի քննարկումը, իսկ երբեմն առանց հիմնավորված պատճառի մերժում։

Կոմերիտականին ՍՄԿԿ շարքերը չընդունելու, նրան մերժելու հարցերը, համապատասխան կոմերիտկազմակերպությունների ղեկավարների մասնակցությամբ, սկզբնական կուսկազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմները պետք է հանգամանորեն ուսումնասիրեն և պատշաճ հետևություններ անեն։ Ինչ խոսք, դա կբարձրացնի երաշխավորություն տվող կոմերիտկազմակերպությունների պատասխանատվությունը, նրանց կսովորեցնի ճիշտ հետևություններ անել սխալներից։

Լուրջ թերություններ կան նաև կանանց կուսակցության շարքերը ընդունելու գործում։ Կանայք 1957 թ. հունվարի 1-ին կազմում էին հանրապետության կոմունիստների ընդհանուր կազմի 20,6 տոկոսը, 1968 թ. հունվարի 1-ին՝ 18,1 տոկոս։ Թեպետ ամեն տարի ավելի ու ավելի մեծ թվով կանայք են ընդունվում ՍՄԿԿ շարքերը, բայց կոմունիստների ընդհանուր թվի մեջ նրանց տոկոսը գնալով իջնում է։ Նույնիսկ այնտեղ, որտեղ կանայք արտադրական կոլեկտիվում բացարձակ մեծամասնություն են կազմում, դրությունը դարձյալ բարվոք չէ։ Այսպես, «Մասիս» ֆիրմայի գլխավոր ֆաբրիկայում կանայք կազմում են բոլոր աշխատողների 70,8 տոկոսը, իսկ սկզբնական կուսկազմակերպությունում ընդամենը 25,3 տոկոս։ «Էլեկտրատռչպրիբոր» գործարանում կանայք համապատասխանաբար կազմում են 50 ու 17 տոկոս և այլն։

Այդ փաստերը խորհրդածության լուրջ առիթ պետք է տան քաղկոմ-շրջկոմներին, սկզբնական կուսկազմակերպություններին և յուրաքանչյուր կուսաշխատողի։ Սովետական կանայք այսօր ոչ միայն ազնիվ ու բարեխիղճ աշխատողներ են, այլև հասարակական ակտիվ գործիչներ, որոնք մասնակցում են հանրապետության և երկրի քաղաքական կյանքին։

Հանրապետության շատ շրջաններում կանայք կազմում են նյութական արտադրության ոլորտում աշխատողների ավելի քան 40 տոկոսը։ Ուստի, առաջավոր կանանց ակտիվորեն կուսակցության մեջ ներգրավելը, կին կադրերի դաստիարակումը, նրանց առաջքաշումը կուսակցական կազմակերպությունների մշտական խնդիրները պետք է լինեն։

Միաժամանակ կուսակցական կազմակերպությունները և նրանց քարտուղարները միշտ պետք է հոգան երիտասարդ կոմունիստների քաղաքական սիստեմատիկ ուսուցման կազմակերպման, նրանց ներկուսակցական կյանքին հաղորդակից դարձնելու, կուսակցական կոնկրետ հանձնարարություններ տալու համար։ Դա հույժ կարևոր է մանավանդ ներկայումս, երբ հանրապետության կուսկազմակերպությունում երիտասարդ կոմունիստները զգալի տոկոս են կազմում։

Այսպիսով, կուսշարքերի աճման ու համալրման հարցը եղել է և պետք է մնա կուսակցության ղեկավար օրգանների ուշադրության կենտրոնում։ Այդ գործում մեծ անելիքներ ունեն սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեները, բյուրոներն ու դրանց քարտուղարները։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման, ՍՄԿԿ կանոնադրության և կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պահանջների անթերի կատարման համար մղվող պայքարին անձնական մասնակցությամբ է որոշվում յուրաքանչյուր կոմունիստի դեմքը, նրա ավանգարդային դերը։

Կուսակցության շրջկոմ-քաղկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է իրենց ողջ գործունեությունը հղեն կոմունիստների շրջանում տարվող աշխատանքի բարելավմանը, նրանց ակտիվության բարձրացմանը, հանուն կուսակցության ծրագրի, ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումների իրականացման։

---

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Վ. Ֆ.

ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար

# ՀԵՆՎԵԼՈՎ ԱԿՏԻՎԻ ՎՐԱ, ԽՈՐՀՐԴԱԿՑԵԼՈՎ ՆՐԱ ՀԵՏ

Աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացումն ու գաղափարական համոզվածության ձևավորումը նրանց քաղաքական և արտադրական ակտիվության կարևորագույն նախապայմանն են։ Նրանք, ովքեր լավ են զինված մարքս-լենինյան աշխարհայացքով, կարողանում են վերլուծել հասարակական երևույթները, կանխատեսել վաղվա օրը, միշտ գտնվում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար պայքարի ավանգարդում, բանիմացությամբ և բարեխիղճ են կատարում իրենց պարտականությունները։

Սակայն մարդկանց քաղաքական դաստիարակությունն այնքան էլ հեշտ գործ չէ։ Մեր երկրի մարդն ամեն կերպ ձգտում է սեփական մտորումներով իմաստավորել հասարակական կյանքի երևույթները, հասարակության զարգացման պրոցեսները, քննադատաբար վերաբերվել այդ երևույթներին և պրոցեսներին։ Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIII համագումարը մեկ անգամ ևս կուսակցության գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հիմնական խնդիրը համարեց՝ հասարակության բոլոր անդամների գիտական աշխարհայացքի, կոմունիստական բարոյականության ձևավորումը, բազմակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակությունը։

Համագումարի առաջադրած այդ խնդիրների լուծումը յուրաքանչյուր կոլեկտիվում ամենից առաջ կախված է սկզբնական կուսակցական կազմակերպության մարտունակությունից։ Այնտեղ, որտեղ սկզբնական կուսակցական կազմակերպությունը կարողանում է ամրապնդել կուսակցական կարգապահությունը, բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, խելացիորեն օգտագործել կուսակցական ակտիվի ուժերը, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բոլոր միջոցները, այնտեղ գործերն ավելի հաջող են ընթանում, այնտեղ լավ է կազմակերպված մարդկանց հետ տարվող աշխատանքը, հաշվի են առնվում ամեն մի աշխատողի բնավորության առանձնահատկությունները, հոգում նրա կարիքները։

Առաջնորդվելով ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով, ՀԿԿ Աբովյանի շրջանային կոմիտեն և նրա բյուրոն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում դաստիա-

րակչական աշխատանքի մակարդակի բարձրացմանը, նրա ձևերի ու մեթոդ-
ների կատարելագործմանը։
Անցած տասնամյակում գրեթե լրիվին փոխվել է մեր շրջանի դեմքը,
ստեղծվել են մի շարք նոր բանվորական ավաններ, բուռն թափով շարունակ-
վում է Աբովյան քաղաքի շինարարությունը, որտեղ կառուցվում են արդյու-
նաբերական բազմաթիվ ձեռնարկություններ։ Այս նոր քաղաքում այժմ բնակ-
վում են շուրջ քսան ազգությունների ներկայացուցիչներ՝ իրենց առանձնա-
հատուկ սովորույթներով ու ավանդույթներով։ Եթե դրան ավելացնենք այն,
որ շրջանի արդյունաբերական, շինարարական շատ կոլեկտիվներ, փաստորեն
նոր են կազմակերպվում ու ձևավորվում, իսկ բանավաններում, հատկապես
բուն Աբովյան քաղաքում, աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկ-
ման բազմաթիվ օբյեկտների կառուցումը դեռ չի ավարտված, ապա պարզ կլի-
նի, թե ինչպիսի մեծ դժվարություններ են ծառացած բնակչության շրջանում
քաղդաստիարակչական աշխատանքի ծավալման, նրանց կուլտուր-կենցաղա-
յին սպասարկման բնագավառներում։
Հաղթահարելով այդ դժվարությունները ՀԿԿ կուսշրջկոմը, սկզբնական
կուսակցական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները
ավելի մոտիկից են զբաղվում աշխատավորների քաղաքական-գաղափարական
դաստիարակության, նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման
հարցերով։ Անցած 2—3 տարում զգալիորեն ամրապնդվել է կուսակցական
ու պետական կարգապահությունը, բարձրացել է աշխատավորության, հատ-
կապես երիտասարդության հետ տարվող քաղաքական-դաստիարակչական
աշխատանքների մակարդակը։
Շրջկոմի բյուրոն սիստեմատիկաբար լսում և քննարկում է սկզբնական
կուսակցական կազմակերպությունների հաշվետվությունները, նրանց ղեկու-
ցումները՝ կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրական պահանջների կա-
տարման, ակտիվի ուժերի օգտագործման, աշխատանքի կազմակերպման,
առաջավոր փորձի տարածման, որոշումների կատարման և այլ հարցերի վե-
րաբերյալ, ղեկավարություն և ուղղություն տալիս նրանց համակողմանի
գործունեությանը։
Իր գործունեության ընթացքում շրջկոմն ավելի մեծ ուշադրություն է
նվիրում կուսակցական, սովետական և տնտեսական ակտիվի, բոլոր կոմու-
նիստների գաղափարական դաստիարակության, կոլեկտիվ ղեկավարության
կազմակերպման և այլ կարևորագույն հարցերին։ Հատկապես լուրջ գործ է կա-
տարվում կուսակցական-սովետական ընտրովի օրգաններում առաջադրված
մարդկանց ակտիվության բարձրացման ասպարեզում։ Շրջանի ողջ ակտիվի
մասնակցությամբ են լուծվում համաշրջանային կարևոր շատ միջոցառումներ։
Տասնյակ կոմունիստներ շրջկոմի և զանազան կուսակցական հանձնաժողով-
ների անդամներ են։ Շրջկոմի պլենումում և բյուրոյի նիստերում քննարկվող
հարցերը, որպես կանոն, նախապատրաստվում են այդ ակտիվի ուժերով։ Դա
բարձրացնում է յուրաքանչյուր կուսակցական ակտիվիստի պատասխանա-
տվությունը՝ հանձնարարված գործի համար։
Անցած ուսումնական տարում շրջկոմը 36 ղեկավար աշխատողի գործուղել
է սովորելու ՀԿԿ Երևանի քաղկոմին կից երեկոյան մարքսիզմ-լենինիզմի
համալսարանում։ Բացի դրանից, շրջանում գործել են երկամյա և քառամ-
յա 115 քաղդպրոց, 37 տեսական սեմինար, որոնցում սովորել են 2684 կոմու-
նիստ և անկուսակցական ակտիվիստ։ Կոմերիտական ուսուցման ցանցը բաղ-



կացած է 42 զանազան քաղխմբակներից, որտեղ սովորել են շուրջ 1500 կո-
մերիտական և արտամիութենական երիտասարդ։
Բովանդակալից են անցնում պարապմունքները շրջանի կուսակցական,
սովետական և տնտեսական ակտիվի երեք համալսարաններում, որտեղ 300
հոգի ուսումնասիրում են կոմունիստական շինարարության պրոբլեմները,
գյուղատնտեսության էկոնոմիկան և իրավաբանությունը։ Այս ամենի շնորհիվ
հնարավոր է դարձել բարձրացնել կադրերի գաղափարական-քաղաքական զին-
վածությունը, զարգացնել նրանց գործնական կարողությունները և դրանք խե-
լացիորեն օգտագործել տնտեսական և կուլտուրական շինարարության տար-
բեր բնագավառներում։
Կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում հիմնական չափանիշը
եղել և մնում է նրանց քաղաքական ու գործնական հատկանիշները։ Խոսելով
այս մասին, մենք նկատի ունենք ոչ միայն մարդկանց քաղաքական վստա-
հելիությունը, նրանց նվիրվածությունը մեր իրավակարգին, այլև այն, թե
այս կամ այն աշխատողի մոտ որքանով է բարձր գիտակցական կարգապա-
հությունը, պատասխանատվության զգացումը՝ հանձնարարված գործի համար,
քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, գաղափարայնությունը։
Շրջկոմը կադրերին ուսումնասիրում է անմիջապես աշխատանքի պրոցեսում,
նրանց գնահատում աշխատանքի կոնկրետ արդյունքներով։ Կուսակցական,
սովետական և տնտեսական կադրերի հետ սիստեմատիկ կապը, նրանց անձ-
նական հատկությունների ուսումնասիրումը էական դեր են խաղում։ Պրակ-
տիկ աշխատանքում նրանց օգնում են ոչ միայն շրջկոմի հրահանգիչները,
բաժնի վարիչները, այլև քարտուղարները, բյուրոյի մյուս անդամները։
Կադրերի ընտրության, տեղաբաշխման և առաջքաշման հարցերը լուծե-
լիս շրջկոմը միշտ հենվում է սկզբնական կուսկազմակերպությունների վրա։
Այս կամ այն մարդուն առաջ քաշելիս հաշվի են առնվում ոչ միայն տվյալ
սկզբնական կուսկազմակերպության, այլև աշխատանքային կոլեկտիվի կար-
ծիքը։ Այդպիսի մոտեցումը կանխում է հնարավոր սխալներն ու թերու-
թյունները, օգնում ղեկավար աշխատանքի առաջ քաշելու առավել գործիմաց,
կուսակցության և ժողովրդի գործին նվիրված մարդկանց։ Նման մոտեցման
շնորհիվ այժմ շրջանային արտադրական վարչությունը, կոլտնտեսություննե-
րը, սովխոզները, ինչպես նաև արդյունաբերության, շինարարության, տրանս-
պորտի կազմակերպությունները հիմնականում կոմպլեկտավորված են գործ-
իմաց մասնագետներով։ Շրջանի գյուղատնտեսության մեջ աշխատող ղեկա-
վարներից և մասնագետներից 205-ն ունեն բարձրագույն և միջնակարգ-մաս-
նագիտական կրթություն։ Հիմնարկ-ձեռնարկությունների համարյա բոլոր աշ-
խատողներն ավարտել են այս կամ այն բարձրագույն ուսումնական հաստա-
տությունը։
Աշխատավորների դաստիարակությունը, նրանց հետ տարվող ամենօրյա
արդյունավետ աշխատանքը մեծապես նպաստում են գյուղատնտեսության,
արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտե-
սության մյուս ճյուղերի զարգացմանը, արտադրական պլանների հաջող կա-
տարմանը։ Շրջանի գյուղատնտեսական աշխատողները 1967 թվականին, նա-
խորդ տարվա համեմատությամբ, արտադրեցին ավելի շատ մթերքներ։
Ջնայած փոփոխական եղանակներին, ժամանակին և բարձր որակով կա-
տարվել ու կատարվում են գյուղատնտեսական աշխատանքները։
Շրջանի արդյունաբերության բոլոր ձեռնարկությունները երրորդ տարին

է, ինչ կատարում են պետական պլանները՝ տեխնիկա-տնտեսական բոլոր հիմնական ցուցանիշների գծով։ Ըստ տարիների զգալիորեն աճել է համախառն ու ապրանքային արտադրանքը, բարձրացել է արտադրանքի որակը։ Կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարվել է 102,3 և թողարկած արտադրանքի իրացման պլանը՝ 103,5 տոկոսով։

Շրջանում դաստիարակվել են արտադրության հմուտ կազմակերպիչների, ինժեներա-տեխնիկական աշխատողների լավագույն կադրեր, որոնք ջանք ու եռանդ չեն խնայում հանձնարարած գործը հաջողությամբ գլուխ բերելու համար։ Այդ անձնվեր աշխատողներից են Արզնիի տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանի դիրեկտոր Աշոտ Հարությունյանը և գլխավոր ինժեներ Կիմիկ Գալյանը, որոնց կենսագրությունը վերջին տասը տարում սերտորեն միահյուսվում է հարազատ գործարանի պատմության հետ։

Այժմ տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանը ոչ միայն շրջանի, այլև ամբողջ հանրապետության ճանաչված ձեռնարկություններից մեկն է, իսկ նրա Նոր Հաջըն բանավանը՝ գեղեցիկ բնակավայրերից է։ Գործարանում աշխատող բանվոր-ծառայողների համար ստեղծված են աշխատանքի և հանգստի լավագույն պայմաններ։ Տեսնողին հիացմունք են պատճառում երիտասարդական սրճարանը, հիվանդանոցը, բաղնիքը, խանութները և դպրոցները, կուլտուր-կենցաղային բազմաթիվ օբյեկտները, սպորտ հրապարակը։ Բանավանում շուտով շահագործման կհանձնվի 600 տեղանոց կուլտուրայի պալատը, լողավազանը։

Շնորհիվ այս ամենի գործարան եկած երիտասարդները կարճ ժամանակում ձեռք են բերում մասնագիտական կրթություն, դառնում արտադրության առաջավոր, բազմամարդ կոլեկտիվի սիրելի անձնավորություն։ Դրանցից մեկն է, օրինակ, Մաքսիմ Ժամկոչյանը, որը 8-ամյա կրթությունն ստացել է Վրացական ՍՍՀ Ախալքալակի շրջանի հեռավոր գյուղում, որոշ ժամանակ աշխատել կոլտնտեսությունում, այնուհետև ծառայել է սովետական բանակում։ Մ. Ժամկոչյանը 1960 թվականին եկել է Նոր Հաջն ավան, ընդունվել գործարան որպես երրորդ կարգի էլեկտրամոնտյոր և շարունակել ուսումը հերթափոխային դպրոցում։ Դա մեծապես օգնել է երիտասարդ բանվորի աճին։ Գործարանի ղեկավարությունը այժմ կոմունիստ Մ. Ժամկոչյանին վստահել է արտադրության կարևորագույն տեղամասերից մեկի ղեկավարությունը։

Կոմսանդամ Վարդգես Սարգսյանը գալով տեխնիկական ճշգրիտ քարերի գործարանը, ուսումնասիրեց և մասնագիտացավ ալմազ կտրող սարքերի պատրաստման գործում։ Սկզբում աշխատեց որպես շարքային բանվոր, ապա տեղամասի վարպետ, իսկ այժմ № 3 արտադրամասի ղեկավարն է։ Գործարանի 16 արտադրամասերի պետերից 15-ը, 14 բաժինների վարիչներից՝ 11-ը, 7 ավագ վարպետներից՝ 6-ը, 42 վարպետներից՝ 40-ը աճել և ձևավորվել են գործարանում։

Գործարանի կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները, դիրեկցիան իրենց ամենօրյա հետևողական աշխատանքով ջանում են ձեռնարկության կոլեկտիվին դաստիարակել հարազատ գործարանի և բանավանի նկատմամբ ջերմ սիրո ոգով և ամեն ինչ անում նրանց հետագա զարգացման համար։ Գործարանում ստեղծվել է բազմազգ ամուր, կարգապահ, հայրենասեր ու համերաշխ կոլեկտիվ, որը եռանդուն պայքար է մղում արտադրական առաջադրանքների կատարման համար։ Հատկանշական է, որ այստեղ աշխատողների զգալի մասն ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Ավանի



բանվոր երիտասարդության հերթափոխային հանրակրթական դպրոցների սովորողները ձեռնարկության հաշվին (անվճար) ստանում են դասագրքեր և այլ գրենական պիտույքներ։ Շատ բանվոր-ծառայողներ հեռակա կարգով սովորում են հանրապետության և Միության տարբեր բուհերում և տեխնիկումներում։ Մեծ տեղ է տրվում երիտասարդության ինքնագործունեության զարգացմանը։ Գործարանի գրեթե բոլոր արտադրամասերում լայն պայքար է ծավալված կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար։

Կուսակցական կազմակերպության նախաձեռնությամբ դեռևս 1966 թվականին հերթափոխային բանվորա դպրոցին կից հիմնվել է կորունդագործ վարպետների դասընթացներ։ Այն փաստորեն հասարակական հիմունքներով գործող տեխնիկում է, որը գործարանին կտա բարձրորակ մասնագետներ։ Բացի այդ ձեռնարկությունում սիստեմատիկաբար գործում են տեխնիկական վերապատրաստման զանազան դասընթացներ։

Շրջանի առաջավոր տնտեսություններից է Կոտայքի կոլտնտեսությունը։ Այստեղ լուրջ հաջողությունների են հասել առանձնապես անասնաբուծության զարգացման, հացահատիկի, եգիպտացորենի, բազմամյա խոտաբույսերի բերքատվության բարձրացման, այգեգործության զարգացման բնագավառներում։ Որոշակիորեն բարձրացել են արտելի եկամուտները ծխախոտագործությունից։ Վիթխարի աշխատանք է կատարվել գյուղի բարեկարգման ուղղությամբ։ Գրեթե բոլոր կոլտնտեսականները կառուցել են տուֆակերտ գեղեցիկ բնակելի տներ։ Գյուղն ունի դպրոց, ակումբ, ջրավազան, հանրային օբյեկտներ, կուլտուր-կենցաղային տաղավարներ, խանութ և այլն։ Վերջին տարիներին կոտայքցիները աշխօրերի դիմաց ստանում են 4—5 ռուբլի։ Շնորհիվ դրան, առանձին ընտանիքների տարեկան եկամուտը կազմում է 5—6 հազար ռուբլի, չհաշված օժանդակ տնտեսությունից ստացած եկամուտը։ Կոլտնտեսության նախագահ Ջաքար Ջաքարյանը ոչ միայն լավ տնտեսվար է, այլև ակտիվ հասարակական գործիչ, նա Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, «Գիտելիք» ընկերության դասախոս։

Մարդկանց և կոլեկտիվների դաստիարակության լավագույն օրինակներ կան Հացավանի, Գառնիի սովխոզներում, Արամուսի կոլտնտեսությունում, Կապուտանի դպրոցում։ Սակայն ամենուրեք չէ, որ քաղաքական դաստիարակչական աշխատանքը կազմակերպվում է նոր պահանջներին համապատասխան։ Առանձին ձեռնարկությունների ղեկավարներ, զբաղվելով միայն տնտեսական հարցերով, չեն մտահոգվում իրենց կոլեկտիվի անդամների դաստիարակությամբ, այսպես, օրինակ, մոտ անցյալում Ակունքի կոլտնտեսությունը շրջանում առաջավոր էր։ Կոլտնտեսության ղեկավարությանը հաջողվեց ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, ռացիոնալ օգտագործել ջրովի հողատարածությունները, ընդլայնել եկամտաբեր այնպիսի կուլտուրայի ցանքատարածությունները, ինչպիսին է ծխախոտը։ Բայց կոլտնտեսության վարչությունը և սկզբնական կուսակցական կազմակերպությունը տարվելով տնտեսական բնագավառում ձեռք բերած որոշ հաջողություններով, անուշադրության են մատնել մարդկանց գաղափարական դաստիարակության և այդ գործում ակտիվի ուժերի օգտագործման հարցերը։ Այստեղ անբավարար աշխատանք է տարվում կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, նրանց կուլտուրական հանգստի կազմակերպման ուղղությամբ։ Անգոր-

ծության է մասնված գյուղական ակումբը, բնակչության մեջ կուլտուր-լու-
սավորական աշխատանք չի տարվում։ Մասամբ հենց դա է պատճառը, որ
Ակունքում առանձին մարդիկ սկսել են խախտել սոցիալիստական համակեցու-
թյան կանոնները, թույլ են տալիս հակահասարակական արարքներ։

Ճիշտ է, սկզբնական կուսակցական կազմակերպության բյուրոյի քարտու-
ղար Ս. Ախոյանը շնորհալի ու բանիմաց երիտասարդ է, ձգտում է որևէ լավ
գործ կատարել, բայց, դժբախտաբար, նրան չի հաջողվում հասնել դրա-
կան արդյունքի։ Չի ստացվում, որովհետև նա ցանկանում է ամեն ինչ անել
մենակ, չի մոբիլիզացնում բյուրոյի անդամների, կուսակցական մյուս ակտի-
վիստների ուժերը։

Ակունքի կոլտնտեսության կուսկազմակերպությունում ընկած է կարգա-
պահությունը, առանձին կոմունիստներ վատ են կատարում իրենց կանոնա-
դրական պարտականությունները, անհաշտ վերաբերմունք չեն դրսևորում
սոցիալիստական օրինականությունը խախտողների և այլ կարգի թերությու-
նների նկատմամբ, թույլ է քաղաքական ագիտացիան, չկա պատվո տախտակ,
լավ աշխատողները նյութական ու բարոյական խրախուսանքի չեն արժանաց-
վում։ Այս բոլորի համար փոքր չէ նաև կոլտնտեսության նախագահ, կոմու-
նիստ Ա. Ազիզյանի մեղքը, որն ունենալով հասարակական և քաղաքական աշ-
խատանքի հարուստ փորձ, ինչպես հարկն է չի օգնում կուսբյուրոյին։

Երիտասարդության աշխատանքային և քաղաքական դաստիարակության
ուղղությամբ ուսանելի գործեր են կատարվում տեխնիկական ճշգրիտ քարե-
րի, Կապի Մինիստրության Ջրվեժի գործարաններում, Կոտայքի, Գեղա-
շենի կոլտնտեսություններում և մի շարք այլ ձեռնարկություններում։ Սակայն
աններելի է, երբ շրջանի առանձին հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական
ղեկավարներ և սկզբնական կուսակցական կազմակերպություններ անտար-
բեր վերաբերմունք են ցույց տալիս երիտասարդության կուլտուր-կենցաղա-
յին պայմանների բարելավմանը, այն համարելով երկրորդական աշխատանք։

Նույն «Աբովյանշին» տրեստում, ուր աշխատողների մոտ 30 տոկոսը
կազմում են կոմերիտականները, երիտասարդության նկատմամբ ցուցաբերած
ամբողջ հոգատարությունը սկսվում և ավարտվում է միայն սպորտային մի-
ջոցառումների կազմակերպմամբ։ Տրեստի շինվարչություններում և օժանդակ
ձեռնարկություններում ոչ մի կուլտուրական միջոցառում չի անցկացվում, այն
դեպքում, երբ նրանց ղեկավարները և միացյալ շինկոմը (նախագահ Աշոտ
Ավագյանը) լայն հնարավորություններ ունեն այդ բնագավառում լայն աշ-
խատանք ծավալելու համար։

Աշխատավորների դաստիարակության գործում մեծ ուժ է պարբերական
մամուլը։ Ընթացիկ տարում շրջանի աշխատավորները ստանում են շուրջ 48
հազար օրինակ թերթ ու ամսագիր, այլ կերպ ասած, յուրաքանչյուր բնակչին
ընկնում է մեկ պարբերական։ Շրջանային «Արշալույս» թերթի խմբագրությու-
նը, հենվելով բանգյուղթղթակիցների լայն ակտիվի վրա, հաճախակի հրա-
պարակում է հետաքրքրական նյութեր, ակնարկներ, թղթակցություններ կոլ-
տնտեսությունների ու սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների,
դպրոցների, հիվանդանոցների, լավագույն մարդկանց մասին, որոնք ազնիվ
ու ժրաջան աշխատանքով, օրինակելի վարքով արժանացել են համաժողովր-
դական հարգանքի։ Ընթերցողների վրա դաստիարակչական մեծ ներգործություն
են ունենում նաև հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթ-



ների մասին գրված ջերմ հոդվածներն ու թղթակցությունները, որոնք քիչ չեն
թերթի էջերում։

Մարդկանց դաստիարակության գործում մեծ դեր է կատարում դասախո-
սական պրոպագանդան, որը զգալիորեն աշխուժացված է։ «Գիտելիք» ընկե-
րության անդամները և կուսշրջկոմի արտահաստիքային դասախոսները աշ-
խատավորության համար 1967 թվականին կարդացել են 1779 և 1968 թվակա-
նի առաջին կիսամյակում՝ 839 դասախոսություն։ Մեծ թվով դասախոսու-
թյուններ և զեկուցումներ են կարդացվել ձեռնարկություններում և հիմնար-
կություններում աշխատող դասախոսների ուժերով։ Բայց կան ղեկավար աշ-
խատողներ, որոնք խուսափում են դասախոսություններ կարդալուց։ Օրինակ,
Հատուկ ստորերկրյա շինարարության պետ Վարդգես Համբարձումովը տա-
րիներ շարունակ ոչ մի զեկուցում կամ դասախոսություն չի կարդացել իր
կոլեկտիվի համար, քիչ է զրուցում մարդկանց հետ, չի հետաքրքրվում նրանց
առօրյայով։ Մենք դատապարտում ենք նման ղեկավարների վարքագիծը,
շրջկոմի պլենումներում և ակտիվի ժողովներում քննադատական խոսքեր
ասում նրանց հասցեին։ Ավելի անհանդուրժելի է, երբ որոշ հիմնարկ-ձեռնար-
կությունների ղեկավարներ, դուրս մնալով կուսկազմակերպությունների վերա-
հսկողությունից, ոտնահարում են սովետական օրինականությունը, աշխատող-
ների դիմում-բողոքների նկատմամբ թույլ են տալիս անհոգի-բյուրոկրատական
վերաբերմունք և վարչարարություն։

Մարդկանց հետ տարվող աշխատանքում անչափ կարևոր է ղեկավար գոր-
ծիչների խոսքը մամուլում։ Շրջանում կան շատ ղեկավար աշխատողներ,
որոնք հաճույքով են կատարում իրենց կուսակցական այս պարտքը։ Բայց
առանձին ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարներ խուսա-
փում են շրջանային թերթում հանդես գալուց, նույնիսկ նպատակային հոդ-
վածներով, որոնք նախատեսվում են խմբագրության աշխատանքի պլանում
և հանձնարարվում նրանց։

Մարդկանց դաստիարակության բնագավառում փոքր չէ նաև ստորին մա-
մուլի դերը։ Մայակովսկու և Կոտայքի կոլտնտեսությունների, Կապի Մինիս-
տրության Ջրվեժի և կիսահաղորդիչ սարքերի գործարանների, շինարա-
րական իրերի կոմբինատի, Աբովյան քաղաքի դպրոցների, № 30 պրոֆտեխ-
նիկական ուսումնարանի, բուժհիվորման պատի թերթերը լույս են տես-
նում ժամանակին և արդյունավետ գործ կատարում իրենց կոլեկտիվների կո-
մունիստական դաստիարակության ուղղությամբ։

Դաստիարակչական աշխատանքն ավելի նպատակասլաց և արդյունավետ
դարձնելու, այդ գործում կուսկազմակերպությունների, ամբողջ ակտիվի և
հատկապես տնտեսությունների ղեկավարների անձնական պատասխանատվու-
թյունը բարձրացնելու նպատակով, վերջերս կուսշրջկոմի հերթական պլենումը
քննության առավ կոլեկտիվներում դաստիարակչական աշխատանքի վիճա-
կը և կուսակցական կազմակերպությունների խնդիրները հարցը։ Պլենումը
կուսակցական կազմակերպություններից պահանջեց՝ աշխատավորների դաս-
տիարակության գործի բարելավման միջոցով հաջողությամբ լուծել ժողո-
վրդական տնտեսության, կուլտուրայի, լուսավորության, առողջապահության
զարգացման բնագավառներում առաջադրված բոլոր խնդիրները։

ՍԵՐՈԲՅԱՆ Վ. Գ.

ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի առաջին քարտուղար

# ԿԱՇԽԱՏԵՆՔ ՋԱՆԱՍԻՐԱԲԱՐ

Լոռու հարթավայրում եղանակը հազվադեպ է բարենպաստ լինում հողագործի համար: Մարդիկ ստիպված հաճախ հարմարվում են բնության քմայքներին, գործում նոր պայմաններին համապատասխան: Բնության հետ փաստորեն տեղի է ունենում յուրահատուկ գոտեմարտ, որում, հարկավ, հաղթում է մարդը, բնությունից վերցնելով հնարավորը:

Երեք տարի անընդմեջ՝ 1965, 1966 և 1967 թթ. Կալինինոյի շրջանն անասնապահական մթերքների արտադրության ու մթերման գործում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար նվաճեց ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի փոխանցիկ դրոշը և առաջին կարգի մրցանակը: Դա պատահական չէ: Կենսագործելով կուսակցության ու կառավարության որոշումները, շրջանի կուսկազմակերպությունները ու գյուղատնտեսության աշխատողները տարեցտարի հայտաբերում և կյանքի են կոչում նորանոր ռեզերվներ ու հնարավորություններ, որով արտադրության բոլոր տեղամասերում ապահովում են վերելքը: Արգասաբեր էր, հատկապես, հոբելյանական տարին: Հոկտեմբերյան տոնի նախօրյակին տնտեսությունները հաջողաբար զեկուցեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերման տարեկան պլանների կատարման մասին: Իսկ մինչ տարեվերջ, պլանից դուրս արտադրվեց 17497 ցենտներ կաթ, 2262 ցենտներ միս: Այդ նույն տարում մեկ կովի կաթնատվությունը ավելացավ 151 կգ և հասավ 2591 կգ:

Առանձին տնտեսություններ ավելի մեծ հաջողությունների հասան: Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Կալինինոյի սովխոզում մեկ կովի կաթնատվությունը 2505 կգ-ից հասավ 3219-ի: Դեռևս տարեսկզբին այստեղ ծնունդ առած երեքհազարականների շարժումը լայնորեն ծավալվեց շրջանի բոլոր տնտեսություններում, ու երբ ամփոփվեց տնտեսական տարին, պարզվեց, որ շրջանում 138 հոգի նվաճել են բնագծերը, որոնցից 6-ը ամեն մի կովից ստացել են 4000 կգ կաթ: Անցյալ տարի Կալինինոյի սովխոզի կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները ու դիրեկցիան սահմանեցին սովխոզի մրցանակի դափնեկրի պատվավոր կոչում: Տարեվերջին արդեն արտադրության տարբեր բնագավառներում աշխատող առավել բարձր ցուցանիշների հասած շատ բանվորներ և բանվորուհիներ արժանացան այդ պատվավոր կոչմանը և պարգևատրվեցին:



Հոբելյանական տարում նոր խոսք ասացին նաև Լոռու տոհմաբուծարանի անասնապահները: Զգալի են նրանց հաջողությունները հատկապես կաթի արտադրության, տոհմային մատղաշների աճեցման բնագավառում: 1967 թ. այստեղ մեկ կովի կաթնատվությունը կազմեց 3668 կգ.: Դա ամենաբարձր ցուցանիշն է շրջանում: Եվ պատահական չէ, որ շրջանի վեց չորսհազարականներն էլ այս տնտեսությունից են: Սակայն տոհմաբուծարանը միայն դրա համար չի փառաբանվում: Հանրային հոտն այստեղ հիմնականում բաղկացած է տեղում ստեղծված կովկասյան գորշ ցեղի անասուններից, որոնք դիմացկուն են, բարձր մթերատու: Պատահական չէ, որ մեր և հարևան հանրապետությունների կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ պահանջարկ են ներկայացնում տոհմաբուծարանի մատղաշների նկատմամբ: Լոռու տոհմաբուծարանը հոբելյանական տարում ուրիշ տնտեսություններին տրամադրեց 254 տոհմային ցուլիկ և երինջ: Տոհմային ցուլիկ և երինջ են վաճառում նաև շրջանի Մեդովկայի, Բլագոդարնոյեի, Սարատովկայի կոլտնտեսությունները, Կալինինոյի սովխոզը, Շողուլի փորձարարական բազան և այլ տնտեսություններ:

Վերջին չորս տարում (1964 թ. հետո) շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 1376-ով, որից կովերինը՝ 556, խոզերինը՝ 308 գլխով:

Անասնապահական մթերքների արտադրության վերելքը հնարավորություն ընձեռեց պարբերաբար կատարելու պետությանը մթերքներ վաճառելու և հանձնելու առաջադրանքները: Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները 1967 թ., 1964 թ. համեմատությամբ, պետությանը ավելի հանձնեցին 4280 ցենտներ միս, 27730 ցենտներ կաթ, 2927 տոննա կարտոֆիլ և այլ մթերքներ:

Շրջանի բոլոր տնտեսություններում ստեղծվել են անասնապահության գործունյա կադրեր, որոնք մշտապես գտնում ու ներդնում են աշխատանքի նորանոր ձևեր ու մեթոդներ: «Միլիոնատեր կթվորուհի» բառերը հաճախ կարելի է լսել Նովոսելցովոյում, Լոռու տոհմաբուծարանում, Սարատովկայում և այլուր: Այդ «կոչմանն» են արժանացել, այսինքն՝ մեկ միլիոն լիտրից ավելի կաթ են կթել Նովոսելցովոյի կոլտնտեսության կթվորուհի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Մարիա Կոպիլովան, Սարատովկայի կոլտնտեսության կթվորուհի, Լենինի շքանշանակիր Քսենիա Եկիմովան, Լոռու տոհմաբուծարանի կթվորուհի, Լենինի շքանշանակիր Արաքսյա Հովհաննիսյանը և ուրիշներ: Սարատովկայի կոլտնտեսության հորթապահուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Տատյանա Յակուշևայի, Լոռու տոհմաբուծարանում տոհմային ցուլիկներ ու երինջներ աճեցնող Համբարձում Հարությունյանի համբավը վաղուց է դուրս եկել շրջանի սահմաններից:

Ոչխարաբուծությունն ու խոզաբուծությունը թեև մեծ տեսակարար կշիռ չունեն շրջանի էկոնոմիկայում, սակայն տնտեսությունները լուրջ ուշադրություն են նվիրում դրանց զարգացմանն ու եկամտաբերության բարձրացմանը: Պարբերաբար կատարվում են ոչխարների բրդատվության ու գառատվության, խոզերի մթերատվության պլանները, իջեցվում է մթերքների ինքնարժեքը:

Գովասանքի են արժանի շրջանի հողագործները, հատկապես մեխանիզատորները: Բնությունը անցած տարի (և այս տարի) կարծես չար խաղեր է խաղում: Զգձգվեց ձմեռը, ապա սկսվեցին անդադար անձրևները: Ցանքի, բույսերի, դաշտային աշխատանքների համար ստեղծվեցին անբարենպաստ

պայմաններ։ Գարնանացանն ու բույսերի մշակումը չավարտած՝ վրա էր հասնում կերի սիլոսացումն ու խոտհունձը, իսկ դրանցից հետո՝ բերքահավաքը։ Այս ամենը տնտեսությունների ղեկավարներից ու կուսկազմակերպություններից պահանջում էր մեծ ճկունություն և օպերատիվություն, ուժերի ու միջոցների խելացի օգտագործում։ Աննպատակ չէր անցնում յուրաքանչյուր նպաստավոր օր ու ժամ։ Եվ, ինչպես միշտ, 1967 թ. շրջանի աշխատավորները հաղթեցին. նրանք ամենասեղմ ժամկետում և անկորուստ հավաքեցին ու կուտակեցին 67000 տոննա սիլոս և 36000 տոննա խոտ։ Դա ո՛չ միայն լիովին բավարարեց մեր կոլտնտեսությունների ու սովխոզների հոտի պահանջը, այլև հնարավորություն ընձեռեց մեծ քանակությամբ կեր տրամադրելու հարևան հանրապետությունների կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Նույն թվականին նախատեսված 13 ցենտների փոխարեն հացահատիկի միջին բերքատվությունը մեկ հեկտարից կազմեց 15,5, այդ թվում ցորենինը՝ 18,8 ցենտներ։ Ավելի քան 6 ցենտներով գերակատարվեց կարտոֆիլի մեկ հեկտարի բերքատվության պլանը. այն հասավ 120,3 ցենտների։

Շրջանում գերազանց հողագործի անուն են վաստակել Նորաշենի արտելականները։ Ագրոտեխնիկայի պահանջներին համապատասխան անցկացնելով վարուցանքը, բույսերի մշակումն ու բերքահավաքը, լավ օգտագործելով թունաքիմիկատներն ու պարարտանյութերը, նրանք տարեցտարի բարձրացրին հողագործության կուլտուրան, ապահովեցին առատ բերք և անցյալ տարի մեկ հեկտարից ստացան 24 ցենտներ հացահատիկ։ «Անքիստ—1» սորտից (առանձին հեկտարներից) ապահովեց մինչև 40 ցենտներ բերք։ Ռեկորդային էր նաև կարտոֆիլի բերքը։ Նորաշենցիները հեկտարից ստացան 200,5 ցենտներ պալար։ Հացահատիկային կուլտուրաների ու կարտոֆիլի բարձր բերք ստացան նաև Մեդովկայի, Միխայլովկայի կոլտնտեսությունները։

Անասնապահության բուռն զարգացումը՝ սեփական արտադրության կերի կայուն բազա ստեղծելու պահանջ է հարուցում։

Դրա համար էլ խոտհարքներն ու արոտավայրերն ենթարկվում են մշակման ու մակերեսի բարելավման. չորացվում են ճահիճները, լուրջ պայքար է տարվում էրոզիայի դեմ։ Այս գործում մեծապես օգնում է «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքի մելիորացիոն ջոկատը։ Խոտհարքների մակերեսի արմատական բարելավման շնորհիվ շրջանի տնտեսություններն անցյալ տարի հեկտարից հավաքեցին 17 ցենտներ խոտ։ Կալինինոյի, Իլմազլուի սովխոզների հսկայական տարածություններ ճահճուտ էին, ցածր բերքատու։ Ջորացվեցին դրանք, և այնտեղ բարձրացավ բերքատվությունը, լավացավ խոտի որակը։ Մեծ աշխատանքներ են կատարվում նաև ճանապարհաեզրերին ու քարքարոտ լեռնալանջերին անտառաշերտեր ստեղծելու համար։ Այժմ Կալինինոյից Շահնազար և Բլագոդարնոյե ձգվող ճանապարհների երկու կողմերում տասնյակ հազարավոր տնկիներ են աճում։

Շրջանի գրեթե բոլոր տնտեսություններն զբաղվում են նաև կարտոֆիլաբուծությամբ։ Կալինինոյի, Շահնազարի, Ղարաքիլիսայի, Սարչապետի սովխոզները և Նորաշենի կոլտնտեսությունը համարվում են անասնապահա-կարտոֆիլաբուծական տնտեսություններ։ Բնականաբար, այստեղ լուրջ ուշադրություն է նվիրվում այդ կուլտուրայի աճեցմանը հատկապես այժմ, երբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը դրել է հանրապետությունը սեփական արտադրության կարտոֆիլով ապահովելու խնդիրը։ Այս տարի շրջանի տնտեսությունները մշակում են մոտ 1200 հեկտար կարտոֆիլ։ Կալինինոյի և Շահնա-



զարի սովխոզներում 250 հեկտար տարածություն է հատկացված այդ կուլտուրային. մոտակա 2—3 տարում այն կհասցվի 500 հեկտարի։ Կարտոֆիլը, թերևս, մեր շրջանում ամենաաշխատատար կուլտուրաներից է։ Ցանքատարածությունների զգալի ավելացումը դժվարացնում է մշակման ու բերքահավաքի գործը։ Սակայն հողագործին օգնության է եկել մեքենան։ Ցանքը հիմնականում մեքենայացված է։ Տնտեսությունները ձեռք են բերել նաև կարտոֆիլահան մեքենաներ։ Երեք տարի է, ինչ հանրային դաշտերում գործում են խոտ հնձող ու մամլող ագրեգատները։

Մեքենայացվում են նաև անասնապահության աշխատատար պրոցեսները։ Համարյա բոլոր կովանոցներում տեղադրված են գոմաղբի հեռացման սկրեպերային հարմարանքներ. առանձին տնտեսություններ օգտագործում են նաև էլեկտրակթի ագրեգատներ։ Սակայն պետք է նշել, որ այս ասպարեզում դեռևս շատ անելիքներ ունենք։ Կալինինոյի սովխոզը, Մեդովկայի, Սարատովկայի կոլտնտեսությունները և Լոռու տոհմաբուծարանը որոշել են առաջիկա տարիներին ամբողջությամբ մեքենայացնել կովերի կիթը։

Կալինինոյի կոլտնտեսություններին ու սովխոզներին մեծ օժանդակություն է ցույց տալիս Լոռու փորձարարական բազան, որի մասնագետները օգնում են մեր տնտեսություններում աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ու մեթոդների արմատավորմանը։ Անասունների հերթափոխ արածեցումն այստեղ իրականացվում է բացառիկ ճշգրտությամբ։ Ամբողջ արոտավայրը բաժանված է ցանկապատած վանդակների։ Վանդակներից յուրաքանչյուրում հոտը մնում է այնքան ժամանակ, քանի դեռ առատ կեր կա, խոտածածկը տրորված չէ։ Այս տարի սրանց օրինակին են հետևել շրջանի շատ տնտեսություններ։

Արտադրության հաջող կազմակերպմանը խթանում է առաջավոր փորձի ուսումնասիրումն ու տարածումը։ Իսկ մեր շրջանում առաջավորներ շատ կան։ Մրցող տնտեսությունները հաճախ այցելում են միմյանց, փոխադարձաբար ծանոթանում աշխատանքներին։ ՀԿԿ շրջկոմի բյուրոն անցյալ տարի ուսումնասիրեց Լոռու տոհմաբուծարանի առաջավոր կթվորուհի Արաքսյա Հովհաննիսյանի աշխատանքի փորձը և կուսակցական ու արհմիութենական կազմակերպություններին հանձնարարեց լայնորեն տարածելու այն։

Կատարելագործվում են աշխատողների խրախուսման տարբեր ձևեր։ Կոլտնտեսության կամ սովխոզի անասնապահները, որպես կանոն, ամեն ամիս հավաքվում են, ամփոփում մրցության արդյունքները, առաջավորները խրախուսվում և արժանանում են պարգևների։

Կալինինոյի պանրագործարանը խոշորագույններից մեկն է հանրապետությունում (օրական մշակում է 50—60 տոննա կաթ)։ Այն շվեյցարական, սովետական, կոստրոմյան, չանախ և պանրի այլ տեսակների պահանջարկ է ստանում մեր երկրի ու արտասահմանի առևտրական շատ կազմակերպություններից։ Այժմ կառուցվում է նոր պանրագործարան՝ ժամանակակից տեխնիկայով։

Վերջին տարիներին շրջանում ծավալվել է շինարարությունը։ Կառուցվել են բնակելի ու հասարակական նոր շենքեր, կուլտուր-լուսավորական և առևտրական օբյեկտներ, անասնագոմեր ու մեքենայական արհեստանոցներ։ Շրջկենտրոնում կառուցվում են բնակելի տներ, հրշեջ պաշտպանության, միջնակարգ դպրոցի և այլ շենքեր, Շահնազարում՝ ճաշարանի, խանութի, դպրոցի, մանկապարտեզի շենքեր, Լոռու տոհմաբուծարանում՝ կուլտուրայի տուն, բնա-

կելի տներ։ Շինարարական աշխատանքները ծայր են առել նաև ուրիշ գյուղերում։ Սակայն, պետք է ասել, որ շինարարությունը չափազանց դանդաղ է ընթանում։ Շրջանը երկաթուղուց հեռու գտնվելու և ավտոմեքենաների պակասության պատճառով շինանյութն ուշացումով է տեղափոխվում։

Արդեն կիսվել է հնգամյակի երրորդ տարին։ Թեև այն մեր աշխատավորների համար անհաջող սկսվեց, բայց արդեն կարողանում ենք հունի մեջ մտնել։ Նոյեմբերի կեսերից մինչև մայիսի սկզբները ուժեղ սառնամանիքներ եղան. օրերով դադարում էր երթևեկությունը շրջկենտրոն տանող ճանապարհներով, շատ տնտեսություններ շաբաթներով չէին կարողանում համակցված կեր տեղափոխել, դժվարացավ ջրի մատակարարման գործը։ Այս բոլորի հետևանքով, չնայած գործադրած մեծ ջանքերին, հնարավոր չեղավ պահպանել կաթի արտադրության անցյալ տարվա մակարդակը։ Անորակ էին նաև խոտն ու սիլոսը։ Սակայն, երբ հոտը արոտ դուրս եկավ, վիճակը փոխվեց, իսկ եղած հնարավորություններն ու ռեզերվները սկսեցինք ըստ ամենայնի օգտագործել։ Բեկումը անվիճելի էր։ Օրեցօր ավելանում էր կովերի կաթնատվությունը։ Կիսամյակի արդյունքներն ամփոփելիս պարզվեց, որ շատ տնտեսություններ (Պրիվոլնոյեի, Ղարաքիլիսայի կոլտնտեսությունները, Իլմազլուի, Սարչապետի սովխոզները) սկսել են անցյալ տարվանից ավելի կաթ արտադրել։ Մեծանում են մթերքների արտադրության տեմպերը և բոլոր տվյալները կան, որ շրջանը ժամանակից շուտ կատարի գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերման առաջադրանքները։

Այժմ դաշտային աշխատանքների եռուն շրջանն է։ Ավարտվել են կարտոֆիլի մշակման, խոտհարքների ու մարգագետինների բարելավման աշխատանքները և սկսվել կերի սիլոսացումը։ Աշխատանքներն արագացնելու, ինչպես նաև ծախսերը կրճատելու նպատակով այս տարի տնտեսությունները սիլոսը կուտակում են վեգետենյան եղանակով, առանց խրամատների, այն ծածկում սինթետիկ թաղանթով։ Կալինինոյի հողագործները անցյալ տարի սիլոսի մի մասը այս եղանակով պահեցին։ Արդյունքը գերազանց էր։

Ինչպես տեսնում ենք, ընթացիկ տարում շրջանի աշխատավորների առջև լուրջ խնդիրներ են դրված։ Դրանք հաջողությամբ լուծելու համար կուսկազմակերպությունները քաղաքական ամենօրյա աշխատանք են ծավալում մարդկանց շրջանում, կիրառում մասսայական աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ։

Ավանդույթ է դարձել շրջկենտրոնում տոնելու առանձին գյուղերի օրը։ Անցյալ տարի իրենց նվաճումների, անելիքների ու խոհերի մասին պատմեցին Պրիվոլնոյե և Շահնազար գյուղերի աշխատավորության ներկայացուցիչները։ Շրջանային թերթը էջեր տրամադրեց այդ գյուղերին, պատմեց նրանց անցյալի, ներկայի ու հեռանկարների մասին, իսկ կուլտուրայի տունը պատրաստեց բազմապիսի ստենդներ, դիագրամներ, ֆոտոմոնտաժներ։ Հաճախակի կազմակերպվում են բարեկամության երեկոներ, այլազգի գյուղերի աշխատավորների հանդիպումներ, լենինյան ընթերցումներ։

Շրջանի կուսկազմակերպությունները մեծ նշանակություն են տալիս սոցիալիստական մրցության լայն ծավալմանը տնտեսությունների, բրիգադների, ֆերմաների և աշխատողների միջև։ Մեր շրջանը մրցում է Կրասնոդարի երկրամասի Կորենովսկի, եղբայրական Վրաստանի Դմանիսիի և հարևան Ստեփանավանի շրջանների հետ։ Մրցակիցները հանդիպումներ են



ունենում, ծանոթանում միմյանց գործերին, դիտողություններ անում, իրար օգնում։

Կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահների մեծ մասը տարվա ավելի քան 4 ամիսն անց են կացնում յայլաղներում։ Կուսկազմակերպությունների ու տնտեսությունների ղեկավարների առաջնահերթ խնդիրն է՝ կազմակերպել նրանց կուլտուրական հանգիստը, այնպես անել, որ սարվորները չկտրվեն կյանքից, ժամանակին իրազեկ լինեն երկրում և նրա սահմաններից դուրս տեղի ունեցող իրադարձություններին։ Դրա համար բոլոր ֆերմաներում ստեղծված են լավ կահավորված կարմիր անկյուններ։ Ապրիլի վերջերին ՀԿԿ շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, կուլտուրլուսավորական հիմնարկների աշխատողների, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների հետ մեկտեղ, ողջ սեզոնի համար միջոցառումների պլան մշակեց։ Սարվորներին «հյուր» են գնում շրջկենտրոնի կուլտուրայի տան երգչախումբը, երգի ու պարի ինքնագործ խումբը, դասախոսություններ են կարդում ՀԿԿ շրջկոմի դասախոսական խմբի և «Գիտելիք» ընկերության անդամները։

Անցյալ տարվանից հեռախոսային կապ է հաստատված յայլաղների մի մասի, իսկ հետագայում կապ կստեղծվի բոլորի հետ։ Ուշադրությունից չի վրիպել նաև անասնապահների կենցաղսպասարկման գործը։ Յայլաղներում կան խանութներ (որտեղ մարդիկ կարող են ձեռք բերել առաջին անհրաժեշտության ապրանքները), բուժկետեր, բժիշկների մշտական հերթապահություն։

Բազմազգ է մեր շրջանը։ Այստեղ ապրում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր, հույներ։ Նրանց բոլորի նպատակը նույնն է՝ պայքար մղել ընդհանուր գործի համար։ Կուսկազմակերպությունները գովելի աշխատանք են կատարում ժողովուրդների բարեկամության ամրապնդման ասպարեզում։ Դասախոսություններից ու զեկուցումներից բացի, բազմապիսի հանդիպումներ ու երեկոներ են կազմակերպվում։

Պրիվոլնոյեի և Սարչապետի երիտասարդների, Մեդովկայի և Նորաշենի աշխատավորների հանդիպումները վերածվեցին իսկական տոնահանդեսների։ Ցնծությամբ, ծաղկեփնջով, ավանդական աղ ու հացով դիմավորեցին մեդովկացիներն ու սարչապետցիները հարևան գյուղերի ներկայացուցիչներին։

Հնգամյակն իր հունով է ընթանում։ Տեղերից օրեցօր նորանոր զեկույցներ են ստացվում արտադրապլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Համընդհանուր այդ շարժումից անմասն չեն նաև Կալինինոյի շրջանի աշխատավորները։ Աշխատանքային իրենց լավագույն ավանդույթներին հավատարիմ՝ տնտեսության բոլոր տեղամասերում վերելք ստեղծելու, հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար նրանք ջանք չեն խնայում։

# ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ներկայումս առանձին կուսկազմակերպություններում տեղի են ունենում հաշվետվություններ և ընտրություններ: Մոտ ապագայում հաշվետվություններն ու ընտրությունները կդառնան մասսայական: Խմբագրությունն ստանում է նամակներ, որոնք պարունակում են հարցեր՝ կապված սկզբնական կուսկազմակերպություններում հաշվետվությունների անցկացման հետ: Ստորև հրապարակվում են դրանցից մի քանիսի պատասխանները:

Կարո՞ղ են հաշվետու-ընտրական կուսակցական ժողովները լինել դռնբաց:

Հաշվետու ընտրական ժողովներում կոմունիստները քննարկում են ներկուսակցական գործեր: Ահա թե ինչու կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներն անց են կացվում միայն դռնփակ:

Պարտադի՞ր է, արդյոք, գրել հաշվետու զեկուցման տեքստը:

Կուսակցական բյուրոյի, կոմիտեի հաշվետու զեկուցումը կարևոր փաստաթուղթ է, որն արտացոլում է ընտրովի օրգանի աշխատանքն ու կարծիքը, այլ ոչ թե մենակ զեկուցողինը: Նրա մեջ պետք է լինեն օբյեկտիվ, ստուգված փաստեր, փորձից բխող լավ մտածված եզրակացություններ, դրվեն խկական կարևոր պրոբլեմներ: Դրա համար էլ զեկուցումը, ծավալուն թեզիսները կազմվում են կոլեկտիվ կերպով, այդ գործին ներգրավելով ակտիվը, և անպայման հաստատվում են բյուրոյի կամ կոմիտեի նիստում: Հաշվետու զեկուցմամբ ժողովում հանդես է գալիս ինքը՝ քարտուղարը:

Սակայն սխալ կլիներ ենթադրել, որ եթե գրված է զեկուցման տեքստը, ապա այն պետք է կարդալ բառ առ բառ: Շատ լավ կլինի, եթե զեկուցողը հանգամանորեն տիրապետելով նյութին, իր ճառը կառուցի ազատ, հոգալով լսարանի հետ կապի մասին:

Ո՞ւմ աշխատանքն է գնահատում կուսակցական ժողովը:

Ժողովը լսում, քննարկում է իր ընտրովի օրգանների հաշվետվությունը և գնահատական տալիս նրանց գործունեությանը:

Կարելի՞ է կուսբյուրոյի կազմում ընտրել կոմունիստի, որը ժողովին ներկա չէ:

Պատահում է, որ կուսակցության անդամը հարգելի պատճառներով (բուժում, գործուղում) չի կարող ներկա լինել հաշվետու-ընտրական կուսակցական ժողովում: Եթե կոմունիստները լավ գիտեն այդ ընկերոջ քաղաքական, գործնական և բարոյական հատկությունները, կարող են նրան հեռակա կարգով ընտրել կուսակցական օրգանի կազմում:

Թույլատրվո՞ւմ է, արդյոք, կուսբյուրոյի կազմում ընտրել կոմունիստի, որը չունի միամյա կուսակցական ստաժ:

Թույլատրվում է: ՍՄԿԿ կանոնադրությամբ կուսբյուրոյի, կուսկոմի անդամների համար ստաժի սահմանափակում չի նախատեսված: Միամյա ստաժը նախատեսված է միայն կուսկազմակերպությունների քարտուղարների, կուսկոմների քարտուղարների համար:

Կճամարվի՞, արդյոք, կուսակցության կանոնադրության խախտում, եթե կուսբյուրոյի կազմում ընտրվի կուսակցական տուժ ունեցող կոմունիստ:

Տուժ ունեցող կուսանդամը օգտվում է ՍՄԿԿ կանոնադրությամբ տրվող բոլոր իրավունքներից, այդ թվում նաև ընտրելու և կուսօրգաններում ընտրվելու իրավունքից: Այն հարցը, թե որքանով է նպատակահարմար այդպիսի ընկերոջն ընտրելը, որոշում են իրենք կոմունիստները:

Ինչպիսի՞ դեպքերում է անհրաժեշտ հաշվետու-ընտրական կուսժողովներում անցկացնել արտադրամասային կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն՝ թեկնածուների նախնական քննարկման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Կուսակցական ղեկավար օրգանների ընտրությունների անցկացման մասին» հրահանգին համապատասխան նման խորհրդակցություններն անց են կացվում միայն ժողովի որոշմամբ: Պրակտիկան վկայում է, որ նախնական խորհրդակցությունները նպատակահարմար է անցկացնել խոշոր



կուսկազմակերպություններում: Ոչ մեծ կուսկազմակերպություններում, որտեղ ՍՄԿԿ անդամները իրար լավ են ճանաչում, նախնական խորհրդակցություններ, որպես կանոն, չեն անցկացվում:

Ինչպե՞ս են ընտրվում կուսխմբկազմակերպիչները:

Կուսխմբկազմակերպչին կարելի է ընտրել բաց քվեարկությամբ, եթե կոմունիստները չեն համառում նրան ընտրել փակ (գաղտնի) քվեարկությամբ:

Կարելի՞ է, արդյոք, կուսկազմակերպության քարտուղարի և նրա տեղակալի ընտրությունն անցկացնել մեկ ցուցակով:

Ոչ, չի կարելի: Այն կուսկազմակերպությունում, որտեղ կուսբյուրո չի ընտրվում, կուսկազմակերպության քարտուղարի և նրա տեղակալի ընտրությունները ժողովում դրվում են որպես երկու ինքնուրույն հարցեր: Կուսանդամներին՝ հաշվետու ընտրական ժողովի մասնակիցներին, տրվում են երկուական բյուլետեն փակ (գաղտնի) քվեարկության համար:

Մասնակցո՞ւմ են, արդյոք, ընտրություններին տվյալ կուսկազմակերպությունում ժամանակավոր հաշվառքում գտնվող կուսանդամները:

Այո, մասնակցում են: Հաշվետու-ընտրական ժողովների անցկացման ժամանակաշրջանում սկզբնական կուսկազմակերպությունում կարող են լինել ՍՄԿԿ անդամներ, որոնք գտնվում են երկարաժամկետ գործուղումների մեջ, դասընթացներում և ժամանակավոր հաշվառքում տվյալ կազմակերպությունում: ՍՄԿԿ Կենտկոմի՝ ղեկավար կուսակցական օրգանների ընտրությունների անցկացման մասին հրահանգի համաձայն նման կուսանդամները այդ կուսկազմակերպության կոմունիստների հետ համահավասար մասնակցում են քարտուղարի, կուսբյուրոյի, կուսկոմիտեի ընտրություններին:

Հարկավո՞ր է, արդյոք, անցկացնել հաշվետու-ընտրական ժողով, եթե կուսկազմակերպության քարտուղարը ուրիշ աշխատանքի է անցնում մինչև լիազորության ժամկետի վերջանալը:

Կազմակերպությունը, խորհրդակցելով կուսակցության շրջկոմի (քաղկոմի) հետ, ինքն է որոշում այն հարցը, լսել կամ չլսել քարտուղարի հաշվետվությունը, ընտրե՞լ նոր քարտուղար, թե կուսակցական գործերի վարումը հանձնարարել նրա տեղակալին՝ մինչև հերթական հաշվետու-ընտրական կուսժողովը: Այնտեղ, որտեղ ընտրվում են կուսբյուրո, կուսկոմիտե, որոշվում են նաև քարտուղարի վերաբերյալ հարցերը: Կուսբյուրոյի անդամներից մեկի դուրս գալու դեպքում սովորաբար լրացուցիչ ընտրություններ չեն անցկացվում: Բայց եթե մեկնել են բյուրոյի (կոմիտեի) այնքան անդամներ, որ խախտվում է կուսակցական օրգանի նորմալ գործունեությունը, այդ դեպքում, կուսակցության շրջկոմի, քաղկոմի համաձայնությամբ, անց են կացվում լրացուցիչ ընտրություններ:

Ո՞ր համարով է ձևակերպվում հաշվետու-ընտրական կուսակցական ժողովի արձանագրությունը:

Քանի որ այդ ժողովում կուսկազմակերպության քարտուղարը, կուսբյուրոն, կուսկոմիտեն հաշիվ են տալիս իրենց աշխատանքի մասին և հանրագումարի են բերվում նրանց գործունեության արդյունքները, հաշվետու-ընտրական կուսակցական ժողովի արձանագրությանը շնորհվում է վերջին հերթական համար: Նոր ընտրված կուսակցական օրգանը սկսում է արձանագրությունների նոր համարակալումը:

«Партийная жизнь» № 14, հուլիս, 1968 թ.

## *Նշանավոր* ՏԱՐԵԹՎԵՐ

# ԱՐՎԵՍՏԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀՍԿԱՆ

(Լև Ն. Տոլստոյի ծննդյան 140-ամյակի առթիվ)

ԱՊՐԵՍՅԱՆ Հ. Ջ.

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



*«Տոլստոյը մի ամբողջ աշխարհ է»,— ասում էր Ա. Մ. Գորկին: Հեղափոխության մրրկահավը, որ բնավ համաձայն չէր Տոլստոյի աշխարհայացքին և ժխտում էր տոլստոյական սոցիալական ուտոպիան, հանձին գրողի տեսնում էր խոսքի այն կախարդին, որը զարմանալի ճշմարտացիությամբ, ուժգնորեն ու գեղեցիկ ամփոփել է մի ամբողջ դարի կյանքը:*

Ռուսական հեղափոխության հայելի— *այսպես է բնորոշել Վ. Ի. Լենինը Լև Տոլստոյին: Վլադիմիր Իլյիչի բնորոշմամբ նրա ստեղծագործությունը ծաղկել է Ռուսաստանի պատմության երկու խոշոր իրադարձությունների՝ 1861 թվականին ցարիզմի կողմից ճորտատիրական իրավունքի հարկադրական վերացման և 1905—07 թվականների ռուսական առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակամիջոցում: Ճիշտ հասկանալու համար այս բնորոշումը, որ առաջին անգամ նրան տվել է մեծ մարքսիստը, անհրաժեշտ է հիշել, թե ի՛նչ և ինչպե՛ս էին գրում արվեստագետի մասին, գրող, որը դարձել էր իր հարյուր հազարավոր հայրենակիցների և յուր տաղանդի արտասահմանյան երկրպագուների մտքի տիրակալը:*

*«Մեծ աստված որոնող»,— ասում էին նրա մասին, «մեծ սիրտ», ավելացնում էին ուրիշները: «Կյանքի ուսուցիչ», «մտքի կերոն», «սիրո ուսուցիչ» և այլն, նույն ոգով բարբառում էին ուրիշները: Լիբերալ-բուրժուական մամուլը փքուն խոսքերով ու կեղծավոր ճոռոմաբանությամբ, ինչպես նշում էր Լենինը, ամեն կերպ շրջանցում էր Տոլստոյի բուն նշանակությունը: Նույնիսկ այնպիսի ականավոր մարքսիստ ու արվեստի խոր գիտակ, ինչպիսին Գ. Վ. Պլեխանովն էր, չկարողացավ ճիշտ հասկանալ մեծ գրողի կյանքի ուղին: Ընդ որում մարքսիստներից (հետևողական, թե անհետևողական, միևնույնն է) նա միակը չէր:*

*Այդպիսի պայմաններում երևան եկավ Լենինի* Լև Տոլստոյը ռուսական հեղափոխության հայելի *նշանավոր հոդվածը: Այն սկսվում էր խորապես ուշագրավ խոսքերով. «Մեծ արվեստագետի անվան համադրությունը հեղափոխության հետ, որը նա ակնհայտորեն չհասկացավ, որից նա բացարձակ մի կողմ քաշվեց, առաջին հայացքից տարօրինակ և արհեստական կարող է թվալ»* (В. И. Ленин—ПСС, т. 17, стр. 206):

*Այս հոդվածն անմիջապես չըմբռնեց նույնիսկ ռուսական սոցիալ-դեմոկրատների որոշ մասը: Եվ Լենինը չսահմանափակվեց այդ հոդվածով, որը հրապարակվեց 1908 թ. սեպտեմբերին: Գրողի մահվան առիթով կարճ ժամանակամիջոցում՝ 1910 թվականի նոյեմբերից մինչև 1911 թվականի հունվարը, հրապարակվեցին մի քանի հոդվածներ, որոնց մեջ Իլյիչը ավելի հանգամանալի էր հիմնավորում առաջին հոդվածում տված իր՝ Տոլստոյը որպես ռուսական հեղափոխության հայելի բնորոշումը, ավելի խորացնելով ու կոնկրետացնելով այնտեղ ձևակերպված դրույթները: Ինչպես ակնհայտ դարձավ ավելի ուշ, Լենինի հոդվածներն օգնեցին առավել լայն ու խոր և որ գլխավորն է՝ միակ ճիշտ դիրքերից գնահատելու Լև Տոլստոյի ստեղծագործությունը:*

*Մեծ գրողի ծննդյան 140-ամյակը մի անգամ ևս հաստատում է հանճարեղ արվեստագետի ինքնատիպությունը բնորոշող լենինյան հայտնագործությունը: Այս տարեթիվն օգնում է նոր լույսի տակ և ավելի խոր հասկանալու Լև Տոլստոյի դերն ու նշանակությունը պատմության մեջ:*

*Պատահական չէ, որ Լենինը Տոլստոյին նախ անվանել է հատկապես* ռուսական *հեղափոխության հայելի: Հանձին նրա Վլադիմիր Իլյիչը տեսել է ռուս արվեստագետի, որը ճշմարտացի պատկերել է ռուսական իրականությունը նրա պատմական բեկման ժամանակ: Լենինը գրում է, որ Տոլստոյն իր ստեղծագործություններում տպավորիչ մեծ ուժով, ճշմարտացի և համոզիչ կերպով մարմնավորել է ռուսական առաջին հեղափոխության յուրօրինակ բոլոր գծերը, նրա ուժն ու թուլությունը:*

*Ինչպես այնուհետև ասվում է հոդվածում, Տոլստոյն արտացոլել է ո՛չ միայն գոյություն ունեցող ռեժիմի նկատմամբ ժողովրդական զանգվածների՝ ծովացած ողջ ատելությունն ու ավելի լավ ճակատագրի ձգտումը. դրա հետ մեկտեղ արվեստագետը վերարտադրել է նաև նահապետական բազմամիլիոն գյուղացիության, «երազայնության խակությունը, քաղաքական անկրթությունն ու հեղափոխական հեղհեղուկությունը»:*

*Տոլստոյի արվեստի ուժը Լենինը տեսնում էր ո՛չ միայն նրա ռեալիզմի և ճշմարտացիության մեջ, նույնիսկ ո՛չ միայն նրանում, որ արվեստագետն իր ստեղծագործություններով, ինչպես Գորկին էր ասում, պատկերել է «ամբողջ աշխարհը»: Տոլստոյի մեծությունը, ըստ Լենինի, առաջին հերթին որոշվում է այն բանով, որ նա իրականությունը գեղարվեստորեն պատկերեց շեշտակի բեկման ժամանակ, կարողացավ պատկերավոր, ամբողջ կյանքում մարդու հիշողությունից չջնջվող կտավներով վերարտադրել ռուսական կյանքի այդ բարդ յուրօրինակությունը: Այդ յուրօրինակության մեջ Լենինը տեսնում էր և՛* սոցիալականը, *որ պատմականորեն պայմանավորված էր հետռեֆորմյան Ռուսաստանի վիճակով, և՛* ազգայինը, *տվյալ դեպքում՝ տիպիկ ռուսականը, որն իրոք մարմնավորված է նահապետական գյուղացիության կերպարներում ու երազանքներում: Անցյալի կյանքը, նշում է Լենինը, սովորեցրեց ռուս գյուղացուն, «ատել բարինին ու չինովնիկին, բայց չսովորեցրեց և չէր կարող սովորեցնել, թե որտեղ փնտրել այդ բոլոր հարցերի պատասխանը»* (В. И. Ленин—ПСС, т. 17, стр. 206):

*Այս բանն արտահայտվում է ռուս գրողի ողջ ստեղծագործության մեջ:*

*Տոլստոյ արվեստագետը, մտածողն ու քարոզիչը հանդես է գալիս որպես*

գոյություն ունեցող կարգերի անհաշտ քննադատ։ Այդպիսի քննադատությունը, ինչպես շեշտում է Լենինը, նոր չէ։ Սակայն Տոլստոյի քննադատության առանձնահատկությունը, առավել ևս պատմական նշանակությունը նրա ուժն է, այն ուժը, «որը հատուկ է միայն հանճարեղ արվեստագետներին և որն արտահայտում է Ռուսաստանի և հատկապես գյուղական, գյուղացիական Ռուսաստանի տվյալ ժամանակաշրջանի ժողովրդական ամենալայն մասսաների հայացքների հեղաբեկումը» (В. И. Ленин—ПСС, т. 20, стр. 38)։

Տոլստոյը պատռում էր բոլոր և ամեն տեսակ դիմակները, համարձակ դատապարտում սոցիալական ճնշումը, պետականացված սուտն ու երեսպաշտությունը։ Նա իր ձայնը բարձրացնում էր ամեն անարդարության դեմ և այդ ձայնը լսելի էր ո՛չ միայն Ռուսաստանի անծայրածիր կայսրությունում, այլև նրա սահմաններից շատ հեռու։

Լ. Ն. Տոլստոյը և նրա դարաշրջանը հոդվածում Լենինը մեջբերում է Աննա Կարենինա վեպի հերոսներից մեկի՝ Լևինի խոսքերը. «Հիմա մեզ մոտ այդ բոլորը շուռ է եկել և նոր է դասավորվում»։ Լևինի այս դատողությունները գնահատելով որպես արվեստագետի կողմից ճիշտ նկատված սոցիալական տեղաշարժերի ու հասունացող փոփոխությունների վկայություն, Լենինը գրում է. «1861—1905 թվականների ավելի դիպուկ բնորոշում դժվար է պատկերացնել»։ Այստեղ ևս Լենինը տեսնում է ռուսական և ոչ որևէ այլ հեղափոխության յուրօրինակության ճշմարտացի վերարտադրությունը։ Ընդ որում Տոլստոյի զգաստ ռեալիզմի ուժը Լենինը տեսնում էր այն օբյեկտիվ ընթացքի անզիջում արտացոլման մեջ, որն արվեստագետն զգում և որն այնպես ճշմարտացի վերարտադրում էր իր վեպերում, վիպակներում, պիեսներում և պատմվածքներում։ Պատմական շարժումը Տոլստոյը ներկայացրել է հակառակ իր իսկ սուբյեկտիվ մտադրությունների, լիովին հակասելով սեփական աշխարհհայացքին։

Տոլստոյի ստեղծագործության այսպիսի գնահատականներից առաջ նրա ուսումնասիրողներից և ոչ մեկը չի ասել այն, ինչ այդքան ուժգին ու պարզորոշ արտահայտեց Լենինը։ Լենինյան բնորոշումների և գնահատման անսահման ճշգրտություն, սպառիչ համոզչականություն, դատողությունների խորություն ու տրամաբանական հետևողականություն—այս ամենին կարելի էր հասնել միայն մարքսիստական մեթոդոլոգիայի միջոցով։

Արվեստի, տվյալ դեպքում Տոլստոյի ստեղծագործությունները գնահատելիս, հենվելով պատմական մատերիալիզմի, գիտական սոցիոլոգիայի վրա, Լենինը շարունակեց այն գիծը, որի սկիզբը դրել էին Մարքսն ու Էնգելսը, օրինակ, Դանթեի, Շեքսպիրի, Շիլլերի, Բալզակի ստեղծագործությունները գնահատելիս։

Ելնելով այն բանից, որ Տոլստոյի ստեղծագործությունը ձևավորվել է գլխավորապես հետռեֆորմյան, սակայն նախահեղափոխական Ռուսաստանում և արտացոլել բուն հեղափոխության հասունացումը, Լենինն անհրաժեշտ համարեց հանճարեղ արվեստագետի ստեղծագործությունը գնահատել հենց այդ հեղափոխության լույսի տակ, դարաշրջանի առաջավոր և վերելք ապրող դասակարգի՝ պրոլետարիատի տեսանկյունից։

Ճշմարտացի է Տոլստոյի արվեստի ուսումնասիրման այս մեթոդը, քանի որ այդ արվեստը դիտվում է որպես պատմական երևույթ, որպես կյանքի ուրույն արտացոլում։ Սակայն այն մեկնաբանվում էր ոչ թե որպես հայելու, մեխանիկական արտացոլում, այլ կենդանի, ուրեմն և՝ դիալեկտիկական արտացոլում։ Արտացոլումը միակողմանի պրոցես, երևույթի պասսիվ ընկալում չէ։ Առօրյա կյանքում, առավել ևս ստեղծագործական պրոցեսում այն շահագրգռված արտացոլում է, որի մեջ դրսևորվում է ակնհայտ ընտրականություն, քննադատական վերաբերմունք և որոշակի նպատակասլացություն։ Այս ավելի քան հատուկ է Տոլստոյ-արվեստագետին, մտածողին ու քարոզչին։

Ուշագրավ է, որ մեծ գրողի կյանքի ու գործունեության նկատմամբ Լենինի հետաքրքրասիրությունն աճեց, հատկապես Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունը գրելու շրջանում։ Մախիզմի և սուբյեկտիվ իդեալիզմի այլ տարատեսակների դեմ պայքարելիս Լենինը զարգացնում էր արտացոլման թեորիան, մասնավորապես հետազոտում և ապացուցում արտացոլվածի և արտացոլման, օբյեկտիվի և սուբյեկտիվի միջև եղած փոխադարձ կապի դիալեկտիկան։ Լենինը ցույց տվեց մարդու մտքի ո՛չ միայն արտացոլելու, այլև ստեղծագործելու ունակությունները։ Միտքը ո՛չ միայն արտացոլում, այլև ստեղծում է, գրել է նա։ Ընդ որում, ընդգծում է նա,— ինչպես կարող է լինել իրականության ճշմարտացի և կեղծ (աղավաղված) արտացոլում, ճիշտ այդպես էլ մարդկային գիտակցությունն ունակ է ստեղծելու ինչպես ճշմարտացի, այնպես էլ սխալ, գիտականորեն սնանկ գաղափարներ։

Արտացոլվածի և արտացոլման դիալեկտիկայի այս մեկնաբանությունն է ընկած Լենինի՝ Տոլստոյին նվիրված հոդվածների հիմքում։ Ճշմարտացի և գեղարվեստական վիթխարի ուժով պատկերելով բեկման փուլը Ռուսաստանում, Տոլստոյը, սակայն, չկարողացավ հասկանալ այդ երևույթի բնույթը, տեսնել հասունացող փոփոխությունների իսկական շարժիչ ուժերը։ Ահա թե ինչու, գրում է Լենինը, արվեստագետը, որ դարձել էր ռուսական հեղափոխության հայելին, միաժամանակ չէր ուզում հեղափոխական թռիչք, չէր հավատում դրա վերափոխիչ հնարավորություններին։ Պատերազմ և խաղաղություն էպոպեայում ցույց տալով աշխատավոր ժողովրդի, գերազանցապես գյուղացիության ուժն ու հերոսությունը Նապոլեոնյան հորդաների դեմ տարած հաղթանակում, ինչպես նաև իրավամբ հպարտանալով ժողովրդական սխրանքներով, Տոլստոյը, միաժամանակ, ափսոսում է, որ ռուս ժողովուրդը խիստ արագ «սովորեց հեղափոխություն անել»։ Ցույց տալով Տոլստոյի այս անհետևողականությունը ևս՝ Լենինը հակառակն է պնդում. «Ափսոսում ենք միայն, որ ռուս ժողովուրդը մնաց թերուս այդ գիտության մեջ (հեղափոխության—Հ. Ա.), առանց որի դարեր շարունակ նա կմնար Պուրիշկևիչների ստրուկը» (ПСС, т. 20, стр. 302)։ Հիշատակելով հնի բեկման և նորի առաջացման զարմանալի ճշմարտացի վերարտադրումը, Լենինը, միաժամանակ, նշում էր Տոլստոյ-մտածողի վախը արմատական փոփոխություններից։

Կարճ ասած, իդեալիստ-մտածող և աստված որոնող Տոլստոյը դիմադրում էր Տոլստոյ-արվեստագետին, ռեալիստ արվեստագետին։ Դառնալով ռուսական հեղափոխության հայելին՝ Տոլստոյը, սակայն, հեղափոխական գործողությունների կոչ չէր անում, այլ ցուցաբերում էր հոռետեսություն, դիմում «Ոգուն», ինչպես գրում էր Լենինը, քարոզում՝ «մի կալ հակառակ չարին»։ Քննադատելով եկեղեցին և կրոնը, Տոլստոյը, միաժամանակ, ձգտում էր ստեղծել նոր, այսպես կոչված, կղերա-եկեղեցական նողկալիություններից մաքրված, «բարելավված» հավատ։ Տոլստոյի ստեղծագործության այս և ուրիշ «աղաղակող հակասությունների», «զգաստ ռեալիզմի» և իդեալիստական աշխարհհայացքի, արվեստագետին հատուկ ժամանակի զարմանալի զգացողության և նրա սոցիալական ուտոպիայի միջև եղած հակասությունների մասին Լենինը հանգամանորեն և համոզիչ խոսել է Տոլստոյին նվիրված իր բոլոր հոդվածներում։ Սակայն Վլադիմիր Իլյիչը միաժամանակ նշում էր, որ մեծ գրողի ստեղծագործության առանձնահատկությունները բնորոշող այս հակասությունները սոսկ անձնական, տոլստոյական, առավել ևս սուբյեկտիվիստական չեն։ Դրանք արտացոլում են այն ուրույն, տիպիկ ռուսական պայմանները, որոնց մեջ ապրում և ստեղծագործում էր արվեստագետն ու մտածողը։

Տոլստոյի ստեղծագործության նրկատմամբ փիլիսոփայական, մասնավորապես սոցիոլոգիական մոտեցումը չխանգարեց Լենինին՝ այն գնահատելու հատկապես իբրև արվեստ, հասարակական կյանքի առանձնահատուկ երևույթ։ Դեռևս Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն հոդվածում Լենինն ընդգծում էր գեղարվեստի առանձնահատկությունները հաշվի առնելու անհրաժեշտությունը, անթույլատրելի համարում՝ այն որպես սոսկ հասարակական գործունեության տարատեսակ դիտելու գռեհիկ մեկնաբանությունը։ Լենինը պահանջում էր ազատություն արվեստագետի ստեղծագործական անհատականության լիակատար դրսևորման համար։ Այդ անհատականության առավելագույն անհրաժեշտությունը, այսինքն՝ արվեստի ուրույն

մեկնաբանության գործնական կիրառումը հեշտությամբ կարելի է հայտաբերել Տոլստոյի մասին լենինյան հոդվածներում։ Այս մոտեցումը չէր հակասում էսթետիկայի, երևույթների ուսումնասիրության սոցիոլոգիական մեթոդին, ընդհակառակը բխում էր նրա էությունից։

Գիտական սոցիոլոգիան միշտ վստահելի կողմնացույց է եղել էսթետիկայի համար։ Տոլստոյի մասին լենինյան հոդվածները միայն չէին հաստատում այս ճշմարտությունը. դրանց մեջ միաժամանակ զարգանում էր սոցիոլոգիական մեթոդը էսթետիկական ոլորտում, ընդ որում ոչ թե նսեմացնելով էսթետիկական տեսությունն ու պրակտիկան, այլ ընդհակառակը, զինելով դրանք։ Էսթետիկայի, և ոչ ընդհանուր սոցիոլոգիայի չափանիշներով էր դատում Լենինը Տոլստոյի մասին՝ անդրադառնալով նրա «զգաստ ռեալիզմին»։ «Զգաստ ռեալիզմը» ոչ թե տարերային, ինքնին հասկանալի, այլ քննադատական ու վերլուծական ռեալիզմն է։ Գեղարվեստական այսպիսի մեթոդի դեպքում հուզականը դուրս չի մղում բանականը, պատկերավորությունն ու արտահայտչականությունը չեն ժխտում խոր վերլուծության և ընդհանրացման անհրաժեշտությունը, որն, իբրև կանոն, գիտական ապացույցի ուժ է ստանում։ Եվ այն ժամանակ արվեստի ստեղծագործությունը հարստացնում է գիտական հայտնագործությունը, հաճախ հենց ինքն է դառնում հայտնագործություն, սակայն արտահայտված կոնկրետ-զգայական ձևերով՝ մարդկային կերպարների և նրանց չմոռացվող արարքների միջոցով։

Այս առումով էսթետիկայի համար առհասարակ և արվեստագիտության համար, մասնավորապես, ընդհանուր մեթոդոլոգիական նշանակություն ունի Լև Տոլստոյը որպես ռուսական հեղափոխության հայելի հոդվածի մի հատվածը, որը մատնանշվել է շատ աշխատություններում. հարկ ենք համարում այդ մասին մեկ անգամ ևս հիշատակել։

Լենինը գրել է. «Եվ, եթե մեր առջև իրոք մեծ արվեստագետ է, ապա հեղափոխության էական կողմերից գեթ մի քանիսը նա պետք է արտացոլեր իր ստեղծագործություններում» (ПСС, т. 17, стр. 206)։

Հիմնվելով արտացոլման իր տեսության վրա՝ Լենինն այստեղ լուծել է ընդհանուր էսթետիկական բնույթի մի հարց։ Մեծ արվեստագետը չի կարող իր ստեղծագործություններում չարտացոլել կյանքի գեթ մի քանի, բայց էական կողմերը,—ասում էր Լենինը։ Սակայն ոչ թե սովորական կամ հանգիստ-խաղաղ-հարթ ընթացող կյանքի, այլ՝ հեղափոխության։ Այլ խոսքով՝ իրականության մեծ գեղանկարիչ է այն արվեստագետը, որը կարողացել է իր արվեստում վերարտադրել հեղափոխության գոնե մի քանի կարևոր կողմերը։

Ուշագրավ է, որ Լենինը խոսում է «հեղափոխության գեթ մի քանի էական կողմերի» արտացոլման անհրաժեշտության մասին։ Նա դրանով իսկ շեշտում է, որ մի արվեստագետի համար դժվար, թերևս անհնար է վերարտադրել հեղափոխության բոլոր էական կողմերը։ Եվ, եթե արվեստագետը կարողացել է վերստեղծել հեղափոխության գոնե մի քանի կարևոր կողմեր, ապա դրանով իսկ նա դրսևորել է իր տաղանդը, ցույց տվել իր ռեալիզմի ուժը։

Ուշագրավ է նույնպես, որ Լենինը չի գրում, թե արվեստագետը պարտավոր է, այլ ասում է. «պետք է որ արտացոլեր իր ստեղծագործություններում»։ Պետք է որը ռեալիստական դիրքերի վրա կանգնած արվեստագետի համար այնքան բնական վիճակ է նշանակում, որ, հետևաբար, նա չի կարող ճշմարտացի չլինել իր արվեստի մեջ։ Տվյալ դեպքում Լենինն, ըստ էության, հիշեցնում էր կյանքի ռեալիստական գեղարվեստական արտացոլման տրամաբանության մասին։ Նա նկատի ուներ այն տրամաբանությունը, որը, թերևս, երբեմն չի գիտակցվում որոշ գրողների կողմից, սակայն անխախտ հետևողականությամբ դրսևորվում է նրանց ստեղծագործություններում։

Իր այս կոնցեպցիայով Լենինը էական ներդրում կատարեց ո՛չ միայն արվեստի հասարակական կոչման, այլև ռեալիզմի՝ որպես միակ ճշմարիտ գեղարվեստական մեթոդի ըմբռնման մեջ։ Տվյալ դեպքում Լենինն ընթանում էր այն ուղիով, ուր առաջինը ոտք էին դրել Մարքսն ու Էնգելսը ընդհանրապես գեղարվեստական մեթոդի և, հատկապես, ռեալիզմի էությունը մեկնաբանելիս։ Հայտնի է, որ գիտական կոմունիզմի հիմնադիրները XVIII դարի վերջի և XIX դարի առաջին կեսի, այսպես կոչված՝ դասական ռեալիզմը քննադատում էին նրա համար, որ այն չի կարողացել լիովին արտացոլել պատմական պրոցեսի դիալեկտիկան։ Գյոթեի ստեղծագործության օրինակով, որը նրանք շատ բարձր էին գնահատում, Մարքսն ու Էնգելսը ցույց տվին, որ նույնիսկ ականավոր արվեստագետը կարող է լինել հակասական, անհետևողական, եթե նրա ռեալիզմը այդուհանդերձ սահմանափակ է, եթե նրա ստեղծած երկերում կյանքի ոչ բոլոր էական կողմերն են արտացոլվում միատեսակ ճշմարտացիությամբ ու հետևողականությամբ։ Մարքսն ու Էնգելսը ձգտում էին կյանքի բոլոր հակասությունները ճիշտ արտացոլող և կյանքի շարժիչ ուժերը ճշմարտացի մարմնավորող կատարյալ ռեալիզմի։ Ինչպես պնդում էին նրանք, այսպիսի ռեալիզմի արտացոլման օբյեկտիվությունը համընկնում է տեղի ունեցող իրադարձությունների պատմական իմաստի ըմբռնմանը, ուստի և ակտիվ օժանդակում այդ իրադարձությունների ծավալմանը։ Լենինը փաստորեն զարգացնելով այս դրույթները, մոտալուտ հեղափոխության պայմաններում ռեալիզմի ուժը համարում է սոցիալական իրականության մեջ հասունացող փոփոխությունները և նոր կարգերի «հունի մեջ ընկնելը» ճշմարտացի վերարտադրելու արվեստագետի հմտությունը։

Լենինն այդ ռեալիզմը սահմանեց, բացատրեց և մեկնաբանեց վերլուծելով Տոլստոյի ստեղծագործությունը։ Վլադիմիր Իլյիչը արվեստագետի մեծությունը տեսնում էր նաև այն բանում, որ նա կարողացել է իր ստեղծագործություններում առաջ քաշել և հանճարեղ գեղարվեստականությամբ ու մեծ ճշմարտացիությամբ լուսաբանել դարաշրջանի «մեծ հարցերը»։ Տոլստոյական այդ ճշմարտացիությունն իր ճանաչողական նշանակությամբ չէր զիջում ոչ մի գիտական ճշմարտության։ Դարաշրջանն ինքը, որ Տոլստոյի հանճարի շնորհիվ ասես ներկայացված էր իր բոլոր էական կողմերով ու մանրամասներով, դարձավ մարդկության գեղարվեստական զարգացման մի առաջընթաց քայլ։

Հենց այդ էր Տոլստոյ—արվեստագետի և մտածողի համաշխարհային նշանակությունը։

Գրողին բնորոշելով որպես ռուսական հեղափոխության հայելի, Լենինը, միաժամանակ, ցույց տվեց, որ Տոլստոյը չի մնացել ռուսական և նույնիսկ ռուսաստանյան իրականության սահմաններում։ Տոլստոյի ստեղծագործություններում արծարծված դարաշրջանի «մեծ հարցերը», որ հուզում էին ո՛չ միայն ռուսներին ու ռուսաստանցիներին, պայմանավորեցին նրա արվեստի, փիլիսոփայության ինտերնացիոնալ բնույթը։ Ըստ Լենինի «մարդկության գեղարվեստական զարգացման առաջընթաց քայլը» նշանակում էր, որ իրականության էսթետիկական վերարտադրության հնարավորությունները մեծ չափով արմատավորվել, ընդլայնվել և հարստացել են։ Այդ մի քայլը նշանակում էր նաև, որ աշխարհի յուրացման և էսթետիկական իմացության մակարդակը նկատելիորեն բարձրացել է։ Այդ մի քայլը ի վերջո, նշանակում էր, որ Տոլստոյի՝ ազգային-ռուսական հողում ծաղկած ռեալիզմը, «հոգու դիալեկտիկան» (Չերնիշևսկի) բացահայտելու նրա մեթոդը, ամենաբարդ իրադրություններն ու իրադարձությունները, ինչպես և մարդկային արարքները պատկերելու նրա վարպետությունը դառնում են բեղմնավոր յուրաքանչյուր ազգային գրականության համար։

Այս կապակցությամբ արժե նշել, որ հայկական, ինչպես և ամբողջ անդրկովկասյան հասարակայնությունը անտարբեր չի մնացել Լև Տոլստոյի, նրա գեղարվեստական ստեղծագործությունների, փիլիսոփայության և, այսպես կոչված՝ աստվածորոնության նկատմամբ։ Մեծ արվեստագետի մահը հարուցեց բազում արձագանքներ, որոնք բանավեճի առիթ դարձան անդրկովկասյան ժողովուրդների բազմալեզու մամուլում։ Վերաբերմունքը Տոլստոյի նկատմամբ, ռուսական-հասարակական շրջաններում ևս ընավ միատեսակ չէր, իսկ երբեմն նույնիսկ խիստ հակասական։

Հայկական միջավայրում Տոլստոյն ավելի ու ավելի հետաքրքրություն էր հարուցում դեռևս իր կենդանության օրոք։ Մեծ գրողի ստեղծագործությունները թարգմանվում էին հայերեն, ընթերցվում դառնում սուր վեճերի

առարկա։ Հետաքրքրական է, որ 1891 թվականին «Մուրճ» ամսագրում (№ 12, Ե. Ղազարյանի Մոռացված խոսքեր հոդվածը) ընդհանուր առմամբ ճիշտ է նշվում, որ նշանավոր գրողը աշխատավորների շահերի արտահայտիչն է։ Այդ ոգով գրել են ուրիշ հայ քննադատներ, պաշտպանելով և մասսայականացնելով, հատկապես, Տոլստոյի էսթետիկական որոշ հայացքներ։ Սակայն հայկական իրականության մեջ նոր միայն սաղմնավորված մարքսիստական քննադատությունը ճիշտ դիրքերից էր նշում Տոլստոյ-արվեստագետի և մտածողի ուժն ու թուլությունները։

Այս առումով առաջին հերթին ուշագրավ են Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի հոդվածները. նրանց հայացքները Տոլստոյի ստեղծագործության մասին համընկնում են Լենինի գրածներին։ Հայ մարքսիստները նույնպես, ինչպես Լենինը, Տոլստոյի արվեստն ու «տոլստոյական հավատը» գնահատում էին հեղափոխական պրոլետարիատի դիրքերից, հասարակական առաջադիմության անհրաժեշտության օրգանական կապի մեջ։ Արվեստի կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների պահպանում՝ ահա Ստ. Շահումյանի ելակետը Լև Տոլստոյի և պատմական առաջադիմության մեջ նրա տեղի գնահատման հարցում։

Զանդրադառնալով Տոլստոյի հանդեպ Ռուսաստանի մյուս մարքսիստների վերաբերմունքին, կարելի է ասել, որ նրա համար որոշիչը տոլստոյական էսթետիկայի և փիլիսոփայության լենինյան կոնցեպցիան է։ Իհարկե, ինչպես արդեն ասվեց, Տոլստոյի հանճարեղության, նրա ստեղծագործության հակասության, նրա ուժի և թուլությունների լենինյան մեկնաբանությունը բնավ ոչ բոլոր մարքսիստներն են ելակետ ընդունել տոլստոյականությունը գնահատելիս։

Ժամանակը ցույց տվեց, որ Լենինն է բացահայտել Տոլստոյին, որպես մեծ արվեստագետի և մտածողի, որը դարձել է ռուսական հեղափոխության հայելին։ Լենինը ցույց տվեց, թե ո՛րն է նրա մեծությունը, և ո՛րը նույնիսկ՝ «խեղճությունը»։ Հենց լենինյան հոդվածներից աշխարհն իմացավ տոլստոյական ռեալիզմի ուժն ու ժողովրդայնությունը։

Մարքսիստների մեջ Լենինն առաջինն ապացուցեց, թե Տոլստոյն ինչո՛վ է թանկ ու գնահատելի պրոլետարիատի համար և թե իր ստեղծագործության ո՛ր կողմերով նա կդառնա այն ժառանգությունը, որին անպայման պետք է տիրանա ապագա սոցիալիստական հասարակությունը։ Լենինը գրել է, որ Տոլստոյը պատկերել է ոչ միայն Ռուսաստանի անցյալը և դարձել է ո՛չ միայն ռուսական հեղափոխության հայելին։ Մեծ գրողի ստեղծագործություններում, գրել է նա, կա այնպիսի մի բան, որը պատկանում է ապագային, և գրավելով իշխանությունը՝ նոր հասարակարգ կառուցող բանվոր դասակարգը կզինվի դրանով։

Լենինն այդպիսի ժառանգություն էր համարում, ամենից առաջ, հենց տոլստոյական արվեստը, առանց որի անհնար է պատկերացնել հայրենի գեղարվեստական կուլտուրան։ Նա գտնում էր, որ պարազիտային պետության, եկեղեցու, մասնավոր սեփականության և, ընդհանրապես, հին, բուրժուա-կալվածատիրական կարգի բոլոր զազրելիությունների տոլստոյական քննադատությունը հենց այն զենքն է, որին պետք է տիրապետի բանվոր դասակարգը և դրա օգնությամբ կարողանա վերացնել իր դարն ապրած հասարակարգը։ «Ուսումնասիրելով Լև Տոլստոյի գեղարվեստական ստեղծագործությունները՝ ռուսական բանվոր դասակարգն ավելի լավ կճանաչի իր թշնամիներին», գրել է Լենինը։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Լենինը շարունակում էր հիանալ արվեստագետի հանճարեղությամբ, անվանելով նրան «հսկա», «ժայռ», այնպիսի գրող, որից առաջ ոչ մի արվեստագետ ռուս գյուղացուն չէր նկարագրել այդպիսի ուժով և ճշմարտացիությամբ։ Պատահական չէ, որ այն հին գրողների մեջ, որոնց ըստ Լենինի ծրագրի պետք է ամեն կերպ մասսայականացնել, լայնորեն տարածելով նրանց ստեղծագործությունները, Լենինն ամենաակնառու տեղերից մեկը տալիս էր Լև Տոլստոյին։

Պատերազմ և խաղաղություն, Աննա Կարենինա, Հարություն, Կրեյցերյան սոնատ, Հաջի Մուրադ, Կենդանի դիակ և շատ այլ հանրածանոթ ստեղծագործությունների հեղինակը մեր ժամանակներում ևս շարունակում է մնալ անցյալի մեծարված արվեստագետներից մեկը։ Միլիոնավոր մարդիկ տարբեր լեզուներով ընթերցում ու վերընթեռնում են նրա ստեղծագործությունները, որոնց մեջ այնքան բազմակողմանի և խոր է դրսևորվել ժողովրդի կյանքը, որոնց մեջ արտասովոր ուժով վերարտադրվել է մարդկային գեղեցկությունը, և մեծ բարոյականության աշխարհը մարմնավորվել անմոռանալի պատկերներով։ Տոլստոյի պիեսները, ինչպես նաև նրա բեմականացված վեպերը ներկայացվում են ազգային շատ թատրոններում։

Սովետական գեղարվեստական մշակույթի նշանակալի երևույթ պետք է համարել Պատերազմ և խաղաղության (չորս սերիայով) և Աննա Կարենինայի (երկու սերիայով) մոնումենտալ էկրանացումը։ Ճիշտ է, այս ֆիլմերը միակերպ չեն ընդունել հանդիսատեսները։ Դրանց հասցեին լսվում էր քննադատություն, իսկ Տոլստոյի հանճարի որոշ երկրպագուներ ընդհանրապես չընդունեցին այդ ֆիլմերը։ Սակայն, կասկածից վեր է, որ դրանք մի նոր քայլ են մեծ գրողի ու հումանիստի գեղարվեստական ժառանգության յուրացման բնագավառում։ Այդ կինոֆիլմերն օգնում են և՛ ավելի լավ հասկանալու մեր անցյալի պատմությունը, և՛ նոր ձևով վերստեղծված կերպարների միջոցով ընկալելու արվեստագետի անմահ ստեղծագործությունները, այն արվեստագետի, որը հավասարապես թանկ է մեր երկրի բոլոր ժողովուրդների համար։ Վերջապես, այդ կինոֆիլմերն արվեստի ամենասինթետիկ ձևի՝ կինեմատոգրաֆիայի վիթխարի հնարավորությունների մի նոր վկայությունն են։

Տոլստոյի ժառանգության օրգանական մասն է նրա էսթետիկան, հատկապես այն, թե նա ինչպես էր հասկանում արվեստի էությունն ու հասարակական դերը։ Իհարկե, Ի՞նչ է արվեստը նշանավոր տրակտատում ասված ամեն բան չէ, որ ընդունելի է մեզ համար։ Սովետական մարդիկ չեն կարող համամիտ լինել Շեքսպիրի արվեստի տոլստոյական գնահատմանը, օպերայի և բալետի, ինչպես և գեղարվեստական մշակույթի մի քանի այլ երևույթների էության միակողմանի մեկնաբանմանը։ Սակայն հիմնականում, այսինքն՝ որ արվեստը պետք է հասկանալի լինի ժողովրդին, որ այն կոչված է նպաստելու մարդկանց միավորմանը, կրթությանն ու դաստիարակությանը, սովետական մարդիկ համամիտ են Տոլստոյին։ Ի դեպ, Տոլստոյի էսթետիկայի հենց այս դրույթներն էր գնահատում Վ. Ի. Լենինը, խոսելով սովետական հասարակության մեջ արվեստի դերի մասին։ Տոլստոյի էսթետիկայի հենց այս դրույթներն է քննադատաբար յուրացնում, զարգացնում ու պրոպագանդում մարքսիստական-լենինյան էսթետիկան։

Լև Տոլստոյի արժեքավոր ժառանգությունն են նաև նրա մանկավարժական հայացքներն ու փորձը։ Չնայած նրա մանկավարժության մեջ եղած որոշ թուլություններին, Տոլստոյն, ընդհանուր առմամբ, ճիշտ էր հասկանում, նախ՝ դպրոցական կրթության դեմոկրատացման անհրաժեշտությունը, և երկրորդ՝ արդյունավետ էր համարում ուսուցումն ու համատեղ աշխատանքային դաստիարակությունը։ Այս հիմնական ասպեկտներով մեծ է Տոլստոյի մանկավարժական ժառանգության նշանակությունը սոցիալիստական հասարակության համար։

Ուժեղ են տոլստոյական էսթետիկայի տրադիցիաները Հայաստանում։ Վաղուց արդեն հայ ընթերցողների սեփականությունն է դարձել հանճարեղ գրողի երկերի տասնհատորյակը, ինչպես և Տոլստոյի՝ առանձին հրատարակված բազմաթիվ ստեղծագործություններ։ Ռուս մեծ գրողին հայ ընթերցողին ներկայացնելու գործում ակնառու երախտիք ունի վաստակաշատ Ստ. Զորյանը։ Պարբերաբար բեմադրվում են Տոլստոյի Կենդանի դիակ և այլ պիեսներ։ Հայ գեղանկարիչներն ու գծանկարիչները նրա նյութերով ու սյուժեներով ստեղծել են հետաքրքրական բազմաթիվ գործեր։ Տոլստոյի էսթետիկական և գեղարվեստական հայացքները, ինչպես և ստեղծագործական առանձնահատկություններն ուսումնասիրվել և լուսաբանվել են սովետահայ գրականագետների կողմից։

Մեր երկրի հանճարեղ արվեստագետի ծննդյան 140-ամյակը նշանավոր տարեթիվ է սոցիալիստական մշակույթի համար, այն նշում են նաև Սովետական Միության սահմաններից

*դուրս: Տոլստոյի հոբելյանն առիթ է, որ մի անգամ ևս ցույց տրվի լենինյան գնահատականի ճշմարտացիությունը: Տոլստոյի մասին Լենինի գրած հոդվածներով մենք կրկին համոզվում ենք, թե իմացական ինչպիսի՜ ուժով է օժտված արվեստի մարքսիստական փիլիսոփայությունը և որպիսի՜ լրացուցիչ ուժ է ձեռք բերում արվեստն ինքը, եթե այն մեկնաբանվում է գիտական ճիշտ դիրքերից, մասնավորապես՝ մարքսիստական-լենինյան էսթետիկայի տեսանկյունից*:*

*Լև Տոլստոյի անվան հետ կապված նշանավոր տարեթիվը մի նոր առիթ էր խոսելու սովետական բազմազգ արվեստի՝ կոմունիզմի կառուցման աուաջնակարգ զենքի, կենսական խնդիրների մասին:*

Մոսկվա

---

* Հայտնի է, որ մեծ գրողի հայացքները հայ իրականության մեջ են թափանցել տակավին նրա կենդանության օրոք՝ անցյալ դարի վերջին քառորդից սկսած: Նրա **Մանկությունը**, **Պատանեկությունը**, **Կրեյցերյան սոնատը**, **Կովկասի գերին**, **Կոզակները**, **Սևաստոպոլյան պատմվածքները**, **Պոլիկուշկան**, **Հարությունը**, **Լյուցերնը**, **Աննա Կարենինան** և բազմաթիվ այլ երկեր հայերեն լույս են տեսել մինչև 1920 թվականը:

Սակայն հանճարեղ գրողի երկերի տպագրությունը պետական կայուն հիմքերի վրա դրվեց և մեծ տպաքանակով աշխատավորական հոծ զանգվածներին մատուցվեց միայն սովետական կարգերի հաստատումից հետո: Հայ ընթերցողը վաղուց իր տրամադրության տակ ունի Լև Տոլստոյի կարևորագույն բոլոր ստեղծագործությունների բարձրորակ թարգմանությունները: Հայպետհրատի երախտիքն այս գործում՝ անուրանալի է: Բայց դեռևս շատ բան կա անելու տոլստոյագիտության բնագավառում:

Ուշագրավ է, որ անցյալ դարի 80-ական թվականներից ի վեր, հայ պարբերական մամուլի էջերում հսկայական նյութ է սփռված Լև Տոլստոյի գրական ժառանգության հարցի շուրջ, նյութեր, որոնք ըստ էության հայ ժողովրդի հասարակական մտքի տարբեր հոսանքներն ու ձգտումներն են արտահայտում: Ըստ արժանվույն գնահատելով Ս. Արեշյանի արժեքավոր մենագրությունը նվիրված այդ հարցին, և Ռ. Հովհաննիսյանի, Տ. Հախումյանի, Գ. Հովնանի և այլոց ջանքերը՝ մեծ գրողի ու հայ իրականության առնչությունների լուսաբանման նպատակով, ավելորդ չենք համարում հիշատակել, որ **Լև Տոլստոյը հայոց մամուլում** շնորհակալ թեման սպասում է իր բազմակողմանի ու հիմնավոր հետազոտողին: (Խմբ.):

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

ՎԱՐԴԱՆՅԱՆ Լ. Ս.

Հայկ. ՍՍՀ Առևտրի մինիստր

## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՌԵՎՏՐԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

*Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում մեր երկրի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման նկատմամբ: ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքը ստեղծեց հզոր և բազմակողմանի զարգացած էկոնոմիկա: Այժմ բոլոր հնարավորությունները կան ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար»:*

*Օգտագործելով այդ հնարավորությունները, սովետական մարդիկ իրենց ստեղծագործական ձեռներեցությամբ իրագործում են ժողովրդական տնտեսության զարգացման պլանով նախատեսված առաջադրանքները: Հանրային հարստության աճի համեմատ, տարեցտարի բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը: ՍՍՀՄ-ում անցյալ տարի, 1966 թ. համեմատությամբ, ազգային եկամուտն աճեց 7, բնակչության ռեալ եկամուտը՝ 6 տոկոսով: Մեր հանրապետությունում 1967 թ. բանվորների և ծառայողների ամսական միջին դրամական աշխատավարձը կազմեց 101 ռուբլի. բնակչությունը սպասարկման հանրային ֆոնդից ստացավ 414 միլիոն ռուբլի:*

*Բանվորների, գյուղացիների և ծառայողների եկամտի աճի շնորհիվ բարձրացել է նրանց գնողունակությունը, հետևաբար ընդարձակվել պետական առևտրի շրջանառությունը: Հանրապետությունում ապրանքաշրջանառության 1967 թ. պլանը կատարվեց 101,7 տոկոսով, որից մանրածախ առևտրինը՝ 101,7 իսկ հասարակական սննդինը՝ 101,5 տոկոսով: Ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալը բացարձակ գումարով կազմեց 579,7 միլիոն ռուբլի և բնակչությանը 1967 թ., սահմանված ֆոնդերի համեմատությամբ, ավելի վաճառվեց 10, իսկ 1965-ի համեմատությամբ՝ 93,4 միլիոն ռուբլու ապրանք: Մանրածախ առևտուրն ու հասարակական սննդի սպասարկումը 1965 թ. նկատմամբ աճեցին մոտ 20 տոկոսով (նախատեսված 17,8 տոկոսի փոխարեն), որից մանրածախ առևտուրը՝ 18,8 (17,8 տոկոսի փոխարեն), հասարակական սնունդը՝ 22,6 տոկոս (16,7 տոկոսի փոխարեն): Հասարակական սննդի ոլորտում սեփական արտադրանքի աճը նույն ժամանակամիջոցում կազմեց 26,4 տոկոս (15,2 տոկոսի փոխարեն): Չնայած սեփական արտադրանքը բավարար չափով է աճել, բայց դրա տեսակարար կշիռն ընդհանուր առևտրի մեջ դեռևս ցածր է (6,7 տոկոս):*

*Բնակչության գնողունակության անընդմեջ բարձրացումն առևտրի աշխատողներին հարկադրում է մտահոգվել ապրանքային ֆոնդերի ավելացմամբ: Եվ մենք ձգտում ենք հասնել դրան:*

*Հիմնական մի շարք ապրանքների առատության շնորհիվ բնակչության պահանջմունքները դրանց նկատմամբ բավարարվում են, իսկ մի մասի վաճառքը գերազանցում է ապրանքաշրջանառության միջին աճը: 1965 թ. համեմատությամբ, 1967 թ. ավելի է վաճառվել միս և երշիկեղեն՝ 10,1, հա-*

գուստեղեն, գուլպա, տրիկոտաժ՝ 19,4, կոշկեղեն՝ 7,1, կահույք, կենցաղային էլեկտրաապրանքներ և կուլտապրանքներ՝ 7,8 միլիոն ռուբլու։ Հանրապետության պետական առևտրի անցած երկու տարիների փաստացի աճը կազմել է մոտ 20,0 տոկոս, իսկ 1968 թ. պլանով նախատեսված է 10,2 տոկոս։ Հիմնական և կարևոր մի շարք ապրանքատեսակների ֆոնդերը, 1965 թ. համեմատությամբ, աճել են 50—61 տոկոսով։

Առևտրի վիճակը բարելավելու և աշխատավորության կուլտուրական սպասարկումը կազմակերպելու համար, մեծ նշանակություն ունի առևտրի նյութատեխնիկական բազայի ընդլայնումն ու կարգավորումը։ Անցած երկու տարում կապիտալ շինարարության պլանը կատարվել է 116,1 տոկոսով (բացարձակ գումարը կազմել է 14,4 միլիոն ռուբլի)։ Գործարկվել են 11,6 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր։ Շահագործման են հանձնվել սառնարաններ, շաքարի, ընդհանուր ապրանքների, կարտոֆիլի, բանջարեղենի ու մրգերի պահեստներ, ձեռք են բերվել ավելի քան 7000 առևտրա-տեխնոլոգիական և սառնարանային սարքավորումներ։ 1965 թ. տարեվերջի համեմատությամբ, ընդլայնվել է մանրածախ առևտրի և հասարակական սննդի ցանցը։ Կառուցվել են 199 նոր օբյեկտ, 7200 բանվորական տեղով և աթոռով։

Հայաստանի ԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ կառավարությունը հատուկ ուշադրություն են նվիրում հասարակական սննդի հետագա զարգացմանն ու ընդլայնմանը։ Նախատեսված է 1967—1970 թթ. հանրապետությունում կառուցել նոր ճաշարաններ ու սրճարաններ՝ 91200 տեղով, վերակառուցել ու մեծացնել գործող ճաշարաններն ու սրճարանները, որոնք հնարավորություն կընձեռեն ավելի շատ մարդ ընդգրկել հասարակական սննդի սպասարկման ոլորտը։

Առևտրի օբյեկտների այսպիսի աճը, առաջին հերթին, արդյունք է այն բանի, որ մեր երկրում արդյունաբերության բնագավառում աշխատողներն իրենց ջանքերը գործադրում են անթերի կատարելու լայն սպառման ապրանքների արտադրության պլանային առաջադրանքները։ Բայց, ցավոք, դեռևս կան արդյունաբերական որոշ ձեռնարկություններ, որոնք թերանում են այս գործում և պետական պլանով նախատեսվածից քիչ ապրանք են մատակարարում առևտրական կազմակերպություններին։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները 1966 թ. կառավարության սահմանած լրացուցիչ առաջադրանքներից պակաս ապրանքներ մատակարարեցին՝ 12,9, 1967-ին՝ 22,6 և 1968 թ. առաջին կիսամյակում՝ 15 միլիոն ռուբլու։ Երկու և կես տարում միայն պարենային ապրանքներ (պտուղբանջարեղենի պահածոներ, մակարոն, գինիներ, հրուշակեղեն) չի մատակարարվել 17 միլիոն ռուբլու։ Չի պահպանվում մատակարարվող ապրանքների ասորտիմենտը (ներկայացրած հայտերի և պայմանագրերի համաձայն), բավարար չափով չեն արտադրվում մանկական, դպրոցական, սպորտային, կանացի ամառային հագուստներ, մանկական կոշիկներ և այլ ապրանքներ։ Այժմ մի շարք ապրանքների արտադրությունը փոխարինվում է ուրիշներով և, այսպիսով, ընդլայնվում է համախառն ապրանքների առևտուրը։ Դա խոչընդոտում է և՛ առևտրի և՛ արդյունաբերության ծավալմանը, որովհետև առանց հայտի թողարկած ապրանքը պահանջարկ չունենալով կուտակվում է կամ արտադրության, կամ առևտրի ցանցում։

Ապրանքատեսակների խախտումների և անբավարար մատակարարման հետևանքով 1968 թ. առաջին կիսամյակում (չնայած 0,7 միլիոն ռուբլու մանրածախ գերնորմատիվային ընդհանուր մնացորդներ կար) պակաս են եղել հրուշակեղենը՝ 1,6, բրդյա գործվածքները՝ 1, հագուստեղենը՝ 3, կոշկեղենը՝ 1,2 միլիոն ռուբլով և այլն։ Առևտրի մատակարարման պլանները թերակատարելու և որակական ցուցանիշները խախտելու համար հանրապետության առևտրական ձեռնարկությունները 1966—1967 թթ. 853 հազար ռուբլու տույժ և տուգանք են վճարել։

Այժմ աճել է սովետական քաղաքացու եկամուտը, զարգացել էսթետիկական ճաշակը։ Նա ուզում է հագնվել ճաշակով զգեստ, նորաձև ու գեղեցիկ կոշիկ, բնակարանը կահավորել ընտիր կահույքով։ Այսօր մեր երկրի ար-



դյունաբերական ձեռնարկությունները հագեցված են ժամանակակից մեքենաներով ու սարքավորումներով, օրեցօր կատարելագործվում են տեխնոլոգիական պրոցեսները, անընդհատ որակավորվում բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները։ Այս ամենը հնարավորություն են տալիս արտադրելու բարձրորակ ապրանքներ։ Անկասկած, մեր երկրում արտադրված բազմաթիվ ապրանքներ իրենց որակով գերազանցում են արտասահմանյանին։ Բայց արդյունաբերական առանձին ձեռնարկություններ անբավարար են զբաղվում արտադրանքի որակի բարձրացմամբ։ Այդ է պատճառը, որ 1967 թ. առևտրական կազմակերպությունները 4 միլիոն ռուբլու կահույք չստացան։ Արտադրված կահույքի, ինչպես նաև գործվածքեղենի մեծ մասը խոտան էր և չէր բավարարում բնակչության պահանջները։

Տհաճ համ ու հոտի, վատ տեսքի և այլ պատճառներով 1967 թ. առևտրից հանվել են պտուղբանջարեղենի բազում պահածոներ։ Խոտան արտադրանք են թողարկել Արարատի (15,6 տոկոս), Ղափանի (12,5 տոկոս), Շամշադինի (32,5 տոկոս) պահածոների գործարանները։ Վերջին մի քանի տարվա ընթացքում նկատելի չափով իջել է գինիների որակը՝ անհետացել տիպականությունը, համը, փունջը։ Դրանք ժամանակից շուտ են պղտորվում և նստվածքներ տալիս։ Այդ, գլխավորապես, հետևանք է գինու նախնական մշակման տեխնոլոգիայի խախտման։ Խոտանվել են Հոկտեմբերյանի մրգապտղային գինիների կոմբինատի արտադրանքի 69,7, Վերին Արտաշատի գինու գործարանի գինենյութերի 56,0 և Բուրաստանի գինու գործարանի գինենյութերի 100 տոկոսը։ Անորակ է նաև գարեջրի, զովացուցիչ ջրերի արտադրությունը։ Մեկ տարում խոտանվել են Գորիսի գարեջրի գործարանի արտադրանքի 50, Հրազդանի՝ 53,6, Լենինականի 31,5, Իջևանի՝ 55,7 տոկոսը։ Ցածրորակ է նաև Ջերմուկի հանքային ջրերի գործարանի արտադրանքը։

Անհրաժեշտ է պատշաճ ուշադրություն նվիրել նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ու որակի բարձրացման վրա։ Առևտրի մինիստրության ձեռնարկությունները 1966 թ. 14,6 և 1967 թ. 16,0 հազար տոննա գյուղատնտեսական մթերքներ պակաս ստացան։ Թռչնաֆերմաներում և թռչնամշակման կայաններում խախտվում են մորթի տեխնիկական պայմանները։ Հաճախ առևտրական կազմակերպությունները վաճառում են կենդանի թռչուն, որը տեղիք է տալիս առևտրի կանոնների խախտումների։

Մեր կուսակցության ծրագրային դրույթներից է՝ անհրաժեշտ պայմաններ ստեղծել տնային տնտեսության մեջ կնոջ աշխատանքը կրճատելու և հեշտացնելու համար։ Հասարակական սննդի ցանցի ընդարձակումը, կիսաֆաբրիկատների առևտրի ծավալումը, ճաշերի բազմազանությունն ու որակի բարձրացումը հնարավորություն կընձեռեն բնակչության մեծ մասին սպասարկելու հասարակական սննդով և կնոջն ազատելու խոհանոցից։ Անցյալ տարի հասարակական սննդի ցանցի 62 ձեռնարկություններում ստեղծվեցին ինքնասպասարկման կետեր։ Սակայն բնակչության սպասարկման համար տեղերի կառուցման առաջադրանքի միայն 50 տոկոսը կատարվեց։ Եվ այդ այն դեպքում, երբ այս գործում ընդհանուր միութենականից շատ ետ ենք մնում։ Անհրաժեշտ է արագացնել հասարակական սննդի նոր օբյեկտների կառուցումը։ Այդ նպատակով պլանային մարմինները պետք է բավարար հատկացումներ կատարեն, իսկ քաղաքային սովետների գործկոմները (օրենքով նախատեսվածի համաձայն) տարածություն տրամադրեն հասարակական սննդի կազմակերպություններին։

Առևտրի մինիստրությունն ու նրա կազմակերպությունները որոշ աշխատանք են կատարել կադրերի դաստիարակության և առաջքաշման վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1967 թ. հուլիսի 12-ի որոշումը կենսագործելու ուղղությամբ։ 1965 թ. համեմատությամբ, 1967 թ., առևտրի աշխատողների թիվն ավելացավ 4,3 հազարով, որից 2,8 հազարը կանայք են։ Այժմ պետական առևտրի ցանցում աշխատում են մոտ 29 հազար հոգի, որոնցից 14,8 հազարը կանայք են։ Փոխվել է նաև առևտրի աշխատողների որակական կազմը։ 1968 թ. հունվարի մեկի դրությամբ, 1253 հոգի ունեն

բարձրագույն մասնագիտական, 2023-ը՝ միջնակարգ մասնագիտական և 11220-ը՝ միջնակարգ ընդհանուր կրթություն, որոնք կազմում են բոլոր աշխատողների 50,0 տոկոսը։ Տարեկան 650 մասսայական պրոֆեսիայի կադրեր են պատրաստում մինիստրության անհատական-բրիգադային ուսուցման 18 դպրոց-խանութները, դպրոց-ճաշարանները և առևտրա-խոհարարական պրոֆտեխնիկական ուսումնարանը։ 1966—1967 թթ. պարենային և ոչ պարենային ապրանքների վաճառողներ, խոհարարներ և մասսայական պրոֆեսիաների այլ մասնագիտություններ են ձեռք բերել 1084 հոգի։ Ամեն տարի կարճատև դասընթացներում վերապատրաստվել են ավելի քան 2000 հոգի։

Ղեկավար աշխատանքի են փոխադրվել 15 երիտասարդ մասնագետ (հիմնականում բարձրագույն մասնագիտական կրթությամբ)։ Առևտրի վարչությունների և բաժինների, տրեստների, մեծածախ բազաների և այլ խոշոր ձեռնարկությունների 31 ղեկավար աշխատողներ (մասնագիտությամբ և գործնական հատկանիշներով) իրենց պաշտոնին չհամապատասխանելու պատճառով ազատվել են աշխատանքից. նրանց փոխարինել են ձեռնհաս մարդիկ։ Ավելի քան 100 վաճառող մասնագետ, այդ թվում՝ 64 կին այժմ խոշոր ձեռնարկություններ, բաժիններ և սեկցիաներ են ղեկավարում։

Առևտրի և հասարակական սննդի ցանցը բարելավելու, մի շարք հիմնական ապրանքների առևտուրը մասնագիտացնելու, առաջավոր մեթոդներ ներդնելու և ազգաբնակչության սպասարկման կուլտուրան բարձրացնելու նպատակով 1966—1967 թթ. զգալի աշխատանք է կատարվել։ Մասնագիտացվել են 92, բացվել կահավորված նոր (երաժշտական, ֆոտո և կինո ապրանքների, կոշիկի, գործվածքեղենի, հագուստեղենի տներ, մթերային խանութներ՝ սրճարաններով և այլն) խանութներ։ Այդ ժամանակամիջոցում վաճառքի մեջ ներդրվել են 76 տեսակի նոր ապրանք։ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Դիլիջանում, Ալավերդիում, Հրազդանում և Արարատում կազմակերպվել են նմուշներով և բաց ցուցափեղկերով 42 և ինքնասպասարկման 39 խանութ։

Չնայած ձեռնարկած միջոցառումներին, առևտրի կուլտուրայի և բնակչության սպասարկման գործում դեռևս կան բազմաթիվ թերություններ, խախտումներ և ապրանքանյութային արժեքների պակասորդներ ու յուրացումներ։ Առևտրի ցանցում դեռևս կան անազնիվ, անբարեխիղճ մարդիկ, որոնք խաբում են գնորդներին, կողոպտում նրանց, խախտում գները, թերաչափում, թերակշռում, իսկ ոմանք էլ վատնում պետական միջոցները։ Կադրերի ընտրության, տեղաբաշխման գործում թույլ տրված կուսակցական սկզբունքի խախտումների, անհրաժեշտ հսկողության և ստուգման բացակայության հետևանքով նյութական պատասխանատու պաշտոններում երբեմն նշանակվում են չստուգված, անազնիվ մարդիկ։ Այդ էր պատճառը, որ 1967 թ. Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Դիլիջանի առևտրական կազմակերպություններում և Հայառմոնտաժ կոմբինատում վատնում-յուրացումների և պակասորդների բազմաթիվ դեպքեր են եղել։ Ճիշտ է, դրանց արժեքի մեծ մասը գանձվել է, սակայն այդ անհանդուրժելի դեպքերն արմատախիլ չեն արվում։ 1967 և 1968 թթ. առաջին եռամսյակում մինիստրության աշխատակիցները 2476 օբյեկտ այցելելիս 912-ում հայտնաբերել են ապրանքների գների և տեսակների խախտման, թերահաշվումների, թերակշռումների, ապրանքների գները չցուցադրելու և բազմաթիվ այլ դեպքեր։ Չնայած հանցավորների մեծ մասը պատժվել են, բայց առևտրի կանոնները խախտող ու պետական միջոցներին ձեռք մեկնած յուրաքանչյուր անձնավորության նկատմամբ պետք է ցուցաբերել անհաշտ վերաբերմունք և հասարակական ընդհանուր բացասական կարծիք ստեղծել։

Այդ գործում մեզ պետք է օգնեն բոլոր քաղաքացիները։ Սակայն, դժբախտաբար, այդպիսիների դեմ դեռևս անբավարար են պայքարում ինչպես առևտրական օրգանները, նույնպես և դատաքննչական, ժողովրդական վերահսկողության օրգանները, արհմիութենական կազմակերպությունները, որոնց տեղկոմները հաճախ աշխատանքի են վերականգնում առևտրի կանոնները խախտողներին։



Մի՞թե ներելի է, երբ վաճառողը մանր դրամը չի վերադարձնում գնորդին։ Վերջինս, երբ օրինակ վրդովվում է, մյուս գնորդները փոխանակ հանդիմանելու վաճառողին, սկսում են հանգստացնել գնորդին։

Մեծ է նաև կուսակցական սկզբնական կազմակերպությունների և արհմիությունների տեղական կոմիտեների պատասխանատվությունն այս գործում։ Նրանք պետք է անհանդուրժող լինեն թերակշռողների, թերաչափողների ու դրամաշորթների նկատմամբ։

Հայաստանում 1968 թ., 1967 թ. համեմատությամբ մանրածախ առևտուրն ու հասարակական սնունդը կաճի 10,6 տոկոսով (բացարձակ գումարը 58 միլիոն ռուբլի)։ 1965—1967 թթ. 151 միլիոն ռուբլով ավելի ապրանք է վաճառվել, քան 1964 թ.։

Չնայած գոյություն ունեցող որոշակի դժվարություններին ու խոչընդոտներին, առևտրի բնագավառի աշխատողներն իրենց ջանքերը կգործադրեն պետական առաջադրանքները կատարելու, ավելի լավ սպասարկելու բնակչությանը։ Գործի հաջողությունը պահանջում է, որ հանրապետության արդյունաբերական մինիստրությունները և դրանց արտադրական ձեռնարկությունները սահմանված կարգով և ժամկետներին կատարեն իրենց պարտավորությունները, պահպանեն ապրանքների ասորտիմենտը, բարձրացնեն դրանց որակը, ապահովեն 1968 թ. պլանով նախատեսված ապրանքների արտադրությունը և դրան զուգընթաց փակեն 1967 թ. ճեղքվածքը։ Այս պայմաններում միայն առևտրի մինիստրությունը կկատարի ո՛չ միայն ապրանքաշրջանառության հիմնական, այլև դրամարկղային պլանները։

Առևտրի նյութատեխնիկական բազան բարելավելու նպատակով, այս տարի կապիտալ շինարարության համար առևտրի մինիստրությանը հատկացված է 7,3, իսկ հիմնական ֆոնդերի շահագործման համար՝ 8,1 միլիոն ռուբլի։ Այդ հնարավորություն կտա շահագործման հանձնել Լենինականի պահեստասառնարանային բազան, 4900 քմ. տարողությամբ պահեստը, բանջարեղենի և մրգերի պահեստարանը (550 տոննա), Երևանի բանջարեղենի պահեստարանների առաջին և երկրորդ հերթը (4300 տոննա), Ղափանի (1100 տոննա), Կամոյի (1100 տոննա), Հրազդանի (2200 տոննա) պահեստարանները. բացի այդ կբացվեն նոր հանրախանութներ, սրճարաններ և առևտրի այլ ձեռնարկություններ։

Հատկացված միջոցները 1968 թ. կօգտագործվեն Երևանի 300 բանվորական և 200 տեղանոց հանրախանութ-ճաշարանի, Կիրովականի հանրախանութ-ճաշարանի, 5 ծածկած շուկաների, Ջերմուկի բազայի, Արարատի և Կամոյի հանրախանութների և բազմաթիվ այլ ձեռնարկությունների շինարարություններն ավարտելու համար։

Առևտրի մինիստրությունը և նրա կազմակերպությունները ղեկավարվելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կառավարության ցուցումներով, տեղական կուսակցական ու սովետական մարմինների օգնությամբ կկատարեն և կգերակատարեն 1968 թ. պլանները։

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

(Հայկական ՍՍՀ քիմիական արդյունաբերության օրինակով)

Վ. Ի. Լենինը նոր հասարակարգի հաղթանակի համար ամենակարևորը, ամենագլխավորը համարում էր աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ընդգծելով, որ «կոմունիզմը... աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է կապիտալիզմի նկատմամբ» (Երկեր, հ. 29, էջ 524)։ Սոցիալիզմի կարևորագույն առավելությունը կապիտալիզմի նկատմամբ այն է, որ վերացրեց արտադրաուժերի և արտադրահարաբերությունների կապիտալիստական հակասությունը և լայն ասպարեզ բացեց աշխատանքի արտադրաուժի արդյունավետ օգտագործման համար։ Հինգ տասնամյակների ընթացքում մեր երկրում աշխատանքի արտադրողականությունն աճել է շատ ավելի բարձր տեմպերով, քան զարգացած կապիտալիստական երկրներում։ Այսպես, նշված ժամանակաշրջանում ՍՍՀՄ-ում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է ավելի քան 13, ԱՄՆ-ում՝ 3,5, Անգլիայում՝ 1,7, Ֆրանսիայում՝ 2,6 անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնների դերը պայմանավորված է, մի կողմից՝ արտադրաուժերի զարգացման մակարդակով, մյուս կողմից՝ տիրապետող արտադրահարաբերություններով։ Սոցիալիստական հասարակարգում որպես աշխատանքի արտադրաուժը որոշող պայման, վճռական նշանակություն է ստանում նաև հասարակության կողմից արտադրությունը գիտակցորեն կարգավորելու, պլանավորելու ֆունկցիան։

Հայտնի է, որ ժողովրդական տնտեսության մասշտաբով աշխատանքի արտադրողականության բարձրացման համար կարևոր պայման է արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումն այն հաշվով, որ արտադրությունը կազմակերպվի հումքի և էներգիայի աղբյուրներին մոտ։ Այսպես. երկրի ինդուստրացման տարիներին, երբ կենսական պահանջ էր դարձել կաուչուկի արտադրության ստեղծումը մեր երկրում, ՀԿԿ Կենտկոմն ու Հայկական ՍՍՀ ժողկոմխորհը հենվելով հայ և ռուս քիմիկոս գիտնականների տվյալների վրա, նախաձեռնեցին այդ արժեքավոր քիմիական նյութի արտադրությունը մեր հանրապետությունում։ Դրա համար Հայաստանում կային այն պայմանները, որոնք թույլ կտային ամենից արագ և աշխատանքային նվազագույն ծախսումներով բավարարել կաուչուկի հրատապ պահանջը։ Քլորոպրենային սինթետիկ կաուչուկի արտադրության ստեղծման հետ միասին, Հայաստանը դարձավ երկրին կալցիում-կարբիդի և դրանից ստացված ացետիլենային բազմազան քիմիական նյութերի հիմնական մատակարարողներից մեկը։

Տարիներ անց, երբ երկրի այլ վայրերում ստեղծվեցին ավելի էժան էներգիա ստանալու և այդ բազայի վրա ացետիլենային քիմիայի զարգացման հնարավորություններ, փոխվեց իրավիճակը։ Արդեն տնտեսապես նպատակահարմար էր ացետիլենի բազայի վրա արտադրվող շատ քիմիական նյութեր օգտագործել տեղում։ Չնայած դրան, մինչև այժմ էլ շարունակվում է էլեկտրաէներգիայի սակավ ռեսուրսների պայմաններում էներգատար արտադրության քիմիական արդյունաբերության արդյունքի 83 տոկոսն արտահանվել, որովհետև այն տեղում հետագա մշակման ենթարկելու և վերջնական սպառման արդյունք ստանալու համար դեռևս պայմաններ չեն ստեղծված։ Անշուշտ դա չի բխում հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման շահերից։

Ժողովրդական տնտեսության զարգացման պլանները կազմելիս (ելնելով հասարակական արտադրության առաջընթացի պահանջներից) որոշվում են նաև պլանավորվող ժամանակաշրջանի համար գիտահետազոտական աշխատանքների բնագծերը։ Օրինակ, Հայկական ՍՍՀ քիմիական արդյունաբերության զարգացման յոթնամյա և ընթացիկ հնգամյա պլանները մշակելիս (ելնելով այդ ճյուղի զարգացման հեռանկարային խնդիրներից), հանրապետության քիմիական գիտահետազոտական հիմնարկների աշխատողներից պահանջվեց մշակել առավել օգտավետ հումքի տեսակների, հատկապես բնական գազի կիրառման, քլորոպրենային սինթետիկ կաուչուկի արտադրության կատարելագործված եղանակներ, բացահայտել ացետիլենի և դրանց ածանցյալ նյութերի միացությունների չհայտնաբերված հատկանիշներ և ստեղծել նոր միացություններ, սինթեզել նոր տեսակի ռեակտիվներ, դեղորայք և թունաքիմիկատներ, գտնել հանրապետության բնական հարստությունների կոմպլեքս օգտագործման առավել արդյունավետ եղանակ, նշել անօրգանական քիմիայի զարգացման առաջավոր ուղիներ և այլն։

Պետք է նկատել, որ հանրապետության քիմիական գիտահետազոտական հիմնարկները յոթնամյակի տարիներին պատվով կատարեցին իրենց խնդիրները։ Սակայն այդ աշխատանքների արդյունքների կիրառումը չհասավ յոթնամյա պլանով նախատեսված մակարդակին։ Այսպես, դեռևս 1947 թվականից Հայաստանի գիտնականներն աշխատում են մշակել նեֆելինային սիենիտները կոմպլեքսային եղանակով օգտագործելու տեխնոլոգիան։ Այդ աշխատանքները, տարիներ առաջ, հաջողությամբ պսակվեցին։ Դրա հիման վրա յոթնամյակի առաջին տարում սկսվեց Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը, որի կարողության 55—60 տոկոսը գործարկվելու էր յոթնամյակի վերջին տարում։ Սակայն ինչ-ինչ պատճառներով այդ ժամանակամիջոցում իրացվեց կոմբինատի նախահաշվային արժեքի 20 տոկոսը միայն, և արտադրական ոչ մի տեղամաս չգործարկվեց։ Հնգամյա պլանի դիրեկտիվներով խնդիր է դրվում հիմնականում ավարտել կոմբինատի շինարարությունը։ Կապիտալ հատկացումների և շինարարության ընթացքը ցույց է տալիս, որ ներկա տեմպերի դեպքում այս առաջադրանքը ևս կմնա թղթի վրա։

Գիտական կանխատեսումների համաձայն, առաջիկա 15 տարում ավելի շատ գիտական հայտնագործություններ կկատարվեն, քան նախորդ 200 տարում։ Գիտության զարգացման այսպիսի առաջընթացի պայմաններում նրա արդյունքների նման դանդաղ արմատավորումը ո՛չ միայն չի նպաստի հասարակական աշխատանքի արտադրաուժի մեծացմանը, այլև բարոյապես կհնանա, կկորցնի իր նշանակությունը։

Մի այլ օրինակ. Հայաստանի քիմիկոսներն ու ինժեներները (առանձնապես Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի լաբորատորիայի, պոլիմերների համամիութենական և ՀՍՍՀ ԳԱ օրգանական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտների կոլեկտիվների միացյալ ուժերով), դեռևս 1962 թվականին լուծեցին բնական գազից ացետիլեն ստանալու տեխնոլոգիական խնդիրը։ Սակայն արդյունքներն արտադրության մեջ կիրառվեցին շատ ուշ (1966 թվականի առաջին եռամսյակում), այն էլ խիստ մասնակի։ Նշանակում է տնտեսապես ավելի ձեռնտու հումքի՝ բնական գազի կիրառման և այդ ուղիով աշխատանքի արտադրաուժի մեծացման համար գիտահետազոտական աշխատանքի արդյունքները ժամանակին չծառայեցին իրենց նպատակին և չստացվեց նախատեսված արդյունքն ինչպես տվյալ ճյուղում, այնպես էլ ժողովրդատնտեսության մեջ։ Դա հետևանք էր այն բանի, որ նոր հումքի բազայի վրա աշխատող արտադրակարողությունները ժամանակին չգործարկվեցին՝ անհրաժեշտ սարքավորումների արտադրության և մատակարարման անբավարար կազմակերպման հետևանքով։ Այդ հանգամանքը, մի կողմից՝ տվյալ արտադրության համար օբյեկտիվ պատճառ էր, մյուս կողմից՝ սուբյեկտիվ գործոնի, տվյալ դեպքում տնտեսության պլանային վարման անբավարար օգտագործման հետևանք։

Բերված օրինակները վկայում են, որ մեզ մոտ, պլանավորման միջոցով հասարակական արտադրությունը կարգավորելու համար ստեղծված հնարավորությունները միշտ չէ, որ բավարար են օգտագործվում։ Դա, իր հերթին,

օբյեկտիվ պատճառ է դառնում, որ գիտահետազոտական աշխատանքների արդյունքների մի մասը ևս ժամանակին տեխնոլոգիական կիրառում չգտնելով, արդյունք չի տալիս։

Հայտնի է, որ աշխատանքի պրոցեսի փոփոխումն ու կատարելագործումն ունեն օբյեկտիվ տենդենց։ Սակայն սոցիալիստական հասարակարգում աշխատանքի արտադրաուժի մեծացման նպատակով գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում մեծ դեր են կատարում արտադրության աշխատողները։ Դա, առաջին հերթին, պայմանավորված է հասարակական արտադրության արդյունքի ավելացման նկատմամբ նրանց անձնական, կոլեկտիվ և հասարակական զուգակցված շահերի նպատակահարմար իրացման օբյեկտիվ ձգտումով։ Որքան հաջող են զուգակցվում հիշյալ շահերը, այնքան բարձր է աշխատողների շահագրգռվածությունն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջադիմությունն ապահովելու գործում։

Հասարակության անդամների անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերի զուգակցման համար օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծվում սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, երբ արտադրամիջոցները դառնում են հանրային սեփականություն։ Դրա շնորհիվ է, որ սոցիալիստական հասարակարգում արտադրության աշխատողները մասսայական ակտիվություն են դրսևորում արտադրության կատարելագործման ասպարեզում, միլիոնների ստեղծագործական կարողություններն ի սպաս են դրվում աշխատատար պրոցեսների մեքենայացմանն ու տեխնոլոգիայի կատարելագործմանը, աշխատանքի արտադրաուժի մեծացմանը։ Աշխատանքի պրոցեսի կատարելագործման ասպարեզում արտադրության աշխատողների ակտիվության վառ արտահայտությունն է գյուտարարական ու ռացիոնալիզատորական մասսայական շարժումը։ Հայկական ՍՍՀ քիմիական արդյունաբերության մեջ, օրինակ, արտադրական անձնակազմի հինգից մեկը գյուտարար է կամ ռացիոնալիզատոր։

Նշված ճյուղում յոթնամյակի տարիներին ներդրվել է 14358 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություն, որից ստացած պայմանական օգուտը կազմել է 19260 հազար ռուբլի[1]։ Նշանակում է դրան համապատասխան տնտեսվել է անհրաժեշտ աշխատանք կամ բարելավվել են վերջինիս իրականացման պայմանները։

Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զգալի չափով նպաստում է արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանն ուղղված առաջարկությունների արմատավորումը։ Այսպես, Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի կոմբինատում Ն. Կարապետյանի, Ի. Բոշնաղովի, Գ. Մկրտչյանի առաջարկությամբ յուրացվեց նոր ԿՌ տեսակի նաիրիտի կատարելագործված տեխնոլոգիան, որի շնորհիվ տարեկան ստացվեց մոտ 137 հազար ռուբլու լրացուցիչ արդյունք։ Նույն գործարանում Մխ դիսպերսիայի ստացմանը վերաբերող մի խումբ հեղինակների առաջարկության արմատավորման շնորհիվ տարեկան պայմանական կտնտեսվի 6,08 հազար ռուբլի։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում լուրջ աշխատանք է կատարվել գոյություն ունեցող արտադրամիջոցները մոդեռնացնելու և դրանց կարողությունը բարձրացնելու նպատակով։ Օրինակ, հանրապետության քիմիական արդյունաբերության մեջ յոթնամյակի ընթացքում տարեկան միջին հաշվով իրացվել է 25—35 տեխնիկական միջոցառում։ Միայն 1964—1965 թվականներին տվյալ ճյուղի ձեռնարկություններում մոդեռնացվել է 364 անուն միավոր սարքավորում։ Այս գործը նույնպիսի հաջողությամբ կատարվել է նաև 1966—1967 թթ.։

Սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից մեկն էլ առարկայացած աշխատանքի տնտեսումն

[1] Այս և հետագա տվյալները վերցված են քիմիական արդյունաբերության տարեկան հաշվետվություններից և ՀՍՍՀ Կենտրոնական վիճակագրական վարչությունից։



է՝ հումքը, օժանդակ նյութերը, էներգիան խնայողաբար ծախսելու, արտադրանքի որակը բարձրացնելու միջոցով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում մեծ է նաև առաջավոր փորձի դերը հասարակական արտադրության մասշտաբով, մի բան, որը հնարավոր է իրականացնել սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, երբ հասարակության բոլոր անդամները շահագրգռված են արդյունքի մեծացմամբ։

Մեր երկրի աշխատողները, օգտվելով սոցիալիզմի ընձեռած այս հնարավորությունից և կիրառելով խնայողության խստագույն ռեժիմ, հսկայական միջոցներ են տնտեսում։ Օրինակ, հանրապետության քիմիագործները յոթնամյակի տարիներին թողարկվող արտադրանքի վրա ծախսվող անցյալ և կենդանի աշխատանքը տնտեսելով խնայել են ավելի քան 15 միլիոն ռուբլի, այդ թվում՝ մոտ 8 միլիոն ռուբլու հումք և օժանդակ նյութեր, 4 միլիոն ռուբլու վառելիք ու էլեկտրաէներգիա և այլն։ Այդ ամենի շնորհիվ տվյալ ճյուղի ձեռնարկությունները նույն ժամանակամիջոցում շահույթների պլանը գերակատարել են ավելի քան 13 միլիոն ռուբլով։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի պայմաններում խնայողության ասպարեզում արտադրության աշխատողների շահագրգռվածությունն ավելի է խրախուսվում։ Խնայողության միջոցով ավելանում է ձեռնարկության շահույթը, դրանով իսկ հնարավորություն ստեղծվում բարձրացնել կոլեկտիվի բարեկեցությունը։ Այս հանգամանքն օբյեկտիվորեն նպաստում է կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի շահագրգռվածության բարձրացմանը։

Արտադրության միջոցների կատարելագործմանը զուգընթաց մեծանում են արտադրաուժերի կենդանի տարրին՝ մարդուն ներկայացվող պահանջները։ Ուստի և գնալով մեծանում է արտադրաուժերի կենդանի և առարկայական տարրերի համամասնական զարգացման անհրաժեշտությունը, որի ապահովումը, իր հերթին, աշխատանքային և նյութական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու կարևոր պայման է։

Սոցիալիստական հասարակարգում հնարավորություն է ստեղծվում նաև արտադրամիջոցների զարգացմանը համապատասխան, համամասնորեն, պլանավորված ձևով բարձրացնել արտադրության աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Օրինակ, քիմիական արդյունաբերության մեջ յոթնամյակի տարիներին արտադրության զարգացման պահանջներին համապատասխան պատրաստվեցին կադրեր, բարձրացվեց բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի որակավորումը։ Այսպես, նշված ժամանակամիջոցում, նախատեսված 9336 բանվորի փոխարեն պատրաստվել է մոտ 10 հազարը։ Նույն ժամանակամիջոցում ճյուղի ձեռնարկություններում և ուսումնական հիմնարկներում իրենց որակավորումը բարձրացրել են մոտ 17 հազար բանվոր ու 1800 ինժեներա-տեխնիկական աշխատող։

Աշխատանքի արդրաուժի մեծացման գործում անհրաժեշտ է անընդհատ բարձրացնել արտադրության կուլտուրան, ստեղծել աշխատողների հոգեբանական առանձնահատկություններին համապատասխան միջավայր, ապահովել սննդի, հանգստի նորմալ պայմաններ և այլն։ Այս տեսակետից առանձնահատուկ նշանակություն ունի աշխատանքի անվտանգության ապահովումը՝ արտադրության տեխնոլոգիայի և անվտանգության տեխնիկայի կատարելագործման միջոցով։ Յոթնամյակում ամեն տարի գերակատարվել են նաև այդ նպատակով նախատեսված միջոցների իրացման պլանները։ Չնայած կատարված վիթխարի աշխատանքին, այնուամենայնիվ, նշված տարիներին, քիմիական արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճը ետ մնաց ո՛չ միայն արդյունաբերական-արտադրական հիմնական ֆոնդերի, աշխատանքի ֆոնդազինվածության, այլև բանվորների թվի աճի տեմպերից։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ սրա հիմնական պատճառն արտադրակարողությունների անբավարար օգտագործումն է, որը նոր կարողությունների, դրանց հումքային բազայի ու սպառման հնարավորությունների միջև եղած անհամամասնության հետևանք է։ Ստեղծված կարողություն-

Կրասնոսելսկիի շրջանի Հին Բաշքենդի տնտեսությունները։ Այգիների ընդարձակմամբ տարեցտարի ավելանում է այս տնտեսությունների տարեկան դրամական եկամուտը։

Ելնելով մշակվող այգիների փորձից, խորհուրդ է տրվում ծառերը տնկել շարքը-շարքից և բույսը-բույսից 6 մետր հեռու։ Այս դեպքում մեկ հեկտարի վրա կտնկվեն 276 ծառ, հողն ավելի ռացիոնալ կօգտագործվի, մակերեսը կունենա նորմալ բուսածածկ և բույսերը կպաշտպանվեն ինչպես քամիներից, այնպես էլ ցրտահարությունից։ Բայց պետք է նշել, որ այս ասպարեզում դեռևս կան չլուծված հարցեր, որոնք խոչընդոտում են պտղաբուծության զարգացմանը։

Վերջին տարիներում ավազանի տնտեսությունները զգալի բերք են ստացել, որ լրիվ չի իրացվել։ Ելնելով պտղաբուծության զարգացման հեռանկարներից, լավ կլիներ ստացված հումքի բազայի վրա ավազանում կառուցել պահածոյի գործարան (մոտ 1000—1200 տոննա տարողությամբ) ու պահեստ-սառնարաններ (մոտ 700—1000 տոննա տարողությամբ)։

Ներկայումս ավազանի մեջ մտնող շրջաններից միայն մեկում կա (Մարտունիում) պահածոների փոքր գործարան, որը տարեկան 200—250 տոննա պտուղ է մշակում։ Հաշվումները ցույց են տալիս, որ Բասարգեչարի և Մարտունու տնտեսությունները տարեկան կարող են տալ մոտ 1000—1100 տոննա պտուղ (չհաշված ավազանի մյուս շրջանների տնտեսությունները)։ Պտուղը ժամանակին չիրացնելու հետևանքով, կոլտնտեսություններում և սովխոզներում մեծ կորուստներ են լինում։

Սրա անհրաժեշտությունը, մեր կարծիքով, ամենից առաջ զգացվում է հանրապետության մայրաքաղաքի՝ 700 հազարից ավելի բնակիչ ունեցող Երևանի համար։ Ձմռան և գարնան ամիսներին Երևանի խանութներում խնձոր չի վաճառվում (առանձին դեպքերը չհաշված)։ Խնձորը կոլտնտեսային շուկաներում վաճառում են միայն անհատ մարդիկ, որոնք գնի հարցում ազատ են և հաճախ կիլոգրամը վաճառում են 2—3 ռուբլով։ Մինչդեռ լավ պահեստային տնտեսություն ունենալու դեպքում Մարտունու, Բասարգեչարի շրջանների կոլտնտեսությունները նույն ժամանակաշրջանում Երևանում կարող են առավել որակյալ խնձոր վաճառել՝ կիլոգրամը 60—80 կոպեկով։ Այս դեպքում կշահեն ինչպես մայրաքաղաքի աշխատավորները, այնպես էլ տվյալ շրջանների կոլտնտեսությունները։ Վերջիններս ո՛չ միայն հնարավորություն կունենան իրենց մշակած եկամտաբեր կուլտուրան պահեստավորելու և գարնան ու ամռան ամիսներին իրացնելու, այլև որոշ մարդկանց լրացուցիչ աշխատանքով ապահովելու և, միաժամանակ, դրամական համապատասխան մուտք ունենալու, որն այնքան անհրաժեշտ է կոլտնտեսականների աշխատանքի ամենամսյա վարձատրության համար։

Սևանի ավազանի շրջանների պտղաբուծության զարգացման հաջողությունները մեծ չափով պայմանավորված են սորտերի ճիշտ ընտրությամբ։ Վերջին ժամանակներս տարբեր տնկարաններից ներմուծվել են արտասահմանյան բազմաթիվ սորտեր (Կարմիր Աստրախանի, Ջելինի, Ուելսի, Պարմեն-ոսկեճմեռային, Պեպինլոնդոնի. Մելբա, Մեկինտոշ և այլն)։ Չնայած սրանք դրական որոշ հատկություններ ունեն, բայց չեն հարմարվում ավազանի հողակլիմայական պայմաններին։ Ավազանի տնտեսությունների երկարամյա փորձը ցույց է տալիս, որ այստեղ հիանալի աճում և բերք են տալիս միչուրինյան ու ռուսական ծագում ունեցող որոշ սորտեր։ Ելնելով երկարամյա մեր փորձից և կատարված դիտումներից, կարծում ենք, որ Սևանի ավազանում կարելի է մշակել խնձորենու այն սորտերը, որոնք վերջին 2—3 տասնամյակում ապացուցել են իրենց արդյունավետությունը։ Ահա դրանցից մի քանիսը։

**Բելֆլյոր կիտայկա.** Միչուրինյան սորտ է, հարմար ավազանի հողակլիմայական պայմաններին և 3—4-րդ տարում բերք է տալիս (մեկ ծառից, միջին հաշվով, 70—80 կգ), հասնում է հոկտեմբերի առաջին տասնօրյակին։ Պտուղը խոշոր է, լայն, կոնաձև, վարդագույն, վառ կարմիր բծերով, պտղակոթունը հաստ է և ամուր, քաղցրաթթվաշ կամ թթվաշ, դուրեկան համով,



պտղամիսը սպիտակ։ Այն պահվում է մինչև դեկտեմբերի վերջը։ Առողջ արմատի և տերևի մակերեսի շնորհիվ այս սորտը լավ է աճում ինչպես սևահողերում, այնպես էլ լճից ազատված մանր և միջին ավազային բնահողերում։

**Պեպին շաֆրան.** Սա նույնպես Միչուրինյան է, ցրտադիմացկուն, բերք է տալիս 3—4-րդ տարում (մեկ ծառից ստացվում է, միջին հաշվով, 60—70 կգ)։ Պտուղները քաղվում են հոկտեմբերի 2-րդ տասնօրյակից։ Այն կարելի է պահել մինչև մայիս ամիսը։ Այս սորտը ավելի ուշ է ծաղկում, քան բելֆլյոր կիտայկան։ Դա է պատճառը, որ գարնանային ցրտերից ծաղիկները շատ չեն վնասվում։ Ամեն տարի բերք է տալիս։ Ծառը, համեմատաբար, հիվանդությունների ու վնասատուների նկատմամբ դիմացկուն է և քիչ պահանջկոտ։ Աճում է ինչպես Սևանա ջրերից ազատված միջին ու մանր բնահողերում, այնպես էլ ավազանի մյուս հողերում, բացառությամբ կարբոնատային ու ճահճային հողերից։ Սորտը լավ հեռանկար ունի։

**Շաֆրան կիտայկա.** Միչուրինյան սորտ է, ցրտադիմացկուն։ Ծառը բերք է տալիս 4-րդ տարվանից։ Մեկ ծառից ստացվող բերքը միջին հաշվով 80—100 կգ։ Այն հասնում է հոկտեմբերի առաջին տասնօրյակին և պահվում մինչև մայիսը.

**Բելֆլյոր ռեկորդ.** Միչուրինյան է, ցրտադիմացկուն, պտղաբերում է 4—5-րդ տարում (մեկ ծառից միջին հաշվով 50—80 կգ), պտուղները հասնում են հոկտեմբերի առաջին տասնօրյակին և պահվում մինչև փետրվար ամիսը, չկորցնելով համը։ Վեգետացիայի ընթացքում ծառը փարթամանում է։ Լավ է աճում Սևանա լճից ազատված բնահողերում։

**Բելֆլյոր դեղին.** Արտասահմանյան սորտ է, ունի միջին ցրտադիմացկունություն։ Մյուս սորտերի մեջ ամենաքիչ տոկոսն է կազմում։ Ուշ է պտղաբերում (6—7-րդ տարվանից)։ Պտուղները հասնում են սեպտեմբերի երրորդ տասնօրյակում, պտուղը խոշոր է և լավ է պահվում։ Հաճելի համ ունի, լավ է ինչպես սպառման, այնպես էլ վերամշակման համար։ Մեկ ծառից քիչ բերք է ստացվում, պահանջկոտ է սննդանյութերի և արտաքին պայմանների նկատմամբ։

**Ռենետ բերգամոտային.** Միչուրինյան տարածված սորտերից է, ցրտադիմացկուն, քիչ բերք է տալիս, ծառերը պտղաբերում են 4—5-րդ տարվանից և հասնում հոկտեմբերի առաջին տասնօրյակում։ Չնայած լավ է պահվում, սակայն երկար մնալով, պտուղները թառամում են, համը՝ թթվաշ կամ թթվաշաքաղցր է։ Ծառը պտղաբերում է ընդմիջումներով, աճը ուժեղ է, նոսր ճյուղերով ու երկար շիվերով։ Արտաքին պայմանների ու սննդանյութերի նկատմամբ պահանջկոտ չէ, դիմացկուն է ինչպես հիվանդությունների, այնպես էլ վնասատուների նկատմամբ։

**Անտոնովկա 600 գրամանոց.** Միչուրինյան ցրտադիմացկուն սորտ է։ Բերքը մեկ ծառից միջին հաշվով 80—120 կգ է, ուշ է պտղաբերում (6—7-րդ տարվանից)։ Պտուղը հասնում է հոկտեմբերի առաջին տասնօրյակում, այն պահվում է մինչև նոյեմբերի վերջը և համեմատաբար քիչ պահանջկոտ է։ Հիվանդությունների ու վնասատուների նկատմամբ ունի միջին դիմացկունություն։

**Ապորտ.** Հին ուկրաինական սորտերից է։ Միջին ցրտադիմացկունությամբ, լավ է աճում լեռնային պայմաններում (մեկ ծառից ստացված բերքը, միջին հաշվով, 90—120 կգ)։ Ծառերը բերք են տալիս 5—6-րդ տարվանից։ Պտուղները հասնում են սեպտեմբերի երրորդ տասնօրյակին, պահունակությունը միջակ, պտուղները խոշոր են։ Այս պտղի կեղևը բերքահավաքից հետո ճաքճքում է, որի հետևանքով քսով և փտախտով վարակվում։ Լավ է աճում բերրի հզոր ջրունակ սևահողերում։

**Բոռովինկա նոր.** Միչուրինյան է, ցրտադիմացկուն և բերք է տալիս 3—4-րդ տարվանից (մեկ ծառից, միջին հաշվով, 40—70 կգ)։ Պտուղները հասունանում են սեպտեմբերի առաջին տասնօրյակում։ Պահունակությունը լավ չէ։ Տափակ-կլորավուն է, վարդագույն բծերով, համը թթվաշաքաղցր, լավ է ինչպես թարմ սպառման, այնպես էլ վերամշակման համար։ Աճը ուժեղ է, դիմացկուն հիվանդությունների և վնասատուների նկատմամբ։ Աճում է բոլոր հողատեսքերում, բացառությամբ կարբոնատային և ճահճային հողերից։ Պտղի

գեղեցկության և նորմալ մեծության շնորհիվ անփոխարինելի է հատկապես պահածոյի համար:

Պեպին կիտայկան—Միչուրինյան է, ցրտադիմացկունությունը բարձր: Բերքը մեկ ծառից միջին հաշվով 60—100 կգ.: Ծառերը պտղաբերում են 3—4-րդ տարվանից: Պտուղները հասունանում են օգոստոսի առաջին տասնօրյակում: Լավ է թարմ սպառման ու վերամշակման համար. ամեն տարի պտղաբերում է, աճը ուժեղ է, արտաքին պայմանների ու սննդանյութերի նկատմամբ պահանջկոտ չէ: Վնասատուների և հիվանդությունների նկատմամբ դիմացկուն է:

Սևանի ավազանի հողակլիմայական պայմանները հնարավորություն են ընձեռում լայն չափով զարգացնելու և տարածելու խնձորենու ցրտադիմացկուն բավորակ սորտերը, դրանցից ստանալու բարձրարժեք հումք և այնպիսի տեսակավոր պահածոներ, որոնց պահանջը շատ է ինչպես մեզ մոտ, այնպես էլ Միության հեռավոր շրջաններում: Հենց սրանով էլ բարձրանում է խնձորենու զարգացման կարևորությունը Սևանի ավազանում: Զարգացնելով պտղաբուծությունը, պետք է ճիշտ իրականացնել բարձրարժեք սորտերի շրջանացումն ու այգիների մշակության ճիշտ ագրոտեխնիկան:

Խնձորենին ավազանում նոր կուլտուրա է և բոլոր պայմանները կան այն դարձնելու բուսաբուծության եկամտաբեր ճյուղերից մեկը: Այս կարևոր հանգամանքն արդեն ապացուցվել է ավազանի պտղաբուծության բուռն զարգացման արդի վիճակով: Գնալով ավելի է բարձրանում բնակչության կենսամակարդակն ու աճում են նյութական պահանջները, որոնք գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև հրամայական խնդիրներ են դնում և դրանց հաջող լուծումը պայմանավորված է գյուղատնտեսության զարգացման բարձր մակարդակով: Պտղաբուծությունը գյուղատնտեսության կարևոր և եկամտաբեր ճյուղերից մեկն է և մեծ նշանակություն ունի կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի և աշխատավորության կենսամակարդակի բարձրացման գործում: Ուստի, անհրաժեշտ է ընդարձակել պտղաբուծությունը ավազանում, հատկապես աճեցնել միչուրինյան ու ռուսական ծագում ունեցող ցրտադիմացկուն սորտեր:

ՍԱՀԱԿՅԱՆ Տ. Ա.
Մարտունու շրջանի Ծովինարի պետական տնկարանի դիրեկտոր

# ԱՎԵԼԱՆՈՒՄ Է ՇԱՀՈՒՅԹԸ

Հանրապետության մեղենի արդյունաբերությունում նոր սիստեմով է աշխատում Կիրովականի մսի կոմբինատը (1967 թ. ապրիլի 1-ից), որը միջին կարողության ձեռնարկություն է և իր արտադրանքի թողարկմամբ երրորդն է հանրապետությունում: Կառավարման նոր սիստեմին կոմբինատն անցավ լավ նախապատրաստված, առանձնահատուկ ուշադրություն նվիրելով արտադրանքի իրացմանը:

Արտադրության զարգացման շահերը նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների ղեկավարներից պահանջում են իրագործել ամենամյա կազմակերպական-տեխնիկական միջոցառումները (բարելավել արտադրության տեխնիկական մակարդակը, ֆոնդերը ռացիոնալ օգտագործել, բարձրացնել շահութաբերությունը): Կիրովականի մսի կոմբինատում այդ նպատակով ներդրվել է АТИМ—1 մակնիշի մսաղաց մեքենան, արմատավորվել է սառցազերծում շոգե-օդային միջավայրում, կիրառվել սառնարանային մշակման ավելի ինտենսիվ եղանակ, կատարելագործվել մսահացերի և բուժենինայի արտադրման մինչև այժմ կիրառվող տեխնոլոգիան, որը հնարավորություն է ընձեռել մեքենայացնելու ձեռքով կատարվող բազմաթիվ պրոցեսներ. բարելավվել է արտադրության սանիտարա-հիգիենիկ վիճակը:



Հումքն անկորուստ օգտագործելու նպատակով 1967 թ., ինչպես նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում սառնարանային վերամշակման ու պահպանման ընթացքում մսի և մսամթերքների բնական կորուստները նվազեցնելու նպատակով իրականացվել է միջոցառումների մի կոմպլեքս: Մեքենայացվել են արտադրության նեղ տեղերից մեկի՝ անասունների սկզբնական մշակման (սպանդի արտադրամասերում) ձեռքով կատարվող մի շարք օպերացիաներ: Այդ առումով բանվորների աշխատանքային պայմանների բարելավման ամեն մի միջոցառում խրախուսվում է: Ներդրված յուրաքանչյուր մեքենա, տեխնոլոգիական նորույթ կամ կատարելագործում ձեռնարկությանը տվել է որոշ օգուտ: Դա հիմնականում արտահայտվել է արտադրածախսերի կրճատմամբ: Օրինակ, շոգե-օդային միջավայրում մսի սառցազերծմամբ տնտեսվել է մոտ 15, իսկ մսի և մսամթերքների սառեցման ինտենսիվ եղանակի կիրառմամբ և մսահացի ու բուժենինայի արտադրության մեքենայացմամբ, համապատասխանաբար՝ 4 և 2,5 հազար ռուբլի: Սառնարանային մշակման ընթացքում մսամթերքների բնական կորուստների վերացման շնորհիվ արտադրանքի արդյունքն ավելացել է մոտ 3 հազար ռուբլով: Նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրմամբ ավելացել է կոմբինատի արտադրամասերում տեղակայված տեխնոլոգիական սարքավորման հզորությունը: Այսպես, երշիկեղենի թողարկման կարողությունը 1967 թ., նախորդ տարվա համեմատությամբ, օգտագործվել է 9 տոկոսով ավելի: Երևանի, Լենինականի և Ղափանի մսի կոմբինատներում այդ աճը համապատասխանաբար կազմել է 2,3, 4,6 և 5,9 տոկոս: Մսի, մսամթերքների և երշիկեղենի թողարկման հզորությունների օգտագործմամբ բարելավվել է չոր մսաոսկրային (անասունների կեր) արտադրամասի աշխատանքը: Այստեղ տեխնոլոգիական սարքավորման բեռնավորվածությունը 1967 թվականին 1965 թ. համեմատությամբ, ավելացել է ավելի քան 20 տոկոսով:

Արտադրահզորությունների լավ օգտագործման շնորհիվ ավելացել է ինչպես համախառն, այնպես էլ ապրանքային արտադրանքի ծավալը: Վերջին երեք տարում համախառն արտադրանքն աճել է ավելի քան 1,4 անգամ և 1965 թ. 4179 հազար ռուբլուց, 1967 թ. հասել է 5861 հազարի: Ապրանքային արտադրանքը նույն ժամանակամիջոցում ավելացել է 1,3 անգամ: Հիմնական արտադրատեսակներից մսի արտադրությունը 1967 թ. 1966 թ. համեմատությամբ աճել է 114, երշիկեղենինը՝ 119, հալված սննդային ճարպինը՝ 121 և չոր մսաոսկրայինը 102,5 տոկոսով: Արտադրանքի աճը հնարավորություն ընձեռեց ավելացնել ապրանքների իրացման ծավալը, որը նոր սիստեմի պայմաններում ձեռնարկության գործունեության կարևորագույն ցուցանիշներից է: 1967 թ. պլանով նախատեսված 9462 հազար ռուբլու դիմաց, իրացվել է 10160 հազար ռուբլու արտադրանք, կամ 592 հազարով ավելի (107 տոկոս), իսկ 1967 թ. ապրիլի 1-ից մինչև դեկտեմբերի 30-ը, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ՝ մեկ և կես անգամ ավելի արտադրանք:

Կոմբինատում 1967 թ., շահույթի ավելացման պլանը գերակատարվել է, որի շնորհիվ բարձրացել է շահութաբերությունը: 1967 թ. ապրանքային արտադրանքի իրացումից ստացված շահույթը կազմել է 458,1 հազար ռուբլի, պլանով նախատեսված 255,8 հազարի դիմաց: Շահույթի աճին նպաստել է նաև ինքնարժեքի իջեցումը, որից տնտեսվել է 94,3 հազար ռուբլի: 1966 թ. համեմատությամբ, կոմբինատում շահույթն ավելացել էր 2,73, իսկ 1965-ի համեմատությամբ՝ 3,56 անգամ:

Շահույթի դրական հաշվեկշռի առկայությունը հնարավորություն ընձեռեց զգալի միջոցներ հատկացնել նյութական խրախուսման ֆոնդին: Նոր սիստեմով աշխատելու 9 ամիսների ընթացքում նյութական խրախուսման ֆոնդին հատկացվել է 30,3 հազար ռուբլի, պլանային 16,9 հազարի դիմաց, որից 17,6 հազարը բանվոր-ծառայողներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին պարգևատրելու, մնացածը՝ միանվագ պարգևներին: Միջոցների ավելի քան 65 տոկոսը տրամադրվել է աշխատողների բնակարանային պայմանների բարելավմանը, որը որակյալ կադրերի պահպանման գլխավոր

միջոցներից է։ Արտադրության զարգացման ֆոնդին հատկացվել է 30,7 հազար ռուբլի։ Այդ գումարի գերակշռող մասը 1967 թ. ծախսվել է նոր տեխնիկայի ներդրման, գործող սարքավորումների մոդեռնացման, ինչպես նաև ներգործարանային տրանսպորտի միջոցների գնման նպատակով։

Նոր սիստեմով աշխատելու ընթացքում (9 ամիս) արտադրության շահութաբերությունը (հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների նկատմամբ) կազմել է մոտ 34 տոկոս, պլանով նախատեսված 17,9-ի փոխարեն։

Շահույթի և շահութաբերության բարձրացման շնորհիվ որոշ չափով ավելացել է նաև բանվոր-ծառայողների աշխատավարձը։

1968 թ. առաջին եռամսյակի արդյունքները ցույց են տալիս, որ արտադրա-տնտեսական ցուցանիշների գծով տեղաշարժ է կատարվել։ Այսպես, ապրանքային արտադրանքի իրացման պլանը կատարվել է 120,1 տոկոսով. թողարկվել է 760 տոննա միս և I տեսակի ենթամսամթերքներ (պլանը՝ 550 տոննա), երշիկեղեն՝ 354, պլանը 345 տոննա), չոր անասնակեր՝ 38 տոննա (27 տոննայի դիմաց)։ Միաժամանակ, 7,7 հազար ռուբլով նվազել է արտադրանքի ինքնարժեքը։ Այս ամենը նպաստել են զգալիորեն բարձրացնելու աշխատավարձը։ Ապրանքային արտադրանքի իրացումից ստացված մաքուր շահույթը 1968 թ. առաջին եռամսյակում կազմել է մոտ 115 հազար ռուբլի, որը պլանայինից 20 տոկոսով ավելի է։ Դրանից նյութական խրախուսման համար հատկացվել է 6,6, սոցիալ-կուլտուրական և բնակարանային շինարարությանը՝ 3,4 և արտադրության զարգացմանը՝ 7,2 հազար ռուբլի։ Նույն ժամանակամիջոցում հաշվարկային շահութաբերությունը կազմել է 8,75 տոկոս, պլանային 6,8-ի դիմաց։

Նոր սիստեմով աշխատելիս Կիրովականի մսի կոմբինատը զգալի չափով բարելավել է արտադրա-տնտեսական գործունեության ցուցանիշները. ընդլայնել արտադրանքի թողարկման և իրացման մասշտաբները. դրանք հնարավորություն ընձեռեցին բարձրացնելու աշխատողների շահագրգռվածությունը և հասնելու արտադրության արդյունավետության նոր, ավելի բարձր աստիճանի։

ԱՎԱԳՅԱՆ ՄԱՐԳԱՐԻՏ
Կիրովականի մսի կոմբինատի գլխավոր
ինժեներ

ԳՐԻԳՈՐՅԱՆ Լ. Ա.
ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի
կրտսեր գիտ. աշխատող

# Մեր օրերի մարդիկ

## ԱՅՍՏԵՂ ԿՅԱՆՔՆ Է ՆՈՐՈԳՎՈՒՄ



*Բանվորներ, գործարան...*

Շուշանիկ Կուրղինյանից շատ առաջ բանաստեղծներ են մորմոքով ու սրտի ցավով պատկերել գործարանը՝ որպես գեհեն, ուր աղետաբեր ու հաշմող, մարդակուլ մեքենաներն են տերը, ուր բանվորներն ապրելով մեռնում են...

Ու հիշում եմ մեր տաղանդավոր, կրովի, սիրտ թունդ հանող պոետներից Դանիել Վարուժանին, որն իր Մեռնող բանվորը, Մեքենաներ, Դաշտ, Սպասում և այլ բանաստեղծություններում արտացոլել է կապիտալիստական քաղաքը, գործարանը և այնտեղ հեծող բազմահազար բանվորների անլույս տառապանքը, գործարան, ուր սիրո երգերի փոխարեն կարմիր հազով է ներկվում բանվորի շրթունքը։ Ինչպիսի՜ ջերմ սեր ու խոր սրտացավություն կա նրա՝ բանվորուհուն նվիրված բանաստեղծության մեջ. պոետը պատրաստ է բոլորը, ինչ որ ունի, որ նվաճել է մարտերով, սերն ու սիրտը տալ ամեն առավոտ իր պատուհանի տակով ուրվականի պես անցնող բանվորուհուն.

Միայն թե դուն չըլլաս տժգույն ու քաղցած,
Արևուն տակ չըհազաս,
Մորըդ վերև չըմարի ճրագն, ու ո՛վ քույր,
Դուն գործատուն ա՛լ չերթաս։

Բանաստեղծը նզովում է այդ գործարաններն ու մեքենաները, որոնց սրատամ ճախարակները ոսկոր առ ոսկոր փշրում, լափում են գործավորներին, որոնց աչքերը դեռ գարունով են լի։ Արևարգած հյուծախտավոր է կապիտալիստական աշխարհի բանվորը։ Բայց հուսաբեկ չէ մեր մեծ բանաստեղծը. նա երազում և ավետում է վաղվա օրը, երբ գռող քաղաքի վրա «պիտի ամպրո՛պը ճայթի»։

Հիշում եմ մեր պրոլետարական պոեզիայի հիմնադրի Կարսավառը, Դարբնի երգը բանաստեղծությունները. վերջինիս մեջ նա կոչ է անում բանվոր ընկերին այնպես զարկել սալին «որ դողդողա աշխարհը»։ Կարմիր առավոտ, Նոր առավոտ, Հավասարություն... Հաղթանակել է Հոկտեմբերյան հեղափոխությունը, իրականացել մեր մեծ պոետների երա-

ների առաջին դափնեկիրը։ Այս խումբը ևս ղեկավարում էր ՀՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ Վահրամ Արիստակեսյանը։

Երկար տևեց մեր զրույցը... Բժշկի հետ իջնում ենք բակ. նա ցույց է տալիս կոմբինատի նոր կառուցվող կորպուսը, որը պետք է լինի վեցհարկանի, պատմում բուժկայանի հեռանկարների մասին... Այնպես էր խոսում ապագա ծրագրերի իրականացման մասին— այս կանենք, այսպես կանենք, այսպես կլինի, այսպիսի կաբինետներ են լինելու, որ զգում էիր, թե որքա՜ն եռանդ, գործելու կամք, ստեղծածը վայելելու տենչանք կա այդ մարդու մեջ։ Դուրս գալով կոմբինատից՝ մաղթում եմ որոշ ժամանակ անց կրկին հանդիպել բժշկին ու լսել նրանից.

— Հինգ քառակուսի մետրանոց խցիկից՝ 500 քառակուսի մետրանոց պոլիկլինիկա...

***

Այժմ էլ վաղ առավոտյան, երբ քաղաքում ամենքը դեռ քնած են, վեր է կենում բժիշկը, համբուրում փոքրիկ թոռնիկների այտերը և զգույշ դուրս գալիս տնից՝ ձեռնափայտին հենված։ Տարեց մարդու զգուշավորությամբ և բժշկի փութկոտությամբ նա շտապում է բուժկայան, որ չլինի թե մեկին ինքը պետք գա, հանկարծ որոնեն բժշկին ու չգտնեն...

Ու բոլորը սովորել են այդպես. ամենքից շուտ գալիս, ամենքից ուշ է տուն գնում գործարանի բանվորների, նրանց ընտանիքների անխոնջ մշակը՝ վաստակած բժիշկը։

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 8-ի 23-րդ էջի վերևից 5-րդ տողում պետք է կարդալ «Անդրկովկասի համաքաղաքական կենտրոնի...», այնուհետև ինչպես տեքստում։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.: Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 25/IX 1968 թ.

ՎՖ 05878 Պատվեր 1975 Տիրաժ 11.100 Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան Երևան, Թումանյան փ. № 51։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ.— Մաթեմատիկական ձեռագրեր, Մ., «Наука» հրատ., 1968, 639 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երիտասարդության միությունների խնդիրները, «Հայաստան» հրատ., 1968, 45 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Լև Տոլստոյը որպես ռուսական հեղափոխության հայելի, «Հայաստան», հրատ., 1968, 48 էջ։

ԱՌԱՔԵԼՅԱՆ Ա. Ա.— Կարլ Մարքսը և սոցիալիզմի քաղաքատնտեսության պրոբլեմները, «Գիտելիք» հրատ., 1968, 42 էջ։

Կ. Մարքսի ԿԱՊԻՏԱԼԻ շուրջ գաղափարական պայքարի պատմության ուրվագծերը (1867—1967), Մ., Քաղհրատ, 1968, 295 էջ։

ՎՈՐՈԲՅՈՎԱ Օ. Բ. և ՍԻՆԵԼՆԻԿՈՎԱ Ի. Մ.—Մարքսի դուստրերը, «Հայաստան, հրատ., 1968, 289 էջ։

ԿՈՐՈԼԵՎ Ն. Ե.—Լենինը և միջազգային բանվորական շարժումը (1914—1918), Մ., Քաղհրատ, 1968, 296 էջ։

ՎՈՐՈԲԵՎ Վ. Ֆ.— Վ. Ի. Լենինը լեզվի և ոճի մասին (Գաղափարայնության և վարպետության հարցերը գրական աշխատանքում), Կիև, 1968, 88 էջ։

ՌՈՍԵՆԿՈ Մ. Ն.— ՍՍՀՄ կոմունիզմի կառուցումը և սոցիալիստական ազգերի զարգացման օրինաչափությունները, Լենինգրադի համալսարանի հրատ., 1968, 224 էջ։

ՍՈԼՈՎԵՎ Օ. Ֆ.— Մեծ Հոկտեմբերը և նրա հակառակորդները, Մ. «Мысль» հրատ., 1968, 327 էջ։

Մարքսիստական բարոյագիտության արդի խնդիրները (հոդվածների ժողովածու), Թբիլիսիի համալսարանի հրատ.— 1968, 495 էջ։

Կուսակցական կրթության մեթոդիկան։ Կուսակցական ուսուցման սիստեմի համար, Մ., Քաղհրատ, 1968, 319 էջ։

ՋՈՒՏԿԵՐԱՇՎԻԼԻ Ե. Վ.—Կադրեր գիտության համար (բարձր որակավորում ունեցող մասնագետներ ՍՍՀՄ-ում և կապիտալիստական երկրներում), Մ., «Высшая школа» հրատ., 1968, 336 էջ։

ԿԱԼԵՍՆԻԿՈՎԱ Մ. Ի.— Խաղաղ գոյակցության և պատերազմի ու խաղաղության հարցերը, Մոսկվայի համալսարանի հրատ., 1968, 835 էջ։

ՇԿՈՒՆԱԵՎ Վ. Գ.— Աշխատանքի միջազգային կազմակերպությունը երեկ և այսօր, Մ. «Межд. отношения» հրատ., 1968, 247 էջ։

Գիտական կոմունիզմի հիմունքները, Մ. Զինհրատ, 1968, 526 էջ։

ԵՐՈՒՍԱԼԻՄՍԿԻ Ա. Ս. ԲԻՍՄԱՐԿ—Դիվանագիտությունը և միլիտարիզմը, Մ., «Наука» հրատ, 1968, 284 էջ։

Ժամանակակից իմպերիալիզմի պրոբլեմները, Մ., Քաղհրատ, 1968, 295 էջ։

ՄԱՍԿՈՒԼԻԱ Ա. Վ.—Միխայիլ Գրիգորևիչ Ցխակայա, Մ., Քաղհրատ, 1968, 167 էջ։

Գորկին և Հայաստանը (Հոդվածներ, նամակներ, հիշողություններ և տարեգրություն), (ռուսերեն) «Միտք» հրատ, 1968, 702 էջ։

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.— Կոմունիզմը և դեմոկրատիան, «Հայաստան» հրատ., 1968, 183 էջ։

ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ— Պատմություն հայոց, «Հայաստան» հրատ., 1968, 352 էջ։

ԵՂԻԱ ԿԱՐՆԵՑՈՒ ԴԻՎԱՆԸ։ Նյութեր Միջնադարյան Արևելքի և Անդրկովկասի պատմության։ Առաջաբանը և ծանոթագրությունները պրոֆ. Ա. Գ. Աբրահամյանի, «Միտք» հրատ, 1968, 367 էջ։

Մառը և հայագիտության հարցերը, Երևան, ԳԱ հրատ., 1968, 306 էջ։

ՄԱՐԿՈՍՅԱՆ Ս. Ս.— Արևմտահայության վիճակը 19-րդ դարի վերջին, «Հայաստան» հրատ., 1968։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՈՐԳ ԲԱԶԱԼՏԻՑ

*Բազալտե գորգը չեն գործում։ Այն պատրաստում են միանգամից, մեկ մետր լայնությամբ և 5 սմ հաստությամբ։ Անվերջ ժապավենով այն սահում է կոնվեյերից։ Բազալտե գորգի ստացման այս մեթոդը մշակվել է ապակեպլաստիկայի և ապակեթելի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ուկրաինական ֆիլիալում։*

*Ում է հարկավոր քարե գորգը։ Այն ունի շատ «պրոֆեսիաներ»։ Ամենից առաջ ջերմամեկուսիչ է։*

*Բազալտը դիմանում է մոտ 1000° ջերմության և հուսալիորեն պաշտպանում է ջերմության կորստից թե՛ էլեկտրավառարանը, և թե՛ հրահեղուկ մետաղների պահեստարանը։*

## ՕՐԻՆԱԿԸ ԾԽԱՄՈՐՃՆ Է

*Եթե հավատանք Բոստոնի ֆիզիկոս Տ. Ցոլին, ֆաբրիկաների բարձր ծխնելույզները, որոնք ապականում են արդյունաբերական քաղաքների օդը, շուտով կչքանան։ Դրանց փոխարեն կկառուցվեն կարճ ու լայն ծխնելույզներ, որոնցից ծուխը դուրս կգա գալարաձև, ինչպես ծխամորճից և կցրվի մեծ բարձրության վրա։ Ծխի օղակները համեմատաբար ավելի արագ են բարձրանում վեր, քան «անկարգ» քուլաները։ Ցոլը պնդում է, որ հզոր պոմպերի օգնությամբ ծխնելույզի կարճ ու լայն խողովակից ծուխը օղակաձև դուրս է գալիս և նախքան ցրվելը հասնում 3 հազար մետր բարձրության։ Մինչդեռ ֆաբրիկայի ամենաբարձր ծխնելույզը ներկայումս ծուխը հասցնում է ընդամենը 750 մետրի։*

## ՆՊԱՏԱԿԸ ԳԵՐՃՇԳՐՏՈՒԹՅՈՒՆՆ Է

*Ժամացույցների արդյունաբերության գիտահետազոտական կենտրոնը նախագծել է էլեկտրոնային գրպանի ժամացույցներ։ Դրանցում օգտագործված են առավելագույն ճշգրտության գեներատորներ։ Նոր խրոնոմետրի անճշտությունը մեկ տարում կազմում է ընդամենը մեկ րոպե (Շվեյցարիա)։*

## ՄՈԼԻԲԴԵՆԸ ԵՎ ԲԵՐՔԸ

*Այն բանից հետո, երբ մոլիբդենով եգիպտացորենի ցանքերի բերքատվությունը բարձրացնելու նպատակով կատարված փորձերն անհաջող անցան, բուլղար գիտնականները փորձարկեցին այդ միկրոտարրի ներգործությունը գյուղատնտեսական այլ կուլտուրաների վրա։ Արդյունքը գերազանցեց սպասվածից։ 100 գրամ մոլիբդենը մեկ հեկտար ցանքատարածությունից ապահովում է նույնքան բերք, որքան 480 կգ. ամիակային սիլիտրայի օգտագործումը։ Այսպես, տիպիկ սևահողերում լոբու բերքատվությունը ավելացել է 28 տոկոսով։*

## ԸՆԴԴԵՄ ՇԻԶՈՖՐԵՆԻԱՅԻ

*Բազմաթիվ բժիշկների վկայությամբ $B_3$ վիտամինի տևական և անընդմեջ գործածությունը թեթևացնում և նույնիսկ բուժում է շիզոֆրենիան։ Նյու-Ջերսի նահանգի հիվանդանոցը և Ռատ-Ջերսի համալսարանը հետազոտություններ են կատարում այդ նյութի ներգործության ուղղությամբ։*

*Չորս տարի է, ինչ շարունակվում են դիտարկումները (ԱՄՆ)։*

## ՁԱՅՆԱՑՈՒՅՑ

*Այս սարքի օգնությամբ կարելի է զննել միլիմետրի տասներորդական մասի մեծության առարկաներ, որոնք թաքնված են անթափանցիկ առարկաների խորքում։ Ձայնային ազդանշանը տեսողական պատկերի փոխարկող այդ սարքը ստեղծել են ՍՍՀՄ ԳԱ ակուստիկայի և ինտրոսկոպիայի ինստիտուտների աշխատակիցները։*

*Լաբորատոր պայմաններում ձայնացույցի օգնությամբ հաջողվել է մարդու երիկամներում նշմարել երկու միլիմետրանոց քարեր, որոնք աննկատելի են ռենտգենյան ճառագայթների համար։ Այժմ լուծված է ամենաբարդ խնդիրներից մեկը՝ վերստեղծել այն ամենի ճշգրիտ պատկերը, ինչը գտնվում է անթափանցիկ առարկաների ներսում։*